

ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7 1979

# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ:

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով:

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը: Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը: Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները:

Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից:

Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը:

Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի: Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում:

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում:


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

7

ՀՈՒԼԻՍ 1979

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունում, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդում

# ՍՍՀՄ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ-ԿԱՌԱՎԱՐԱԿԱՆ ՊԱՏՎԻՐԱԿՈՒԹՅԱՆ ՀՈՒՆԳԱՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆ ԿԱՏԱՐԱԾ ԱՅՑԻ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Հունիսի 7-ին ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը քննության առան ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի գլխավորությամբ ՍՍՀՄ կուսակցական-կառավարական պատվիրակության Հունգարական Ժողովրդական Հանրապետություն կատարած այցի արդյունքները, որը տեղի ունեցավ 1979 թվականի մայիսի 30-ից մինչև հունիսի 1-ը:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը լիովին հավանություն տվեցին պատվիրակության գործունեությանը և խորին գոհունակություն արտահայտեցին այցի արդյունքների առթիվ:

ՀՍԲԿ Կենտկոմի առաջին քարտուղար Յա. Կադարի և հունգարական մյուս ղեկավարների հետ կայացած բանակցությունները ամրապնդում և զարգացնում են ՍՄԿԿ-ի և ՀՍԲԿ-ի, ՍՍՀՄ-ի և ՀԺՀ-ի սերտ, արդյունավետ կապերը:

Բուդապեշտում ընդունված համատեղ հայտարարությունը բոլոր կարևորագույն բնագավառներում սովետա-հունգարական համագործակցության հետագա խորացման հագեցված ծրագիր է: Այդ ծրագրի կարևոր տարրը ՍՍՀՄ-ի և ՀԺՀ-ի ակտիվ մասնակցությունն է սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի զարգացման բնագավառում ՏՓԽ-ի անդամ երկրների կոլեկտիվ աշխատանքին:

Սովետական Միության և Ժողովրդական Հունգարիայի բարեկամությունը, նրանց հայացքների և գործողությունների օրգանական միասնությունը սոցիալիստական ընկերակցության դիրքերի ամրապնդման, Եվրոպայում և ամբողջ աշխարհում միջազգային անվտանգության ամրապնդման ազդեցիկ գործոն են:

Սովետական կուսակցական-կառավարական պատվիրակության այցը լարվածության թուլացման և խաղաղ համագործակցության քաղաքականության Սովետական Միության և Հունգարիայի խոր նվիրվածության, եղբայրական մյուս երկրների հետ համատեղ սպառազինությունների մրցավազքի սանձահարման, միջազգային քաղաքական կլիմայի արմատական առողջացման հասնելու նրանց պատրաստակամության մի նոր ծանրակշիռ վկայությունը եղավ:

Չափազանց կարևոր է, որ Սովետական Միությունը և Հունգարական Ժողովրդական Հանրապետությունը լի են վճռականությամբ՝ այսուհետ ևս ջանքեր գործադրել եվրոպական մայրցամաքում վստահության միջոցների ընդլայնման ու ռազմական լարվածության թուլացման համար և այդ նպատակով ԱՄՆ-ի ու Կանադայի մասնակցությամբ քաղաքական մակարդակով համաեվրոպական կոնֆերանսի հրավիրման համար: Վարշավայի պայմանագրի մասնակից սոցիալիստական երկրները սպասում են, որ բոլոր շահագրգռված պետությունները կոնստրուկտիվ կերպով կարձագանքեն իրենց այդ առաջարկությանը:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը բարձր գնահատեցին այն, որ ՀԺՀ-ն, հավասարապես նաև մյուս սոցիալիստական երկրները, եռանդագին պաշտպանում են սովետա-ամերիկյան առաջիկա բարձր մակարդակի հանդիպումը և ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման երկրորդ պայմանագրի սպասվող կնքումը:

Գոհունակությամբ նշվեց, որ Հունգարիան համամիտ է Չինաստանի հետ բանակցությունների հարցում Սովետական Միության սկզբունքային դիրքին: Սովետա-չինական լուրջ և դրական երկխոսությունը կհամապատասխաներ լարվածության թուլացման պրոցեսը զարգացնելու, դրան համապարփակ բնույթ տալու շահերին: Դրա համար, իհարկե, կպահանջվի նաև չինական կողմի կոնստրուկտիվ վերաբերմունքը բանակցությունների անցկացմանը:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը համապատասխան մինիստրություններին ու գերատեսչություններին ցուցումներ տվեցին գործնական միջոցներ ձեռնարկել տարբեր բնագավառներում սովետա-հունգարական համագործակցության զարգացման շուրջը ձեռք բերված պայմանավորվածությունների իրականացման համար:

## ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյում, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունում, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդում

# ԱՄՆ-Ի ՊՐԵԶԻԴԵՆՏ Ջ. ՔԱՐՏԵՐԻ ՀԵՏ ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԱՀ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ՀԱՆԴԻՊՄԱՆ ԱՐԴՅՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, քննության առնելով 1979 թվականի հունիսի 15—18-ը Վիեննայում ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջ. Քարտերի հետ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի ունեցած հանդիպման արդյունքները, ամբողջովին ու լիովին հավանություն են տալիս Լ. Ի. Բրեժնևի գլխավորած սովետական պատվիրակության գործունեությանը, խորին գոհունակություն են արտահայտում հանդիպման ընթացքում ձեռք բերված արդյունքների և, առաջին հերթին, ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման մասին ՍՍՀՄ-ի ու ԱՄՆ-ի պայմանագրի, այդ պայմանագրի արձանագրության ու դրան վերաբերող մյուս փաստաթղթերի, ինչպես նաև սովետա-ամերիկյան համատեղ կոմյունիկեի ստորագրման առթիվ:

Այդ հարցերի շուրջը պայմանավորվածությունը հնարավոր դարձավ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի, ՍՍՀՄ Գերրագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի երկարատև ու լարված աշխատանքի, հանդիպման նախապատրաստման և իրականացման գործում, ընդհանուր խաղաղության ամրապնդման, սպառազինությունների մրցավազքի սանձահարման, տարբերր հասարակարգ ունեցող պետությունների փոխշահավետ համագործակցության զարգացման ասպարեզում՝ Լ. Ի. Բրեժնևի ներդրած անձնական ավանդի շնորհիվ:

Վիեննայի հանդիպումը առաջընթաց կարևոր քայլ է նշանավորում սովետա-ամերիկյան հարաբերությունների և միջազգային ամբողջ քաղաքական կլիմայի առողջացման ճանապարհին: Վիեննայում ստորագրված փաստաթղթերի լրիվ կենսագործումը նոր հնարավորություններ է ստեղծում այն բանի համար, որ դադարեցվի հրթիռամիջուկային զենքի զինանոցների մեծացումը, ապահովվի դրանց գործնական քանակական ու որակական սահմանափակումը: Այդ խնդրի լուծումը նոր փուլ կլիներ միջուկային սպառազինությունների մրցավազքի կասեցման գործում և ճանապարհ կհարթեր սպառազինությունների էական կրճատման ու գերագույն նպատակի իրականացման՝ միջուկային զենքի արտադրության լրիվ դադարեցման ու դրա պաշարների վերացման համար:

Նոր պայմանագիրը կառուցված է հավասարության ու միատեսակ ան-

վտանգության սկզբունքի վրա և հանդիսանում է ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի շահերի
արդարացի հաշվեկշիռ: Պայմանագրից ոչ մի նահանջ չի կարելի թույլատրելի
համարել: Սովետական Միությունը պատրաստ է մինչև վերջ կատարելու իր
ստանձնած պարտավորությունները և ելնում է այն բանից, որ այդ հարցին
նույն կերպ կմոտենա նաև մյուս կողմը: Դա թույլ կտա մոտ ապագայում սկսե-
լու ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման բանակցու-
թյունների հաջորդ փուլը:

Լ. Ի. Բրեժնևը և պրեզիդենտ Ջ. Քարտերը նաև կարծիքների օգտակար
փոխանակություն կատարեցին սպառազինությունների սահմանափակման և
զինաթափման բնագավառում ներկայումս անցկացվող բազմակողմ և սովե-
տա-ամերիկյան մյուս բանակցությունների առարկան հանդիսացող հարցերի
շուրջը: ՍՍՍ—2 պայմանագրի դրույթների իրականացումը կոչված է խթանե-
լու այդ բանակցությունների շոշափելի հաջող ավարտմանը:

Հանդիպման ընթացքում անկեղծորեն համադրվեցին ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի
դիրքավորումներն արդի միջազգային դրության հանգուցային հարցերում, այդ
թվում նաև այն պրոբլեմներում, որտեղ այդ դիրքավորումներն իրարից տար-
բերվում են: Այդ հարցերի շուրջը կարծիքների փոխանակությունը օգտակար է:

Սովետական Միությունում դրականորեն են գնահատում այն փաստը, որ
երկու կողմերը վճռականորեն արտահայտվեցին լարվածության պրոցեսի
թուլացման հետագա խորացման օգտին: Մեծ նշանակություն ունի նաև կող-
մերի համաձայնությունը այն հարցում, որ եվրոպական մայրցամաքի իրա-
դրության մեջ կատարված և Եվրոպայի անվտանգության ու համագործակ-
ցության խորհրդակցության եզրափակիչ ակտում արտացոլված դրական տե-
ղաշարժերը ամրապնդման և զարգացման կարիք ունեն քաղաքական լարվա-
ծության թուլացումը ռազմական լարվածության թուլացումով լրացնելու նպա-
տակին ուղղված միջոցների օգնությամբ: Սովետական Միությունը այդ կա-
պակցությամբ մեծ նշանակություն է տալիս Կենտրոնական Եվրոպայում զին-
ված ուժերի և սպառազինությունների կրճատման շուրջը Վիեննայում վարվող
բանակցությունների անհրաժեշտ պրոգրեսին:

Սովետական Միությունը իր պարտքն է համարում՝ այսուհետ ևս հետե-
վողական և հաստատակամ պայքար մղել սպառազինությունների մրցավազքի
դեմ, սպառազինությունների նոր տեսակների արտադրության կրճատման ու
դադարեցման համար, միջազգային լարվածության հետագա թուլացման հա-
մար, ամբողջ աշխարհի կայուն խաղաղության համար:

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահու-
թյունը, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը գտնում են, որ Վիեննայի հանդիպու-
մը հնարավորություններ է ստեղծում սովետա-ամերիկյան համագործակցու-
թյան բնագավառների է՛լ ավելի հետևողական ընդլայնման համար՝ լիակա-
տար հավասարության, միատեսակ անվտանգության, սուվերենության հարգ-
ման և միմյանց ներքին գործերին չմիջամտելու սկզբունքային հիմքի վրա:
Համապատասխանելով ինչպես ՍՍՀՄ-ի, այնպես էլ ԱՄՆ-ի ժողովուրդների
արմատական շահերին, նման համագործակցությունը է՛լ ավելի կայուն է
դարձնում միջազգային խաղաղությունը:

Վիեննայում ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջ. Քարտերի հետ Լ. Ի. Բրեժնևի հան-
դիպումը և դրա արդյունքները լայն դրական արձագանք գտան ամբողջ աշ-
խարհում: Դա կրկին ցույց է տալիս, որ սովետա-ամերիկյան համաձայնագրե-
րը, նպաստելով սպառազինությունների մրցավազքի սահմանափակմանը,
միջազգային լարվածության հետագա թուլացմանը և խաղաղության ամրա-
պնդմանը, համապատասխանում են բոլոր երկրների, ամբողջ մարդկության
շահերին: Հանդիպման արդյունքներին հավանություն են տալիս ժողովրդա-
կան լայն զանգվածները, ռեալիստորեն մտածող պետական գործիչները:

Սովետական ժողովուրդը, միահամուռ պաշտպանելով մեր կուսակցու-
թյան և սովետական պետության խաղաղասիրական քաղաքականությունը,
դրականորեն է գնահատում Վիեննայի հանդիպման ընթացքում ձեռք բերված
արդյունքները: Այդ քաղաքականության հաջողությունները սովետական
մարդկանց նոր ուժ ու եռանդ են տալիս կոմունիստական շինարարության մեծ
խնդիրների իրականացման ասպարեզում:

# ՍՈՎԵՏԱ-ԱՄԵՐԻԿՅԱՆ ՀԱՄԱՏԵՂ ԿՈՄՅՈՒՆԻԿԵ

Պայմանավորվածությանը համապատասխան, 1979 թվականի հունիսի 15-ից մինչև 18-ը Վիեննայում (Ավստրիա) տեղի ունեցավ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի և Ամերիկայի Միացյալ Նահանգների պրեզիդենտ Ջեյմս Է. Քարտերի հանդիպումը:

Լ. Ի. Բրեժնևը և Ջ. Քարտերը բանակցություններ վարեցին, որոնց մասնակցեցին. սովետական կողմից՝ ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ արտաքին գործերի մինիստր Ա. Ա. Գրոմիկոն, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՍՀՄ պաշտպանության մինիստր Դ. Ֆ. Ուստինովը, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, ՍՄԿԿ Կենտկոմի քարտուղար Կ. ՈՒ. Չեռնենկոն, ՍՍՀՄ պաշտպանության մինիստրի առաջին տեղակալ, ՍՍՀՄ զինված ուժերի գլխավոր շտաբի պետ Ն. Վ. Օգարկովը, ամերիկյան կողմից՝ ԱՄՆ-ի պետական քարտուղար Սայրուս Վենսը, ԱՄՆ-ի պաշտպանության մինիստր Հարոլդ Բրաունը, ազգային անվտանգության հարցերի գծով պրեզիդենտի օգնական Զբիգնև Բժեզինսկին, շտաբների պետերի կոմիտեի նախագահ, գեներալ Դևիդ Ջոունսը:

Բանակցություններին մասնակցում էին նաև.

սովետական կողմից՝ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղարի օգնական Ա. Մ. Ալեքսանդրովը, ՍՄԿԿ Կենտկոմի բաժնի վարիչ Լ. Մ. Զամյատինը, ՍՍՀՄ արտաքին գործերի մինիստրի առաջին տեղակալ Գ. Մ. Կոռնիենկոն, ԱՄՆ-ում ՍՍՀՄ դեսպան Ա. Ֆ. Դոբրինինը, ՍՍՀՄ արտգործմինիստրության կոլեգիայի անդամ Վ. Գ. Կոմպլեկտովը, ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման բանակցություններում ՍՍՀՄ պատվիրակության ղեկավար Վ. Պ. Կարպովը.

ամերիկյան կողմից՝ զինաթափման և սպառազինությունների վերահսկողության գործակալության դիրեկտոր Ջորջ Սեյնիուսը, պրեզիդենտի օգնական Համիլտոն Ջորդանը, պրեզիդենտի օգնական Ջոդի Պաուելը, ՍՍՀՄ-ում ԱՄՆ-ի դեսպան Մալկոլմ Թունը, ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման բանակցություններում ԱՄՆ-ի պատվիրակության ղեկավար Ռալֆ Էռլը:

Լ. Ի. Բրեժնևը և Ջ. Քարտերը ստորագրեցին ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման պայմանագիրը: Քննարկվեցին նաև սովետա-ամերիկյան հարաբերությունների սկզբունքային հարցեր և միջազգային հրատապ պրոբլեմներ: Կարծիքների փոխանակմանը բնորոշ էր ձգտումը՝ ընդլայնելու երկու կողմերի փոխըմբռնումը և գտնելու նրանց հետաքրքրող հարցերի երկուստեք ընդունելի լուծումներ: Նրանք իրենց զրույցներում հատուկ ուշադրություն նվիրեցին ստրատեգիական սպառազինությունների հետագա սահմանափակման և սպառազինությունների սահմանափակման ու զինաթափման բնագավառում այլ միջոցների ձեռնարկման ճանապարհով պատերազմի վտանգը նվազեցնելու հարցերին:

Կողմերը Ավստրիայի կառավարությանը երախտագիտություն հայտնեցին հյուրընկալության և հանդիպման հաջող անցկացման բոլոր անհրաժեշտ պայմանները ապահովելու համար:

## I. ՍՈՎԵՏԱ-ԱՄԵՐԻԿՅԱՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՀԱՐՑԵՐԸ

Կողմերը այն միահամուռ կարծիքին են, որ Սովետական Միության և Միացյալ Նահանգների հարաբերությունների վիճակը հսկայական նշանակություն ունի երկու երկրների ժողովուրդների արմատական շահերի համար և մեծապես որոշում է միջազգային ամբողջ իրադրության զարգացումը: Գիտակցելով դրա հետ կապված բարձր պատասխանատվությունը, կողմերը հաստատ մտադրություն հայտնեցին գործը վարել սովետա-ամերիկյան հարաբերությունների կոնստրուկտիվ հիմքի հետագա ամրապնդման հունով: Այդ նպատակով կողմերն ընդունեցին իրենց համագործակցության բնագավառները ընդլայնելու անհրաժեշտությունը:

Այդ համագործակցությունը պետք է կառուցվի լիակատար հավասարության, միատեսակ անվտանգության, սուվերենության հարգման և միմյանց ներքին գործերին չմիջամտելու սկզբունքային հիման վրա և պետք է նպաստի միջազգային լարվածության թուլացման ու պետությունների փոխշահավետ հարաբերությունների խաղաղ զարգացմանը, դրանով իսկ ամրապնդելով միջազգային կայունությունն ու ամբողջ աշխարհի խաղաղությունը:

Կողմերը հավաստեցին իրենց այն վստահությունը, որ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների փոխհարաբերությունների հիմունքների, ինչպես նաև նրանց միջև կնքված մյուս պայմանագրերի ու համաձայնագրերի բոլոր դրույթների լրիվ իրականացումը կնպաստեր առավել կայունացնելու երկու երկրների հարաբերությունները:

Կողմերը շեշտեցին պետությունների միջև վեճերի խաղաղ լուծման, դրանց սուվերենության ու տերիտորիալ ամբողջականության և այն ջանքերի հարգման կարևորությունը, որոնք նպատակամղված են այն բանին, որ չծագեն միջազգային լարվածությունը ուժեղացնելու ունակ կոնֆլիկտներ կամ իրավիճակներ: Նրանք ճանաչում են առանց դրսի միջամտության իրենց ապագան տնօրինելու բոլոր պետությունների ժողովուրդների իրավունքը:

Ընդունելով, որ համաշխարհային ռազմական կոնֆլիկտը անխուսափելի չէ, կողմերը գտնում են, որ ներկայումս մարդկության համար չկա ավելի կարևոր և անհետաձգելի խնդիր, քան սպառազինությունների մրցավազքի դադարեցումը և պատերազմի կանխումը: Նրանք մտադրություն արտահայտեցին բոլոր ջանքերը գործադրել այդ նպատակին հասնելու համար: Այդ կապակցությամբ նրանք նաև ընդունեցին միմյանց միջև ու Միավորված ազգերի կազմակերպությունում և նրանից դուրս ուրիշ պետությունների հետ կոնսուլտացիաների կարևորությունը, նպատակ ունենալով կանխել ու վերացնել կոնֆլիկտները աշխարհի տարբեր շրջաններում:

Կողմերը գոհունակությամբ են նշում ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի պետական գործիչների կոնտակտների ընդլայնվող պրակտիկան, որոնց ընթացքում քննարկվում են սովետա-ամերիկյան հարաբերությունների արմատական հարցերն ու միջազգային հրատապ պրոբլեմները: Շարունակվում է ՍՍՀՄ Գերագույն սովետի ու ԱՄՆ-ի կոնգրեսի օգտակար կապերի և հասարակական կազմակերպությունների միջև փոխանակումների զարգացման պրոցեսը:

Բանակցությունները կրկին հավաստեցին ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ղեկավարների անձնական հանդիպումների հատուկ նշանակությունը երկու պետությունների հարաբերությունների սկզբունքային հարցերի լուծման համար: Սկզբունքորեն համաձայնություն կայացվեց այսուհետև էլ նման հանդիպումներ անցկացնել կանոնավոր հիմքի վրա, նկատի ունենալով, որ կոնկրետ ժամկետները կորոշվեն փոխադարձ համաձայնությամբ:

Պայմանավորվածություն ձեռք բերվեց նաև ընդլայնելու այլ մակարդակներով կողմերի ներկայացուցիչների միջև կոնսուլտացիաների և կարծիքների փոխանակության պրակտիկան:



## II. ՄԻՋՈՒԿԱՅԻՆ ԵՎ ՍՈՎՈՐԱԿԱՆ ՍՊԱՌԱԶԻՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍԱՀՄԱՆԱՓԱԿՈՒՄԸ

Կողմերը հավաստեցին իրենց այն խոր համոզվածությունը, որ հատուկ ուշադրություն պետք է նվիրվի միջուկային պատերազմը կանխելու և ստրատեգիական սպառազինությունների բնագավառում մրցակցությունը զսպելու պրոբլեմներին: Երկու կողմերն ընդունում են, որ միջուկային պատերազմն աղետ կլիներ ամբողջ մարդկության համար: Յուրաքանչյուր կողմ հայտարարեց, որ ինքը չի ձգտում և չի ձգտի ռազմական գերազանցության, քանի որ դա կարող էր հանգեցնել սոսկ վտանգավոր անկայունության, ծնելով սպառազինությունների ավելի բարձր մակարդակ և չնպաստելով կողմերից ոչ մեկի անվտանգությանը:

Ընդունելով, որ ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը առանձնահատուկ պատասխանատվություն են կրում միջուկային պատերազմի վտանգի նվազեցման և ամբողջ աշխարհի խաղաղության ամրապնդման համար, Լ. Ի. Բրեժնևը և Ջ. Քարտերն իրենց առջև նպատակ դրին խոշոր քայլեր ձեռնարկել միջուկային զենքի սահմանափակման ուղղությամբ, նկատի ունենալով նրա վերջնական վերացումը, և հաջողությամբ ավարտել սպառազինությունների սահմանափակման և զինաթափման բնագավառի մյուս բանակցությունները:

**Ստրատեգիական սպառազինությունների սահմանափակումը:** Հանդիպման ընթացքում Լ. Ի. Բրեժնևը և Ջ. Քարտերը հաստատեցին և ստորագրեցին ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման մասին ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի պայմանագիրը, դրա արձանագրությունը, ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման շուրջը հետագա բանակցությունների սկզբունքների և հիմնական ուղղությունների վերաբերյալ համատեղ հայտարարությունը, ինչպես նաև «Համաձայնեցված հայտարարություններ և ընդհանուր ըմբռնումներ ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման մասին ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի պայմանագրի կապակցությամբ» փաստաթուղթը:

Միաժամանակ կրկին շեշտվեց հակահրթիռային պաշտպանության սիստեմների սահմանափակման պայմանագրի կարևոր նշանակությունը և նրա դրույթների, ինչպես նաև ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման և միջուկային պատերազմի ծագման վտանգի նվազեցման բնագավառում ՍՍՀՄ-ի ու ԱՄՆ-ի միջև ավելի վաղ կնքված մյուս համաձայնագրերի դրույթների խստիվ կիրառումը:

Երկու կողմերը խոր գոհունակություն են հայտնում ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման բանակցությունների պրոցեսի և այն առթիվ, որ նոր պայմանագրի կնքմանը նպատակամղված իրենց երկարամյա հաստատակամ ջանքերը պսակվեցին հաջողությամբ: Պայմանագիրը սահմանում է երկու կողմերի համար միջուկային զենքը նշանակետին հասցնելու միջոցների հավասար առավելագույն մակարդակները. կրճատման պրոցեսն սկսելու նպատակով պայմանագիրը նախատեսում է գոյություն ունեցող միջուկային սպառազինությունների կրճատում. սպառազինությունների որակական մրցավազքի սպառնալիքը նվազեցնելու նպատակով պայմանագիրը էական սահմանափակումներ է դնում ստրատեգիական հարձակողական սիստեմների արդիականացման և նոր սիստեմների ստեղծման վրա:

Ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման նոր պայմանագիրը և դրա արձանագրությունը երկու կողմերի շահերի փոխադարձաբար ընդունելի հաշվեկշիռ են՝ հիմնված հավասարության և միատեսակ անվտանգության սկզբունքի վրա: Այդ փաստաթղթերն էական ավանդ են մուծում միջուկային պատերազմը կանխելու և լարվածության թուլացումը խորացնելու գործում ու դրանով իսկ համապատասխանում են ոչ միայն սովետական ու ամերիկյան ժողովուրդների շահերին, այլև մարդկության խաղաղասիրական իղձերին:

Կողմերը հավաստեցին պայմանագրի բոլոր դրույթները խստիվ կիրառելու իրենց պարտավորությունը:

Լ. Ի. Բրեժնևը և Ջ. Քարտերը քննարկեցին ՍՍՍ—3-ի վերաբերյալ բանակցությունների հետ կապված հարցերը և այդ կապակցությամբ կողմերի հաստատ մտադրությունն արտահայտեցին՝ գործելու ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման հետագա բանակցությունների սկզբունքների և հիմնական ուղղությունների մասին ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի ստորագրած համատեղ հայտարարությանը համապատասխան:

**Միջուկային զենքի փորձարկումների ընդհանուր ու լրիվ արգելման պայմանագիրը:** Նշվեց, որ որոշակի առաջադիմություն է ձեռք բերվել ամեն մի միջավայրում միջուկային զենքի փորձնական պայթեցումների լրիվ արգելում նախատեսող միջազգային պայմանագրի և դրա հետ կապված արձանագրության մշակման շուրջը վարվող բանակցություններում, որոնց մասնակցում է նաև Մեծ Բրիտանիան: Կողմերը հավաստեցին ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի մտադրությունը՝ Մեծ Բրիտանիայի հետ համատեղ գործը վարել այդ պայմանագրի պատրաստման շուտափույթ ավարտման նպատակով:

**Միջուկային զենքը չտարածելը:** Կողմերը հավաստեցին այն կարևոր նշանակությունը, որ իրենք տալիս են միջուկային զենքը չտարածելուն: Նրանք հետևողականորեն հանդես են գալիս միջուկային զենքը չտարածելու ռեժիմի հետագա ամրապնդման օգտին և հավաստում են իրենց վճռականությունը այսուհետ ևս խստիվ կատարելու միջուկային զենքը չտարածելու պայմանագրին համապատասխան իրենց ստանձնած պարտավորությունները: Նրանք շեշտեցին ատոմային էներգիայի միջազգային գործակալության համապարփակ միջազգային երաշխիքների կիրառման կարևորությունը և մտադրություն հայտնեցին՝ շարունակելու իրենց ջանքերն այդ երաշխիքների ամրապնդման նպատակով:

Նրանք նշեցին, որ միջուկային զենքի տարածումը լուրջ սպառնալիք է միջազգային անվտանգության համար, և այն ընդհանուր կարծիքն արտահայտեցին, որ արդեն միջուկային զենք ունեցող պետությունները առանձնահատուկ պատասխանատվություն են կրում զսպվածություն հանդես բերելու գործում: Այդ կապակցությամբ նրանք հավաստեցին իրենց համատեղ համոզվածությունը, որ պահանջվում են հետագա ջանքեր, այդ թվում ջանքեր ռեգիոնալ հիման վրա, և հույս հայտնեցին, որ ՍՍՍ—2 պայմանագրի կնքումը կարևոր ավանդ կձառայի չտարածելու նպատակների իրականացման գործում:

Երկու կողմերը նաև մտադրություն հայտնեցին սերտորեն համագործակցելու ուրիշ երկրների հետ, նպատակ ունենալով ապահովել միջուկային զենքը չտարածելու պայմանագրի գործողության քննարկմանը նվիրված 1980 թվականի կոնֆերանսի հաջող ավարտումը, և միջուկային զենքը չտարածելու պայմանագիրը դեռ չստորագրած բոլոր պետություններին կոչ արին՝ ստորագրել ու վավերացնել այն:

**Վիեննայի բանակցությունները:** Լ. Ի. Բրեժնևը և Ջ. Քարտերը շեշտեցին, որ կողմերը մեծ նշանակություն են տալիս Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերի ու սպառազինությունների փոխադարձ կրճատման բանակցություններին և դրա հետ կապված միջոցառումներին, որոնց իրենք մասնակցում են ուրիշ պետությունների հետ միասին: Կենտրոնական Եվրոպայում երկու կողմերի զինված ուժերի կրճատումը և դրա հետ կապված միջոցառումների իրականացումը խոշոր ներդրում կլինեին կայունության և անվտանգության ամրապնդման գործում:

**Հակաարբանյակային սիստեմները:** Համաձայնություն կայացվեց նաև ակտիվորեն շարունակել փոխադարձաբար ընդունելի պայմանավորվածությունների որոնումները հակաարբանյակային սիստեմների շուրջը վարվող բանակցություններում:

**Սովորական սպառազինությունների վաճառքը և մատակարարումը:** Կողմերը պայմանավորվեցին, որ իրենց համապատասխան ներկայացուցիչները անհապաղ կհանդիպեն՝ քննարկելու սովորական սպառազինությունների վաճառքի ու մատակարարումների սահմանափակման բանակցությունների հաջորդ փուլին վերաբերող հարցերը:

**Քիմիական զենքը:** Կողմերը հավաստեցին քիմիական զենքի ընդհանուր,



լրիվ ու վերահսկողության ենթակա արգելման կարևորությունը և պայմանավորվեցին ակտիվացնել իրենց ջանքերը զինաթափման կոմիտեին ներկայացնելու համար համաձայնեցված համատեղ առաջարկության պատրաստման ուղղությամբ:

**Ռադիոլոգիական զենքը:** Լ. Ի. Բրեժնևը և Ջ. Քարտերը գոհունակությամբ հավաստեցին, որ երկկողմ պայմանավորվածություն է ձեռք բերվել ռադիոլոգիական զենքի մշակումը, արտադրությունը, կուտակումը և գործադրումը արգելելու պայմանագրի հիմնական տարրերի շուրջը: Համաձայնեցված համատեղ առաջարկությունը զինաթափման կոմիտեին կներկայացվի այս տարի:

**Հնդկական օվկիանոսը:** Կողմերը պայմանավորվեցին, որ իրենց համապատասխան ներկայացուցիչները անհապաղ կհանդիպեն քննարկելու Հնդկական օվկիանոսի շրջանում ռազմական գործունեության սահմանափակման բանակցությունները վերսկսելու հարցը:

**Սպառազինությունների սահմանափակման և զինաթափման այլ հարցեր:** Սպառազինությունների մրցավազքի սահմանափակման և զինաթափման պրոբլեմների լուծման հետ կապված այլ հարցերի քննարկման ժամանակ կողմերը պաշտպանեցին զինաթափմանը նվիրված ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի հատուկ նստաշրջանում ընդունված եզրափակիչ փաստաթուղթը: Կողմերը պաշտպանեցին զինաթափմանը նվիրված ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի երկրորդ հատուկ նստաշրջանի հրավիրումը, ինչպես նաև այն գաղափարը, որ այդ նստշրջանին հաջորդի զինաթափման համաշխարհային կոնֆերանսի հրավիրումը համապարփակ մասնակցությամբ, համապատասխան նախապատրաստությամբ և համապատասխան ժամանակ:

ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը կշարունակեն համագործակցել իրար հետ և ընդլայնված կազմով զինաթափման կոմիտեի անդամ մյուս պետությունների հետ, նպատակ ունենալով այդ համաժողովի շրջանակներում արդյունավետ քայլեր մշակել զինաթափման բնագավառում:

Սպառազինությունների սահմանափակման և զինաթափման մի շարք հարցերի շուրջը ՍՍՀՄի և ԱՄՆ-ի միջև կամ նրանց մասնակցությամբ վարվող բանակցություններում տիրող իրավիճակի մասին կարծիքների փոխանակման շնորհիվ կողմերը պայմանավորվեցին նոր խթան տալ համատեղ ջանքերին՝ այդ բանակցություններում գործնական արդյունքների հասնելու համար:

## III. ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐԸ

Հանգամանորեն կարծիքներ փոխանակվեցին միջազգային հանգուցային հարցերի շուրջը: Կողմերը պաշտպանեցին միջազգային լարվածության թուլացման պրոցեսը, որը, նրանց կարծիքով, պետք է հետևողականորեն հարըստանա կոնկրետ բովանդակությամբ և տարածվի երկրագնդի բոլոր շրջանների վրա, դրանով իսկ նպաստելով միջազգային կայունության ամրապնդմանը:

Լ. Ի. Բրեժնևը և Ջ. Քարտերը հատուկ ուշադրություն նվիրեցին լարվածության օջախներին, որոնք բարդացնում են միջազգային իրադրությունը և խանգարում այլ բնագավառներում դրական տեղաշարժերին: Կողմերը գտնում են, որ բոլոր պետությունները պետք է իրենց վարքագծում հանդես բերեն առանձնահատուկ պատասխանատվություն ու զսպվածություն, որպեսզի նպաստեն գոյություն ունեցող այդպիսի օջախների վերացմանը և թույլ չտան նորերի առաջացումը:

Կողմերը նշեցին միջազգային համագործակցության ընդլայնման կարևորությունը այնպիսի գլոբալ պրոբլեմներում, ինչպիսիք են համաշխարհային տնտեսական զարգացմանն օժանդակելը, շրջակա միջավայրի պահպանությունը և տիեզերքի ու համաշխարհային օվկիանոսի խաղաղ օգտագործումը: Նրանք պաշտպանեցին զարգացող երկրների ջանքերը, որոնք նպատակամղված են նրանց առջև կանգնած պրոբլեմների լուծմանը:

Նշելով ՄԱԿ-ի՝ որպես խաղաղության, անվտանգության պահպանման և միջազգային համագործակցության զարգացման գործիքի կարևոր դերը,

ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը հավաստում են իրենց մտադրությունը նպաստելու այդ
կազմակերպության արդյունավետության բարձրացմանը՝ ՄԱԿ-ի կանոնա-
դրության հիման վրա:

Կողմերը գոհունակությամբ նշեցին այն դրական տեղաշարժերը, որ վեր-
ջին տարիներս կատարվել են եվրոպական մայրցամաքի իրադրության մեջ:
Նրանք շեշտեցին Եվրոպայի անվտանգության ու համագործակցության
խորհրդակցության եզրափակիչ ակտի կարևոր նշանակությունը: Երկու կող-
մերը համաձայն են, որ համաեվրոպական խորհրդակցության կողմից սկսված
պրոցեսի շարունակումը կարևոր է Եվրոպայում անվտանգությանն ու համա-
գործակցությանը նպաստելու համար: Նրանք ուշադրություն հրավիրեցին
Հելսինկիի եզրափակիչ ակտի բոլոր դրույթների լրիվ կատարման անհրաժեշ-
տության վրա: ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը կնպաստեն այն բանին, որ 1980 թվականին
Մադրիդում կայանալիք համաեվրոպական խորհրդակցության մասնակից պե-
տությունների հանդիպումն անցնի կոնստրուկտիվ կերպով:

Յուրաքանչյուր կողմ հավաստեց իր շահագրգռությունը Մերձավոր Արե-
վելքում արդարացի, համապարփակ ու կայուն խաղաղությամբ և շարադրեց
իր համապատասխան դիրքավորումը մերձավորարևելյան պրոբլեմի կարգա-
վորման ուղիների ու մեթոդների վերաբերյալ:

Կարծիքներ փոխանակվեցին Աֆրիկայի իրադարձությունների շուրջը:
Կողմերը նշեցին այդ մայրցամաքի մի քանի շրջաններում իրադրության որո-
շակի նորմալացումը և համագործակցության, տնտեսական զարգացման ու
խաղաղ հարաբերությունների ուղղությամբ Աֆրիկայի անկախ պետություն-
ների ջանքերը, ինչպես նաև Աֆրիկայի միասնության կազմակերպության
դրական դերը այդ գործում: Նրանք դրա հետ մեկտեղ շարադրեցին իրենց
համապատասխան տեսակետները Աֆրիկայի հարավի իրադրության վերա-
բերյալ:

Կողմերն ընդունեցին Ասիայի խաղաղության և կայունության կարևորու-
թյունը ընդհանուր խաղաղության գործի համար: Նրանք համաձայնեցին, որ
այդ շրջանի բոլոր երկրների անկախությունը, սուվերենությունը և տերիտո-
րիալ ամբողջականությունը պետք է լիովին հարգվեն: Նրանք նաև շարա-
դրեցին իրենց համապատասխան տեսակետները Հարավ-արևելյան Ասիայի
իրադրության վերաբերյալ:

## IV. ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՐԿԿՈՂՄ ԲՆԱԳԱՎԱՌՆԵՐՈՒՄ

Ընդգծվեց փոխշահավետության հիման վրա, երկու երկրների միջև ար-
դեն գոյություն ունեցող համաձայնագրերին համապատասխան, ՍՍՀՄ-ի և
ԱՄՆ-ի համագործակցության կարևոր նշանակությունը: Կողմերը ի գիտու-
թյուն ընդունեցին երկու երկրների միջև շարունակվող մշակութային, կրթա-
կան և գիտատեխնիկական փոխանակումների լայն ծրագրերի իրականաց-
ման բնագավառում ձեռք բերված դրական արդյունքները:

Ելնելով հավասարության, փոխադարձության և փոխշահավետության
հաստատված սկզբունքներից, որոնք այդ ծրագրերի իրականացման հիմքն
են, կողմերը հավաստեցին իրենց մտադրությունը՝ շարունակելու և ակտիվաց-
նելու համագործակցությունը այդ բնագավառներում:

Կողմերը հավաստեցին, որ տնտեսական և առևտրական հարաբերու-
թյունները կարևոր տարր են երկկողմ կապերի զարգացման ու բարելավման
գործում: Երկու կողմերը արտահայտվեցին այդ հարաբերությունների ամրա-
պնդման օգտին և անհրաժեշտ համարեցին գործը վարել այն խոչընդոտների
վերացման նպատակով, որոնք սահմանափակում են փոխշահավետ առևտրա-
ֆինանսական կապերի զարգացումը: Կողմերն իրենց վճռականությունն ար-
տահայտեցին իրենց երկրների համապատասխան կազմակերպություններին և
հիմնարկություններին խրախուսել երկարաժամկետ հիման վրա կնքելու փոխ-
շահավետ առևտրական համաձայնագրեր ու կոնտրակտներ:



Լ. Ի. Բրեժնևը և Ջ. Քարտերը երկուստեք գոհունակություն արտահայ-
տեցին տեղի ունեցած բանակցությունների արդյունքների առթիվ: Նրանք
վստահ են, որ հանդիպման շնորհիվ մի շարք պրոբլեմներում կողմերի փոխ-
ըմբռնման խորացումը, ձեռք բերված պայմանավորվածությունների հետևո-
ղական իրականացումը կնպաստեն սովետա-ամերիկյան հարաբերություննե-
րի զարգացմանը և երկու երկրների համատեղ ավանդը կդառնան լարվածու-
թյան հետագա թուլացման, միջազգային անվտանգության և խաղաղության
ամրապնդման գործում:

*18 հունիսի 1979 թ.*

**Լ. ԲՐԵԺՆԵՎ**
**ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ**

**ՋԻՄՄԻ ՔԱՐՏԵՐ**
**Ամերիկայի Միացյալ Նահանգների պրեզիդենտ**

Ինֆորմացիոն հաղորդագրություն

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

Հունիսի 27-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը:

Պլենումը քննարկեց «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կենսագործման ուղղությամբ հանրապետության կուսակցական կազմակերպությունների խնդիրների մասին» հարցը:

Պլենումում զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ:

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակությանը մասնակցեցին
Հայաստանի կոմկուսի Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Ն.
ՆԵՐՍԻՍՅԱՆԸ, Հայաստանի կոմկուսի Լենինականի քաղկոմի առաջին քար-
տուղար ընկ. Ռ. Ա. ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆԸ, Կիրովականի տրիկոտաժի միավոր-
ման բանվորուհի ընկ. Գ. Ա. ՂԱԶԱՐՅԱՆԸ, «Սովետական Հայաստան» թեր-
թի խմբագիր ընկ. Լ. Մ. ԿՐՈՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ Հրատպետկոմի նախա-
գահ ընկ. Մ. Բ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԸ, «Հայէլեկտրամեքենա» արտադրական
միավորման գլխավոր դիրեկտոր ընկ. Ռ. Պ. ԱՄԻՐՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ գի-
տությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ ընկ. Ա. Ռ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱ-
ՆԸ, կինոռեժիսոր, Հայկական ՍՍՀ ժողովրդական արտիստ ընկ. Ֆ. Վ. ԴՈՎ-
ԼԱԹՅԱՆԸ, Հայաստանի կոմկուսի Ղափանի շրջկոմի առաջին քարտուղար
ընկ. Ա. Ա. ՀԱԿՈԲՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ բարձրագույն ու միջնակարգ մաս-
նագիտական կրթության մինիստր ընկ. Լ. Պ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆԸ, Շամշադինի
շրջանի Այգեձոր գյուղի կոլտնտեսության կոլտնտեսուհի ընկ. Է. Ս. ԾՈՒ-
ՂՈՒՐՅԱՆԸ, Հայաստանի գրողների միության վարչության առաջին քար-
տուղար ընկ. Վ. Հ. ՊԵՏՐՈՍՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ հեռուստատեսության և
ռադիոհաղորդումների պետական կոմիտեի նախագահ ընկ. Ս. Կ. ՊՈՂՈՍ-
ՅԱՆԸ, ՀԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Ա. ՏՈՒՐՅԱՆԸ:

Քննարկված հարցի առթիվ ընդունվեց համապատասխան որոշում:

Պլենումը հաստատեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի աշխատանքի 1979—1980 թվականների հեռանկարային պլանը:

Պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատող ընկ. Ա. Գ. ԿՈԼՄԱԿՈՎԸ:

# ԸՆԿ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄՈՒՄ*

*Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հետևողականորեն իրականացնում է ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումները, հաջողությամբ նվաճում սոցիալ-տնտեսական զարգացման 10-րդ հնգամյակի բնագծերը: Նոր առաջընթաց քայլ է կատարվել երկրի տնտեսական պոտենցիալի մեծացման, նրա պաշտպանական հզորության ամրապնդման գործում: Աճում է սովետական մարդկանց բարեկեցությունը: Կոմունիստական կուսակցությունը և սովետական պետությունը հետևողականորեն իրականացնում են կուսակցության XXIV և XXV համագումարների մշակած լենինյան արտաքին քաղաքական կուրսը: Օրավուր ամրապնդվում է Սովետական Միության միջազգային հեղինակությունը:*

*Ներկա պլենումի աշխատանքն ընթանում է այն կարևոր իրադարձությունից հետո, երբ ԱՄՆ-ի պրեզիդենտ Ջ. Քարտերի հետ ՍՄԿԿ Կենտկոմի Գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևի բանակցությունների ավարտվեցին ստրատեգիական սպառազինությունների սահմանափակման 2-րդ համաձայնագրի, ինչպես նաև սովետա-ամերիկյան այլ փաստաթղթերի ստորագրմամբ: Վիեննայի հանդիպման արդյունքները հնարավոր դարձան ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի երկարատև ու լարված աշխատանքի շնորհիվ, դրա նախապատրաստման և իրականացման գործում, ընդհանուր խաղաղության ամրապնդման, սպառազինությունների մրցավազքի սանձահարման, տարբեր հասարակարգ ունեցող պետությունների փոխշահավետ համագործակցության զարգացման ասպարեզում Լ. Ի. Բրեժնևի ներդրած անձնական ավանդի շնորհիվ:*

*Ամբողջ սովետական ժողովրդի հետ մեկտեղ մեր հանրապետության աշխատավորները միահամուռ հավանություն են տալիս Վիեննայի հանդիպման ժամանակ ընկեր Լ. Ի. Բրեժնևի գլխավորած սովետական պատվիրակության գործունեությանը և, ինչպես միշտ, ակտիվորեն պաշտպանում ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական պետության լենինյան ներքին ու արտաքին իմաստուն քաղաքականությունը: Մենք քաջ գիտակցում ենք, որ այն ամենը, ինչ կուսակցությունը և պետությունն անում են մեր երկրի ներսում և միջազգային հարաբերությունների ասպարեզում, արվում է հանուն մարդու:*

*Հենց մարդու համար է ստեղծված զարգացած սոցիալիզմի հասարակու-*

* Տպագրվում է համառոտումներով:

ուսումնական հաստատությունների դասախոսներ, գիտական և գեղարվեստական մտավորականության ներկայացուցիչներ ուսումնասիրում էին ընկեր Լ. Ի. Բրեժնևի «ՍՄԿԿ գաղափարական աշխատանքի հրատապ հարցերը» գիրքը։

Այնտեղ, որտեղ լավ են կազմակերպված քաղաքական ու տնտեսական ուսուցումը, դաստիարակչական աշխատանքները, որպես կանոն, հաջող են լուծվում կոլեկտիվի առջև կանգնած խնդիրները։ Այդ տեսակետից ուսանելի է քաղաքական-դաստիարակչական աշխատանքի կազմակերպումը Երևանի ալյումինի գործարանում, որտեղ պլանային առաջադրանքների կատարման միջոցառումները միաձուլվում են ձեռնարկության ղեկավարության և սկզբնական կուսակցական կազմակերպության դաստիարակչական ջանքերի հետ։

Աշխատավորական կոլեկտիվների առջև դրված գործնական խնդիրների հետ քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հմուտ զուգակցման ոչ քիչ թվով օրինակներ կարելի է բերել նաև Երևան, Լենինական, Կիրովական, Դիլիջան քաղաքների, Արտաշատի, Իջևանի, Հրազդանի, Թումանյանի և այլ շրջանների կուսակցական շատ կազմակերպությունների պրակտիկայից։

Քաղաքական և տնտեսագիտական ուսուցման հաջողությունների մեջ իր վճռական լուման է մուծում պրոպագանդիստների ավելի քան 27 հազարանոց վիթխարի բանակը, որոնց 70 տոկոսն ունի ավելի քան տասնամյա փորձ։ Պրոպագանդիստների 82 տոկոսը կուսակցական, սովետական և տնտեսական ղեկավար աշխատողներ են։

Սակայն քաղաքական և տնտեսագիտական ուսուցման կազմակերպման գործում կան էական թերություններ, չլուծված հարցեր։ Որոշ կուսակցական կոմիտեներ, սկզբնական կազմակերպություններ ինչպես հարկն է չեն զբաղվում այդ գործի կազմակերպմամբ, խորամուխ չեն լինում ուսուցման բովանդակությանը, կոմունիստների նկատմամբ պատշաճ պահանջկոտություն չեն ցուցաբերում նրանց գաղափարատեսական մակարդակի բարձրացման գործում, չեն հասնում այն բանին, որ քաղաքական ուսուցումը կադրերին արդյունավետ կերպով զինի մարքսիզմ-լենինիզմի տեսությամբ և մեթոդաբանությամբ, դրանք պրակտիկ գործունեության մեջ ստեղծագործաբար կիրառելու հմտությամբ, որ ուսուցումը սերտորեն շաղկապվի կոլեկտիվների առջև դրված կոնկրետ խնդիրների հետ։

Զեկուցման մեջ նշվում են Գորիսի, Հոկտեմբերյանի, Ամասիայի, Մարտունու, 26 կոմիսարների, Շամշադինի, Ստեփանավանի, Աբովյանի, Ազիզբեկովի, Ախուրյանի, Վարդենիսի, Եղեգնաձորի, Ղափանի, Նաիրիի, Սպիտակի և այլ շրջանների կուսակցական կազմակերպությունների քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության սիստեմում տեղ գտած թերությունները։

Ըստ երևույթին, ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, թվարկածս կուսակցական կոմիտեների ղեկավարները լուրջ եզրակացություններ չեն արել կուսակցության XXV համագումարի պահանջներից, Հայաստանի կոմկուսի XXVI համագումարի և Կենտկոմի 1976 թ. հոկտեմբերյան պլենումի որոշումներից։ Այլապես ինչո՞վ բացատրել քաղաքական ուսուցման մեջ տեղ գտած թերությունները։ Նման իրավիճակի համար կուսակցության նշված շրջկոմների առաջին քարտուղարների հետ մեկտեղ պատասխանատու են նաև գաղափարական աշխատանքի հարցերով զբաղվող քարտուղարները։ Նրանք պետք է լինեն աշխատավորների գաղափարաքաղաքական դաստիարակության հիմնական կազմակերպիչներից մեկը։

Քաղաքական և տնտեսագիտական ուսուցման սիստեմում նոր ուսումնական տարին կանցնի Վ. Ի. Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձի և ՍՄԿԿ XXVI համագումարի նախապատրաստման ժամանակաշրջանում։ Այս կապակցությամբ նոր ուսումնական տարում կուսակցական կազմակերպությունները պետք է հատուկ ուշադրություն դարձնեն Վ. Ի. Լենինի կյանքի ու գործունեության, լենինիզմի կարևորագույն հարցերի խոր ուսումնասիրման վրա, որն անանց նշանակություն ունի կուսակցության ամբողջ հեղափոխական-վերակերտիչ գործունեության համար։ Անհրաժեշտ է ապահովել գիտական կոմունիզմի հիմնադիրների աշխատությունների, ՍՄԿԿ փաստաթղթերի, ընկեր Լ. Ի. Բրեժնևի, կուսակցության մյուս ղեկավարների աշխատությունների խոր ուսումնասիրությունը։



Մարքս-լենինյան կրթության և տնտեսագիտական ուսուցման ներգործունությունը որոշվում է պրոպագանդիստների և ունկնդիրների փոխադարձ ջանքերով ու աշխատանքով։ Կուսակցական կազմակերպություններն ու կոմիտեները պարտավոր են հոգ տանել, որպեսզի պրոպագանդիստները ավելի համառորեն տիրապետեն պարապմունքների անցկացման ակտիվ մեթոդներին, ունկնդիրներին օժտեն քաղաքական ինքնակրթության, հասարակական երևույթների ու պրոցեսների, կոլեկտիվի առջև դրված խնդիրների ստեղծագործական իմաստավորման ճաշակով։

Քաղաքական բանավոր ագիտացիան եղել է և մնում է կուսակցական գործունեության կարևոր ոլորտը, մասսաների հետ կուսակցության մշտական կապի ակտիվ ձևերից մեկը, քաղաքական ղեկավարման արդյունավետ միջոց։ Կուսակցական կազմակերպությունները նկատելիորեն բարձրացրել են ագիտացիոն-մասսայական աշխատանքի ներգործունությունը, ուժեղացրել նրա ինֆորմացիոն-մոբիլիզացնող ուժը, այն դարձրել կոմունիստական դաստիարակության ընդհանուր կոմպլեքսի ակտիվ օղակներից մեկը։ Կուսակցական շատ կազմակերպությունների պրակտիկայում ամուր կերպով մտել են քաղաքական ինֆորմացիայի օրերը, հարց ու պատասխանի երեկոները, բնակչության առջև ղեկավար աշխատողների ամենամսյա միաժամանակյա ելույթները, ինֆորմացիոն պրոպագանդիստական խմբերի, ագիտբրիգադների մեկնումը տեղերը, ժողովրդական ընթերցումները, կենդանի լրագրերը։

Դրական տեղաշարժեր են կատարվել դասախոսական պրոպագանդայի կազմակերպման գործում։ Այժմ հանրապետությունում քաղաքական և գիտական գիտելիքների պրոպագանդմանը մասնակցում է ավելի քան 21 հազար դասախոս։ Աճել է դասախոսությունների քանակը, հատկապես հասարակականքաղաքական թեմաներով։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշվում է, որ դասախոսական և մասսայական-քաղաքական աշխատանքի կենտրոնում պետք է լինեն ներքին և միջազգային կյանքի ամենահրատապ հարցերը, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման պայքարը, կարգապահության ու կազմակերպվածության ամրապնդումը, հակահասարակական դրսևորումների, բուրժուական գաղափարախոսության ու բարոյականության հանդեպ անհանդուրժողականության դաստիարակումը։ Այդ խնդիրը մենք բավարար հետևողականությամբ չենք կատարում։ Մենք դեռ չենք հասել այն բանին, որ դասախոսական պրոպագանդային ակտիվորեն մասնակցեն հանրապետության կուսակցական, սովետական, տնտեսական և մյուս մարմինների բոլոր ղեկավար աշխատողները։

Գաղափարախոսական աշխատանքում անհրաժեշտ ուշադրություն պետք է նվիրել դիտողական ագիտացիային, որն ամբողջությամբ վերցրած բարելավման կարիք ունի։ Անհրաժեշտ է ուժեղացնել քաղդաստիարակչական, ագիտմասսայական աշխատանքը ըստ բնակության վայրի, իրականացնել բնակչության տարբեր խավերի նկատմամբ շերտավորված մոտեցումը։

Քաղաքական և տնտեսագիտական ուսուցման, քաղաքական-մասսայական աշխատանքի հաջողությունը պայմանավորված է պրոպագանդիստական, դասախոսական կադրերի, ագիտատորների, քաղինֆորմատորների տեսական ու մեթոդական մակարդակով։ Բոլոր կուսակցական կոմիտեների պարտքն է՝ հրմտորեն ընտրել, ուսուցանել, դաստիարակել այդ կադրերին, ամենօրյա հոգատարություն, ուշադրություն ցուցաբերել նրանց նկատմամբ։

Լենինյան կուսակցության հեղափոխական-վերակերտիչ գործունեության պատմական նվաճումներից մեկն այն է, ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, որ ինտերնացիոնալիզմը դարձել է մեր երկրի աշխատավորների խոր համոզմունքն ու վարքագծի նորմը, իսկ ժողովուրդների բարեկամությունը՝ սովետական ապրելակերպի անկապտելի հատկանիշը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը վերջին տարիներին քննարկել է հայրենասիրական և ինտերնացիոնալ դաստիարակության կատարելագործման

պրոբլեմներին անմիջականորեն վերաբերող մի շարք հարցեր, մշակել և հետևողականորեն իրականացնում է կոմպլեքսային միջոցառումներ։ Հանրապետության ամբողջ գաղափարական կյանքի վրա հսկայական դրական ներգործություն ունեցավ Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակի տոնակատարությունը, որը վերածվեց ինտերնացիոնալ բարեկամության, ռուս և հայ ժողովուրդների, մեր մեծ հայրենիքի բոլոր ժողովուրդների եղբայրական անխախտ միասնության համաժողովրդական տոնահանդեսի։

Լավ և բարի ավանդույթ է դարձել Վրաստանի, Ադրբեջանի և Հայաստանի կոմկուսների կենտրոնական կոմիտեների գաղափարական համատեղ միջոցառումների մշակումն ու իրականացումը։ Ինտերնացիոնալիստական համոզմունքների և զգացմունքների ձևավորման իսկական դպրոց է հանդիսանում այդ եղբայրական հանրապետությունների, ինչպես նաև Ռոստովի մարզի աշխատավորական կոլեկտիվների, շրջանների ու քաղաքների հետ լայն թափ ստացած սոցիալիստական մրցումը

Քիչ աշխատանք չի կատարվել։ Այժմ մեր խնդիրն է ամրապնդել ձեռք բերածը և, հենվելով հանրապետությունում ու երկրում կուտակված փորձի վրա, շարունակել առաջ ընթանալ այդ աշխատանքի կատարելագործման ուղիով՝ ՍՄԿԿ Կենտկոմի նոր որոշման մեջ առաջ քաշված պահանջների ոգով։

Կարևոր է, որ կյանք մտնող սերունդը մտքով ու սրտով ընկալի սովետական ժողովուրդների բարեկամության և ինտերնացիոնալ եղբայրության մեծ իդեալները՝ մեր ժողովրդի ամենաթանկ հարստությունը, նրա ազգային հավատամքը, որ նվաճվել է ազատության համար, խաղաղ կյանքի և կերտման իրավունք ձեռք բերելու համար մղվող պայքարում։

Մեկ տարի հետո մեր հանրապետության աշխատավորները հանդիսավորությամբ կնշեն Հայաստանում սովետական իշխանության հաստատման և Հայաստանի կոմունիստական կուսակցության կազմավորման 60-ամյակը։ Այդ նշանակալի հոբելյանը մենք կանցկացնենք Սովետական Միության հարազատ Լոմունիստական կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը, հայ ժղովրդի, հանրապետության բոլոր աշխատավորների կուռ համախմբվածության, սովետական հայրենասիրության և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի մեծ գաղափարներին անսասան հավատարմության, սովետական մարդու համազգային հպարտության վեհ զգացման խորացման, ռուս մեծ ժողովրդի, ՍՍՀՄ եղբայրական բոլոր ժողովուրդների հետ հայ ժողովրդի անխախտ բարեկամության հետագա ամրապնդման նշանաբանով։

«Հավերժ ՍՍՀՄ ժողովուրդների եղբայրական միության մեջ, հավերժ Ռուսաստանի հետ, ռուս ժողովրդի հետ»,— սրտի խորքից բխող այս խոսքերը արտահայտում են հայ ժողովրդի անկեղծ սիրո զգացմունքները, նրա խորին հարգանքը և անսահման երախտագիտությունը մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների, ռուս մեծ ժողովրդի նկատմամբ, որը հիրավի անգնահատելի դեր է խաղացել մեր ժողովրդի սոցիալական և ազգային ազատագրության ու վերածննդի գործում։ Մեր սրբազան պարտքն է՝ աճող սերնդին հանձնել սովետական ժողովուրդների հավերժական բարեկամության ու եղբայրության անմար ջահը.

Ինտերնացիոնալ դաստիարակության հզոր միջոց, ազգերի և ազգությունների մերձեցման գործոն է ռուսաց լեզվի տիրապետումը։

Խոսելով զարգացած սոցիալիզմի պայմաններում ռուսաց լեզվի, որպես ազգամիջյան հաղորդակցման լեզվի, հարաճուն դերի մասին, ընկեր Լ. Ի. Բրեժնևը շեշտել է. «Մայրենի լեզվի հետ մեկտեղ ռուսաց լեզվին ազատ տիրապետելը, որը բոլոր սովետական մարդկանց կողմից կամավոր կերպով ընդունվել է որպես ընդհանուր պատմական սեփականություն, նպաստում է սովետական ժողովրդի քաղաքական, տնտեսական և հոգևոր միասնության հետագա ամրապնդմանը»։ Կուսակցական կոմիտեները, ժողովրդական կրթության մարմինները, մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցները, հանրապետության ստեղծագործական միությունները ու կազմակերպությունները կոչված են մշտական հոգատարություն ցուցաբերելու, որպեսզի յուրաքանչյուր քաղաքացի ոչ միայն խորապես ուսումնասիրի մայրենի լեզուն և տիրապետի այն,



այլև լավ իմանա ռուսաց լեզուն՝ ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության և համագործակցության լեզուն։

Ինտերնացիոնալ դաստիարակությունը պահանջում է ստեղծագործական մոտեցում, հետևողական նպատակասլաց աշխատանք։

Մեր կուսակցական կազմակերպությունների քաղաքական, գաղափարախոսական աշխատանքը, ինֆորմացիայի միջոցների գործունեությունը պետք է նպատակամղված լինեն բուրժուական պրոպագանդայի, ինչպես նաև մեր գաղափարական հակառակորդների կառքին լծված դաշնակցական պարագլուխների և նրանց գաղափարախոսության դեմ հետևողական, հարձակողական անզիջում պայքարին։

Գաղափարախոսական աշխատանքի կարևորագույն ուղղություններից մեկը ինֆորմացիոն գործունեությունն է, որի նպատակն է արտասահմանյան երկրների հասարակայնությանը, այդ թվում և սփյուռքահայ զանգվածներին հասցնել ճշմարտությունը մեր մեծ երկրի և մեր հանրապետության, սովետական ժողովրդի մասին, կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում նրա հսկայական նվաճումների, սովետական պետության հետևողական խաղաղասիրական արտաքին քաղաքականության մասին։ Հարկավոր է այսուհետ ևս ընդլայնել ու աշխուժացնել կապերը սփյուռքահայ առաջադիմական ու դեմոկրատական կազմակերպությունների հետ։

Այնուհետև զեկուցողն ասում է, որ գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի ներգործունությունը, սովետական մարդկանց գաղափարաքաղաքական վեհ հատկությունները արտահայտվում են ամենից առաջ հանրային արտադրության մեջ։ Այդ առումով մեծ է աշխատանքային կոլեկտիվի՝ մեր սոցիալիստական հասարակության առաջին բջջի դերը։ Կոլեկտիվներում համապատասխան աշխատանքային, բարոյաքաղաքական մթնոլորտի ստեղծումը բոլոր կուսակցական կազմակերպությունների մարտունակության համոզիչ վկայությունն է։ Ահա թե ինչու գաափարախոսական-քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության կենտրոնը պետք է առաջին հերթին դառնա աշխատանքային կոլեկտիվը։

Մեր հանրապետությունում քիչ չեն առաջավոր աշխատանքային կոլեկտիվները, որոնց կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, տնտեսական ղեկավարները խորապես հասկանում են սոցիալիստական մրցության դաստիարակչական ֆունկցիան, հմտորեն զուգակցում դաստիարակչական և տնտեսական խնդիրների կատարումը։ Այդպիսիների թվին են պատկանում Երևանի «Նաիրիտ» գիտաարտադրական միավորումը, «Հայէլեկտրալույս», «Հայէլեկտրամեքենա», «Հայէլեկտրասարքավորում», «Մասիս», «Գարուն» արտադրական միավորումները, Լենինականի լոկոմոտիվային դեպոն, Զանգեզուրի պնձամոլիբդենային, Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատները, Կիրովականի քիմիական գործարանը, Հրազդանի ՊՇԷԿ-ը, Հայկական ատոմային էլեկտրակայանը, մաթեմատիկական հաշվիչ մեքենաների գիտահետազոտական ինստիտուտը, Նոյեմբերյանի շրջանի «Ջեյթուն» սովխոզը, Ախուրյանի շրջանի Հովտնի գյուղի Ֆրունզեի անվան կոլտնտեսությունը, «Երարդշինը», «Քաջարանշինը», Չարենցավանի տրանսպորտային ձեռնարկությունը և այլն։

Նման կոլեկտիվներին բնորոշ են խոսքի և գործի միասնությունը, վեհ հայրենասիրությունը, երկրի, ժողովրդի հանդեպ իրենց պարտքի իսկական քաղաքացիական ըմբռնումը։ Ուրախալի է, որ աշխատանքային հարուստ ավանդույթների տեր կոլեկտիվների կողքին հանրապետությունում աճում են նաև երիտասարդ առաջավոր կոլեկտիվներ։ Ահա, օրինակ, Կիրովականի «Ավտոգենմաշ» գործարանը, որտեղ մեծ ուշադրություն է նվիրվում քաղաքական և դաստիարակչական աշխատանքին, կադրերի գաղափարատեսական կոփմանը։

Կուսակցության շրջկոմների և քաղկոմների խնդիրն է՝ հետևողականորեն բարձրացնել բոլոր կադրերի, կուսակցության բոլոր անդամների պատասխանատվությունը կոլեկտիվներում գաղափարախոսական-դաստիարակչական աշխատանքի վիճակի համար, օգնել սկզբնական կուսակցական կազմակերպություններին, կուսակցական խմբերին, արհմիութենական ու կոմերիտական

ղինակներին նրանց խնդրանքների մերժման մոտիվների փաստարկված պարզաբանումը մեծապես կնպաստեն մասսաների դաստիարակման գործին։

Ամբողջ գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի արդյունավետության բարձրացման գործում կարևոր նշանակություն ունի սովետական ապրելակերպի պրոպագանդման բարելավումը։ Սովետական ապրելակերպի պրոպագանդման բոլոր միջոցառումները պետք է աչքի ընկնեն դասակարգային նպատակասլացությամբ, սոցիալիզմի, սոցիալիստական ապրելակերպի հակոտնյաների, դրա սկզբունքներից կատարվող խոտորումների դեմ մղվող պայքարում ակտիվ հարձակողական դիրքավորմամբ։

Դաստիարակչական աշխատանքներում մեծ դեր պետք է հատկացվի նորի, առաջավորի պրոպագանդմանը, իրենց պարտականությունները բարեխիղճ ու անթերի կատարող աշխատողների խրախուսմանը։ Յուրաքանչյուր աշխատավորական կոլեկտիվում հարկավոր է ստեղծել այնպիսի մթնոլորտ, որպեսզի բոլորն իմանան՝ ով ինչպես է աշխատում, որպեսզի լավ ու բարեխիղճ աշխատողները շրջապատված լինեն հարգանքով, ուշադրությամբ, հոգատարությամբ, որպեսզի նրանց կարծիքն ու առաջարկությունները հաշվի առնվեն կոլեկտիվի աշխատանքները կազմակերպելիս, որպեսզի կոլեկտիվում տոն տվողները լինեն հենց նրանք։

Հաստատակամորեն պետք է զարգացնել քննադատությունն ու ինքնաքննադատությունը։ Ոչ մի գործարար, գործին օգնող քննադատական դիտողություն կամ առաջարկություն չպետք է անհետևանք մնա։ Միաժամանակ կուսակցական կոմիտեներն ու սկզբնական կազմակերպությունները պետք է անհաշտ պայքար մղեն բոլոր նրանց դեմ, ովքեր քննադատության անվան տակ զբաղվում են քննադատամոլությամբ ու զրպարտությամբ, կադրերի աշխատանքը սևացնելու, նրանց հեղինակությունը խաթարելու գործով։

Կուսակցական կոմիտեների, սկզբնական կուսակցական կազմակերպությունների, հասարակական կազմակերպությունների, ողջ գաղափարախոսական և ագիտացիոն-պրոպագանդիստական ճակատի ակտիվի հիմնական խնդիրը գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության ուղղությամբ կատարվող աշխատանքի վերջնական արդյունքը պետք է լինի այն, որ հանրապետության յուրաքանչյուր քաղաքացի, աշխատավոր, որտեղ էլ նա աշխատի և ինչպիսի պոստ էլ գրավի.

— խորությամբ տիրապետի մարքս-լենինյան ուսմունքին, տոգորված լինի սովետական հայրենասիրության ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ոգով, սովետական ժողովուրդների բարեկամության ոգով, կարողանա ճիշտ կողմնորոշվել լենինյան կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության հարցերում, լինի դրանց ջատագովն ու իրականացնողը, ակտիվ հակահարված տա մեր գաղափարական թշնամիների ոտնձգություններին.

— տոգորված լինի աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքով, կատարի իր պարտականությունները ժամանակին և լրիվ։ Աշխատի բարձր արտադրողաբար, որակով, խնայողաբար վերաբերվի ժողովրդական բարիքին, լինի զարգացած, կարգապահ, բարձրացնի իր որակավորումը, կատարելագործի աշխատանքային ձիրքը, հարստացնի իր փորձը նորով, առաջավորով.

— ունենա ակտիվ կենսադիրքորոշում, հանդես բերի խոսքի ու գործի միասնություն, անտարբեր չանցնի դեռևս գոյություն ունեցող թերությունների կողքով, պայքարի ամենուրեք կարգ ու կանոնի հաստատման համար, սոցիալիստական ապրելակերպին անհարիր երևույթների, անտնտեսավարության ու շռայլության, բյուրոկրատիզմի և մարդկանց նկատմամբ անհոգի վերաբերմունքի, կաշառակերության, ընչաքաղցության, սպառողական հոգեբանության, սոցիալիստական սեփականության հափշտակումների և այլ բացասական երևույթների դեմ, լինի օրինակելի վարք ու բարքի տեր մարդ, բարեկիրթ սովետական քաղաքացի։

Հատուկ ուշադրություն պետք է նվիրել հասարակական կարծիքի խոր ու համակողմանի ուսումնասիրմանը։ Այսպիսի հարցադրումը բացատրվում է նրանով, որ հասարակական կարծիքը սոցիալիստական դեմոկրատիայի կարևոր ինստիտուտ է։ Նա հարաճուն դեր է խաղում սոցիալական կառավարման և մասսաների կոմունիստական դաստիարակության մեխանիզմի կատարելագործման մեջ։



Մեծ նշանակություն ունի գաղափարախոսական աշխատանքի պլանավորման բարելավումը։ Առանձին կուսակցական կոմիտեներում, սկզբնական կազմակերպություններում քաղաքական-դաստիարակչական գործունեության պլանավորումը էական թերություններ ունի։ Պլանները բավականաչափ կշռադատված չեն, չեն նպատակամղված աշխատանքի վերջնական արդյունքների ձեռքբերմանը, չեն համաձայնեցված տվյալ գյուղի, շրջանի, քաղաքի սոցիալ-տընտեսական զարգացման խնդիրների հետ, իսկ որոշ ձեռնարկություններում՝ աշխատավորական կոլեկտիվների սոցիալական զարգացման պլանների հետ։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը հանգամանորեն կանգ է առնում երիտասարդության կոմունիստական դաստիարակության խնդիրների վրա։ Մեր խնդիրն այն է, որ յուրաքանչյուր նոր սերունդ ստեղծարար գործունեության իր ուղին սկսի համակողմանիորեն զարգացած, գաղափարապես և բարոյապես կոփված, էստաֆետն ընդունելով վետերաններից, նույնպիսի անձնվիրությամբ և խանդավառությամբ աշխատի ի փառս հայրենիքի, բազմապատկի նրա տնտեսական ու պաշտպանական հզորությունը, հոգևոր արժույթները։

Ձևավորելով երիտասարդների աշխարհայացքը, հարկավոր է ապահովել ամենագլխավորը՝ մարքսիզմ-լենինիզմը ամեն մեկի համար դառնա հոգևոր և ինտելեկտուալ հարստացման աղբյուր։ Ցավոք, մենք այսպիսի արդյունք չենք տեսնում մի շարք աշխատավորական կոլեկտիվներում և ուսումնական հաստատություններում տարվող դաստիարակչական աշխատանքում։ Մարքս-լենինյան տեսության ուսումնասիրությունը երբեմն մակերեսային բնույթ է կրում։ Մի շարք դպրոցներում, պրոֆտեխնիկական ուսումնարաններում, բուհերում մանկավարժական կոլեկտիվները միշտ չէ, որ հոգ են տանում սովորողների ճանաչողական ակտիվությունը բարձրացնելու, նրանց ակտիվ կենսադիրքորոշմամբ օժտելու նկատմամբ, չեն մտահոգվում գիտակցական կարգապահության ամրապնդման, վարքագծի կուլտուրայի համար։ Շատ թերություններ էլ առաջանում են այն բանից, որ ուսուցիչները և բուհերի դասախոսները հաճախ իրենց խնդիրը սահմանափակում են միայն ուսուցմամբ, տեսական հարցերը չեն կապում կյանքի հետ, կոմունիստական շինարարության արդի պրակտիկայի հետ։

Դպրոցների և պրոֆտեխնիկական ուսումնարանների մանկավարժական կոլեկտիվների, բուհերի պրոֆեսորադասախոսական կազմի, բոլոր ուսումնական հաստատությունների կուսակցական կազմակերպությունների պարտքն է բարձրացնել դասավանդման և դաստիարակության որակն ու արդյունավետությունը, ամբողջ գաղափարախոսական աշխատանքի ներգործունությունը։ Այդ նպատակով անհրաժեշտ է ուսումնական հաստատությունում, մասնավորապես բուհում, ունենալ սովորողների շրջանում տարվող դաստիարակչական աշխատանքի պլան՝ ուսումնառության ամբողջ ժամանակաշրջանի համար, ինչպես դա արվում է Լենինգրադում։ Դպրոցը և բուհը պետք է պատասխանեն ոչ միայն «ի՞նչ դառնալ» հարցին, այլև «ինչպիսի՞ն դառնալ» հարցին։

Ինչպես նշվեց Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1976 թվականի հոկտեմբերյան պլենումում, դաստիարակչական աշխատանքի սիստեմում կարևոր նշանակություն է ստանում բուհերում ընդունելության քննությունների կազմակերպումն ու անցկացումը։ Չնայած այդ գործում կատարված որոշ դրական տեղաշարժերին, հանրապետության բուհերում դեռևս նկատվում են պրոտեկցիոնիզմի, զանազան խախտումների և այլ բացասական երևույթների դեպքեր։

Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթության մինիստրությունը, բոլոր այն մինիստրությունները, որոնց տնօրինության տակ կան բուհեր, համապատասխան կուսակցական կոմիտեները, բուհերի կուսակցական կազմակերպությունները, ռեկտորատները պետք է հասնեն նման դեպքերի խսպառ բացառման, հիշելով, որ այդպիսի երևույթները ոչ միայն բացասաբար են ազ-

դում երիտասարդների գիտակցության վրա, այլև անուղղելի վնաս են հասցնում գաղափարախոսական ու քաղաքական-դաստիարակչական աշխատանքին։

Մեծ ու պատասխանատու է պրոֆեսորադասախոսական կազմի դերը ուսանողների ուսուցման ու դաստիարակության գործում։ Այնինչ նրանցից ոմանք մոռանում են իրենց պարտքը։ Ավելին, կան նաև այնպիսիները, որոնք իրենց վարքագծով երիտասարդությանը ցույց են տալիս անվայել օրինակ։

Մեր դաստիարակչական աշխատանքներում, շարունակում է ընկույզը, հույժ կարևոր տեղ պետք է գրավի պատանիների ու աղջիկների ֆիզիկական կոփումը։ Դրա համար մենք ունենք բոլոր հնարավորությունները։ Անհրաժեշտ է ավելի նպատակասլաց և արդյունավետ օգտագործել այդ հնարավորությունները, հասնել ֆիզկուլտուրայի մասսայականության և սպորտային վարպետության բարձրացման։ Կուսակցական ու կոմերիտական կոմիտեների, կազմակերպությունների, սպորտկոմիտեի, ԴՕՍԱԱՖ-ի խնդիրն է բարելավել երիտասարդության ռազմահայրենասիրական դաստիարակությունը, ինչպես հարկն է պատրաստել նրան սովետական բանակում ծառայելու համար։

Մեր առջև կանգնած պատասխանատու խնդիրները պահանջում են շուտափույթ կերպով վերացնել թերությունները, ըստ ամենայնի բարելավել երիտասարդության շրջանում կատարվող ամբողջ գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքը։

Իր զեկուցման մեջ ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն ասում է, որ մամուլի, հեռուստատեսության, ռադիոհաղորդումների, ինֆորմացիոն ծառայության օրգանները մեծ աշխատանք են կատարում աշխատավորներին ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների, տասներորդ հնգամյակի առաջադրանքների հաջող կատարման համար մոբիլիզացնելու նպատակով, ակտիվորեն օգնում են կուսակցական կազմակերպություններին՝ գաղափարադաստիարակչական աշխատանքների իրականացման գործում։

Մասսայական ինֆորմացիայի օրգանների առաջնահերթ խնդիրն է՝ բարձրացնել մարքսիզմ-լենինիզմի, ՍՄԿԿ պատմական փորձի պրոպագանդման մակարդակը, մամուլի ելույթների, հեռուստատեսային և ռադիոհաղորդումների գաղափարական բովանդակությունն ու ներգործունությունը։ Համակողմանիորեն լուսաբանել բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության կյանքը, ցույց տալ էկոնոմիկայի, գիտության և կուլտուրայի կարևորագույն նվաճումները։ Ընթերցողների, ունկնդիրների քննարկմանը դնել տնտեսական ու կուլտուրական շինարարության, միջազգային կյանքի հասունացած հարցերը։

Այդ պրոբլեմների լուծմանը պետք է առաջին հերթին ակտիվորեն լծվի հանրապետական կուսակցական մամուլը։ Սակայն հարկ է նշել, որ «Սովետական Հայաստան» (ընկ. Լ. Կրոյան), «Կոմունիստ» (ընկ. Բ. Մկրտչյան) օրաթերթերի և տպագիր մյուս օրգանների գործունեությունը դեռևս չի գտնվում այդ պահանջների բարձրության վրա։ «Սովետական Հայաստան» թերթի էջերում տակավին քիչ են մեր հասարակական-քաղաքական և սոցիալ-տնտեսական կյանքի կարևոր պրոբլեմներն արծարծող սկզբունքային, բովանդակալից նյութերը։ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1976 թ. հոկտեմբերյան պլենումում նշվեցին «Կոմունիստ» թերթի գործունեության մեջ կատարված դրական փոփոխությունները։ Թերթը հետաքրքիր ձևերով է լուսաբանում նաև ՍՄԿԿ Կենտկոմի սույն որոշումը։ Սակայն նրա էջերում վերջին ժամանակներս թուլացել է մարտունակությունը, ստեղծագործական որոնումների ոգին։

Հանրապետության մամուլի առաջատար օրգանների խմբագրությունները պետք է բարձրացնեն աշխատողների պատասխանատվությունը հանձնարարված գործի համար, հետևողականորեն հասնեն նրանց գաղափարական ու պրոֆեսիոնալ մակարդակի բարձրացման։ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջների իրականացումը առաջ է քաշում նաև մամուլի քաղաքային և շրջանային օրգանների աշխատանքի որակական բարելավման անհրաժեշտությունը։

Հանրապետության հեռուստատեսության և ռադիոհաղորդումների պետական կոմիտեի, գաղափարական այդ կարևոր օրգանի ստեղծագործական կո-



լեկտիվները վերջերս ավելի լրիվ ու ավելի լայնորեն են լուսաբանում մեր կյանքի տարբեր կողմերը, աշխատավորների կոմունիստական դաստիարակության պրոբլեմները։ Սակայն նրանց գործունեության մեջ (ընկ. Ս. Պողոսյան) դեռևս կան թերություններ։ Խոսքը վերաբերում է ամենից առաջ առանձին հաղորդումների ցածր որակին, դրանց դաստիարակչական թույլ պոտենցիալին։ Մեր հեռուստատեսությունը պետք է հասնի այն բանին, որ ամեն մի հաղորդում ակտիվորեն ներգործի մարդկանց վրա, նրանց հոգում արթնացնի ազնիվ մտքեր ու զգացմունքներ, ձևավորի գաղափարախոսական, բարոյական, գեղագիտական վեհ սկզբունքներ։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ շեշտվում է, որ գաղափարադաստիարակչական աշխատանքի առջև կուսակցության կողմից դրվող խնդիրների հետ անհամատեղելի են մեր հասարակական կյանքի հրատապ հարցերը հրապարակային քննարկման դնելու՝ դեռևս հանդիպող երկչոտությունը, չլուծված պրոբլեմները, սուր հարցերը համահարթելու, դրանք շրջանցելու, ռեալ կյանքում գոյություն ունեցող թերություններն ու դժվարությունները լռության մատնելու միտումը։

Անհրաժեշտ է մամուլում, հեռուստատեսությամբ և ռադիոյով սիստեմատիկաբար ու նպատակասլաց կերպով պայքար մղել, մեղանում եղած թերությունները վերացնելու համար, նպաստել սկզբունքային բացահայտ կոնստրուկտիվ և գործնական քննադատության և ինքնաքննադատության զարգացմանը։ Մամուլի ելույթների հասարակական ծանրակշռության և փաստարկվածության, մարտականության և ներգործունության ուժեղացման նկատմամբ հոգածությամբ պետք է տոգորվեն թե՛ խմբագրությունների կոլեկտիվները, թե՛ համապատասխան կուսակցական կոմիտեները։ Մամուլի ելույթներն անտեսելու, քննադատությունը լռության մատնելու և դրա համար հետապնդելու փաստերը կուսակցական կոմիտեները, նրանց հետ նաև պետական, սովետական մարմինները, տնտեսական կազմակերպությունները պետք է համարեն մեր կյանքի լենինյան նորմերի խախտում։

Շատ բան պետք է անի նաև Հայաստանի ժուռնալիստների միությունը, որը կոչված է ավելի մտածված, համակարգված կազմակերպելու կադրերի ուսուցումը, նրանց մասնագիտացումը, ակտիվացնելու ստեղծագործական կյանքը, կարգավորելու աշխատանքի փորձի ուսումնասիրումը, ավելի հաճախակի կազմակերպելու ստեղծագործական մրցույթներ։

Վերջին տարիները նշվեցին գրահրատարակչական գործի հետագա զարգացմամբ։ Գաղափարախոսական աշխատանքի հետագա բարելավման՝ կուսակցության առաջ քաշած խնդրի իրականացման ասպարեզում նրա հարաճուն դերը պահանջում է առավել բարձրացնել լույսընծայվող գրականության գաղափարատեսական, գեղարվեստական և պոլիգրաֆիական մակարդակը։

Հանրապետության Հրատպետկոմի (ընկ. Ս. Բաղդասարյան) և նրա ստորաբաժանումների գործունեության մեջ լուրջ թերություններ կան։ Թեմատիկ պլանները մշակելիս առանձին դեպքերում կուսակցական պատշաճ սկզբունքայնություն և խստություն չի ցուցաբերվում ձեռագրերի ընտրության գործում։ Դրանով է առաջին հերթին բացատրվում որոշ գրքերի լույսընծայումը, որոնք իրենց գաղափարախոսական, գիտական և գեղարվեստական մակարդակով չեն համապատասխանում ընթերցողների հոգևոր հարաճուն պահանջմունքներին։ Անհրաժեշտ է նաև բարձրացնել ամբողջ մասսայական գրականության, հատկապես դպրոցական դասագրքերի, երեխաների համար հրատարակվող գրականության պոլիգրաֆիական մակարդակը։

Աշխատավորների դաստիարակության զորեղ միջոցներ են, նշում է զեկուցողը, գիտությունն ու կուլտուրան։

Իրականացնելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները՝ մեր հասարակագետները վերջին տարիներին զգալի աշխատանք են կատարել աշխատավորների կոմունիստական դաստիարակության պրոբլեմների մշակման, սովետական ապրելակերպի կազմավորման պրոցեսի, հանրապետության մի շարք շրջանների և ձեռնարկությունների սոցիալ-տնտեսական զարգացման հետազոտման ուղղությամբ, ակտիվ մասնակցել են մարքսիզմ-լենինիզմի գաղափար-

ների, ՍՄԿԿ-ի և սովետական պետության ներքին ու արտաքին քաղաքականության պրոպագանդմանը։ Գիտնականների ուշադրության կենտրոնում են մնում Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հաղթանակի և Հայաստանում սովետական իշխանության հաստատման պատմության ուսումնասիրման հարցերը, զարգացած սոցիալիզմի պրոբլեմները։ Հետազոտական աշխատանքում նկատելի տեղ են գրավում սովետական ժողովուրդների ինտերնացիոնալ եղբայրության և միասնության հարցերը։ Լույս են ընծայվել գրքեր և փաստաթղթերի ու նյութերի ժողովածուներ հայ և ռուս ժողովուրդների դարավոր բարեկամության և կապերի մասին։

Դրա հետ մեկտեղ հարկ է ասել, որ չնայած հետազոտական աշխատանքում մանրաթեմայնությունը հաղթահարելու ուղղությամբ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1976 թ. հոկտեմբերյան պլենումում եղած քննադատությունից հետո ձեռնարկված որոշակի քայլերին, այնուամենայնիվ, երևան են գալիս աշխատություններ, որոնց գործնական պիտանիությունը մեծ չէ, ինստիտուտների և բուհերի ամբիոնների հետազոտությունների պլաններում կան ոչ հրատապ, փոքրանշանակ պրոբլեմներ։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը հասարակագետների ուշադրությունն է հրավիրում մարքս-լենինյան տեսության հրատապ պրոբլեմների մշակումը բարելավելու, հասուն սոցիալիզմի հասարակության հետագա զարգացման օրինաչափությունները, սովետական ապրելակերպի էությունն ու հիմնական հատկանիշները բացահայտելու, մեր հասարակության մեջ կուսակցության ղեկավար դերը ցույց տալու վրա։ Հետազոտությունների խնդիրներից մեկը պետք է լինի քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա կատարելագործման գիտականորեն հիմնավորված հանձնարարականների մշակումը։

Կենսագործելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները՝ հայ գրականության և արվեստի գործիչներն ստեղծել են ոչ քիչ գործեր, որոնք մեծ արտահայտչականությամբ պատկերում են սովետական մարդու հոգևոր հարստությունը, նրա հերոսական գործերն ու աշխատանքային առօրյան, Սովետական Հայաստանի աշխատավորների նվաճումները։ Վերջին ժամանակվա լավագույն ստեղծագործությունների թվում կան գրական և երաժշտական գործեր, կինոնկարներ, թատերական բեմադրություններ, գեղանկարչական և քանդակագործական աշխատանքներ, որոնք նվիրված են մեծ Հոկտեմբերի 60-ամյակին, հայրենիքին, կուսակցությանը, մեծ Լենինին, Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակին։

Ստեղծագործական միությունները ու կազմակերպությունները համապատասխան հետևություններ են արել ՍՄԿԿ Կենտկոմի որոշումներից, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1976 թվականի հոկտեմբերյան պլենումի ցուցումներից, կոնկրետ քայլեր են ձեռնարկել դրանց իրականացման նպատակով։ Սակայն պետք է ասել, որ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշված թերությունները առկա են նաև մեր հանրապետության գրականության և արվեստի հիմնարկությունների աշխատանքում։ Դեռևս լույս աշխարհ են գալիս գաղափարական և գեղարվեստական ցածր մակարդակ ունեցող գրքեր, կտավներ, կինոնկարներ, բեմադրություններ, համերգային ծրագրեր։ Մեզանում առայժմ քիչ են այն ստեղծագործությունները, որոնք մասշտաբայնորեն, խորապես, տաղանդավոր կերպով արտացոլեն հանրապետության աշխատավորների, սովետական մարդու հերոսական գործերը, նրանց հարուստ ներաշխարհը։

Հայաստանի գրողների միությունը (ընկ. Վ. Պետրոսյան) և նրա կուսակցական կազմակերպությունը պետք է հանրապետության գրական ուժերը նպատակամղեն խոշոր մասշտաբի ստեղծագործությունների կերտմանը, դրանցում կոմունիզմ կառուցողի կերպարի ստեղծմանը, ժողովրդի այսօրվա մեծագործությունների լիարյուն արտացոլմանը։ Հարկավոր է այսուհետ ևս զարգացնել միության գործունեության մեջ վերջին տարիներին նկատվող դրական կողմերը։ Անհրաժեշտ է մեծ հոգատարություն ցուցաբերել երիտասարդ գրողների գաղափարաստեղծագործական աճի նկատմամբ, նրանց դաստիարակել սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով, պատվաստել իրենց բարձր կոչման պատասխանատվության զգացում։



Վերջին ժամանակներս հանրապետության թատրոններում հայրենական և համաշխարհային դասական երկերի, սովետական հեղինակների պիեսների հիման վրա ստեղծվել են մի շարք նոր հետաքրքրական ներկայացումներ։ Ինչպես ցույց է տալիս փորձը, հանդիսատեսների մեջ առանձնապես ջերմ արձագանք են գտնում ժամանակակից կյանքի մեծ ու հրատապ պրոբլեմները շոշափող ներկայացումները։ Բայց, ցավոք, մեր թատրոններում այդպիսի բեմադրություններն առայժմ քիչ են։ Փոխանակ լրջորեն զբաղվելու ժամանակակից բարձր գաղափարային խաղացանկ ձևավորելու հարցերով, որոշ թատրոններ տարվում են խստապահանջ ճաշակի համար նկատի առնված զվարճացուցիչ պիեսներով։

Չնայած ձեռք բերվածին և հետաքրքրական մի քանի ֆիլմերի ստեղծմանը, հայկական կինեմատոգրաֆիայի զարգացման մակարդակը դեռևս ետ է մնում արդի պահանջներից։ Մեր կինոստուդիաների բազմաթիվ ֆիլմերից կարելի է առանձնացնել միայն մի քանի նկարներ, որոնք արժանի կերպով են մարմնավորում մեր ժամանակը, սովետական մարդու կերպարը։ Կինոէկրաններին և հեռուստատեսային էկրաններին երևացող վավերագրական ժապավեններում դեռևս բազմակողմանի, տպավորիչ և օպերատիվ արտացոլում չեն գտնում հանրապետության կյանքի խոշոր երևույթները։ Հայ կինեմատոգրաֆիստները պետք է առանձնապես շատ բան անեն ժամանակակից թեմատիկան խոր կերպով յուրացնելու համար։

Երաժշտական տաղանդավոր ստեղծագործությունների հետ մեկտեղ մեզանում երևան են գալիս նաև միջակ, անարտահայտիչ գործեր։ Հայաստանի կոմպոզիտորների միության ղեկավարությունը (ընկ. Է. Միրզոյան) պետք է առավել արդյունավետությամբ աշխատի մեր կոմպոզիտորների ստեղծագործական ջանքերի ակտիվացման ուղղությամբ։ Նրանց գործերում միշտ չէ, որ բավականաչափ վառ ու համակողմանի արտացոլվում է ժամանակակից կյանքը։ Տակավին չի լուծված քաղաքական երգի ստեղծման պրոբլեմը։

Մեր կերպարվեստի գաղափարագեղագիտական բարձր մակարդակը ցուցադրեցին «Փառք աշխատանքին», «Հայրենի երկրում», «Մեծ Հոկտեմբերի 60-ամյակը», «Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակը» ցուցահանդեսները։ Հանրապետության գեղարվեստական կյանքում հետաքրքրական երևույթ դարձավ Հայաստանում առաջին անգամ կազմակերպված՝ քաղաքական պլակատի ցուցահանդեսը։ Դրա հետ մեկտեղ հարկ է ասել, որ նկարիչների միության գործունեությունը (ընկ. Ս. Սաֆարյան) միշտ չէ, որ բավարար չափով է նպաստում այն բանին, որ մեր վարպետ նկարիչները և հատկապես երիտասարդ նկարիչներն ստեղծեն նշանակալի, խոր բովանդակությամբ և մտահղացման մասշտաբայնությամբ աչքի ընկնող կտավներ և քանդակներ։

Գեղարվեստական կուլտուրայի մակարդակի, աշխատավորների գաղափարաբարոյական դաստիարակության գործում գրականության և արվեստի դերի մշտական բարձրացմանը պետք է ծառայի գրական-գեղարվեստական քննադատությունը։ Գրականության և արվեստի զարգացման, սոցիալիստական ազգերի կուլտուրաների փոխհարստացման և մերձեցման պրոցեսները վերլուծելու, արվեստի և գրականության հարաբերակցության մեջ խորապես թափանցելու հետ մեկտեղ, քննադատությունը կոչված է գաղափարական ու գեղարվեստական բարձր չափանիշներով դաստիարակելու, մի կողմից՝ ընթերցողին, հանդիսատեսին, իսկ մյուս կողմից՝ բուն ստեղծագործական աշխատողներին, կուսակցական պահանջկոտությունը, սկզբունքայնությունը զուգակցելով բարյացակամության և զգայուն վերաբերմունքի հետ։ Մեր ստեղծագործական միությունների, մամուլի օրգանների, կուսակցական կազմակերպությունների խնդիրը պետք է դառնա է՛լ ավելի բարձրացնել քննադատության մարտականությունը, ուժեղացնել կուսակցական ազդեցությունը ստեղծագործական պրոցեսի վրա։

Չնայած հանրապետության աշխատավորների կուլտուրական-գեղարվեստական սպասարկման գործում կատարված որոշ տեղաշարժերին, այդ բնագավառում դեռևս էական թերություններ կան։ Կուլտուրայի մինիստրությունը (ընկ. Ռ. Պարսամյան), Հայաստանի կոմկուսի քաղկոմներն ու շրջկոմները,

ստեղծագործական միությունները լրիվ չեն օգտագործում եղած միջոցներն ու հնարավորությունները աշխատավորների կուլտուրական ժամանցն ավելի լավ կազմակերպելու, նրանց գեղարվեստական ճաշակը ձևավորելու, գեղագիտական մտահորիզոնն ընդլայնելու համար։

Մենք պարտավոր ենք ամենասևեռուն ուշադրություն դարձնել կուլտուրլուսավորական հիմնարկների՝ գաղափարագեղագիտական դաստիարակության այդ կարևոր օջախների, գործունեության բարելավմանը։ Վերջին ժամանակներս մենք բազմիցս քննարկել ենք մասսայական-քաղաքական և դաստիարակչական աշխատանքում հիմնարկությունների դերի բարձրացման հարցը։ Սակայն, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, կուսակցության քաղկոմներն ու շրջկոմները, ՀԱՄԽ-ը, կուլտուրայի մինիստրությունը տակավին բավարար արդյունավետությամբ չեն օգտագործում հատկապես ակումբները՝ ամբողջ դաստիարակչական գործի հետագա բարելավման նպատակով։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը մի շարք միջոցառումներ է նախատեսում՝ ընդլայնելու գաղափարախոսական աշխատանքի նյութական բազան և բարելավելու եղածի օգտագործումը։ Անհրաժեշտ է մեր քաղլուսկաբինետները, ակումբները, մասսաների հետ քաղաքական աշխատանքի բոլոր օջախները հագեցնել նոր սարքավորումներով, տեխնիկական միջոցներով, դիտողական նյութերով։ Հարկավոր է բարձր որակով կատարել հեռուստատեսության ու ռադիոյի բազայի ընդլայնման նպատակով նախատեսված միջոցառումները, տպարանների, համերգային սրահների, կուլտուրայի տների, սպորտային հիմնարկների՝ պլանով նախատեսված կառուցումները։

Կուսակցական և սովետական մարմինները պետք է ամեն ինչ անեն, որպեսզի առավելագույն փոխհատուցմամբ, անկախ գերատեսչական պատկանելությունից, օգտագործվեն հանրապետությունում եղած պրոպագանդայի և կուլտուրայի բոլոր օջախները, դրանք դարձվեն աշխատավորների գաղափարագեղագիտական դաստիարակության իսկական հենակետեր։

«Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նոր ուժով է արտահայտված սովետական յուրաքանչյուր մարդու մեջ բարձր գիտակցականություն, կոմունիզմ կառուցելու պատրաստակամություն, կամք ու հմտություն ձևավորելու վճռական նշանակությունը։

Մեր կուսակցական կազմակերպությունները, գաղափարախոսական ճակատի յուրաքանչյուր աշխատող չունեն առավել պատվավոր խնդիր և ավելի վեհ նպատակներ, քան, հենվելով մարքս-լենինյան ուսմունքի անխախտ հիմքին, սովետական ժողովրդին, յուրաքանչյուր նոր սերնդի զինել հասարակական կյանքի օրենքների ու հեռանկարների խոր իմացությամբ։ Իրականացնելով մեծ Լենինի պատգամները՝ կուսակցությունը լայն մասսաների կողմից գիտական կոմունիզմի խոր, գիտակցական ուսումնասիրումը զուգակցում է նրանց սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, հասարակական ակտիվության և քաղաքացիական պատասխանատվության ոգով դաստիարակելու հետ։

Վերջում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը պլենումի անունից ՍՄԿԿ Կենտկոմին հավաստիացնում է, որ հանրապետության կուսակցական կազմակերպությունները նպատակասլաց կազմակերպչական ու քաղաքական աշխատանք կծավալեն ՍՄԿԿ Կենտկոմի որոշման կատարման նպատակով, կապահովեն գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական գործունեության որակի և արդյունավետության բարձրացումը, է՛լ ավելի կզարգացնեն հանրապետության աշխատավորների քաղաքական ակտիվությունը և ստեղծագործական նախաձեռնությունը կուսակցության վիթխարի կանխագծումների, կոմունիստական շինարարության խնդիրների իրականացման համար մղվող պայքարում։



# ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄՆ ՈՒ ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԻ ՀԱՏԿԱՆԻՇՆԵՐՆ ԵՆ

**Ի. Պ. ԾԱՄԵՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր,
պրոֆեսոր

ՄԵՐ ՀԱՍՈՒՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ հասարակությունում հաստատվել է նրան հատուկ սովետական սոցիալիստական ապրելակերպ, որը բնութագրվում է սովետական մարդկանց կենսագործունեության կարևորագույն առանձնահատկություններով ու հատկանիշներով։ Սոցիալիստական արտադրեղանակի, նոր հասարակական-քաղաքական կարգի ստեղծումը և դրանց վրա խարսխվող նոր մարդու՝ կոմունիզմի ակտիվ կառուցողի, ձևավորումը սովետական ապրելակերպի ամրապնդման ու զարգացման գլխավոր նախադրյալներն ու պայմաններն են։

ՍՄԿԿ XXV համագումարում Լ. Ի. Բրեժնևը համակողմանիորեն բնութագրեց սովետական ապրելակերպի հիմնական հատկանիշները. «Իսկական կոլեկտիվիզմի ու ընկերականության մթնոլորտ, երկրի բոլոր ազգերի ու ժողովուրդների համախմբվածություն, բարեկամություն, որոնք օրեցօր ամրապնդվում են, բարոյական առողջություն, որը մեզ դարձնում է զորեղ, տոկուն՝ այսպիսիք են մեր ապրելակերպի վառ կողմերը, այսպիսիք են սոցիալիզմի մեծ նվաճումները, որոնք դարձել են մեր իրականության ուղն ու ծուծը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 131)։

Մեր երկրի բոլոր ժողովուրդների ամուր, անսասան բարեկամությունն ու համախմբվածությունը սովետական մարդկանց սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության, նրանց ապրելակերպի կոնկրետ արտահայտություններն են։

Սովետական ապրելակերպի ինտերնացիոնալիզմը դրսևորվում է պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարներով ներթափանցված սովետական մարդկանց ողջ կենսագործունեության մեջ։ Դա բացատրվում է նրանով, որ սոցիալիստական հասարակարգն իր իսկ բնույթով ինտերնացիոնալիստական է։

Սոցիալիզմի ինտերնացիոնալիստական էությունն ամենից առաջ արտահայտվում է հենց նրանում, որ այն հասարակության զարգացման պատմականորեն անհրաժեշտ, օրինաչափ աստիճան է։ Ու՛չ սոցիալիստական աշխարհի բոլոր երկրներն ու ժողովուրդներն անխուսափելիորեն կանցնեն սոցիալիստական՝ կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի ստորին փուլը։ Երկրորդ, սոցիալիզմն ինտերնացիոնալիստական է այն առումով, որ նրա զարգացման հիմնական հատկանիշներն ու օրինաչափություններն ընդհանուր են սոցիալիզմի ուղին թևակոխած բոլոր երկրների ու ազգությունների համար։ Այդ հիմնական հատկանիշներն ու օրինաչափություններն արտահայտ-

վում են հասարակական կյանքի բոլոր ոլորտներում՝ էկոնոմիկայում, քաղաքական կարգում, կուլտուրայում և գաղափարախոսությունում։

Իհարկե, սոցիալիստական հասարակարգը սոցիալիզմի ամեն մի երկրում ունի իր առանձնահատկությունները, յուրօրինակությունները։ Բայց դրանք չեն բացառում ընդհանուր հատկանիշների ու օրինաչափությունների առկայությունը, այլ ներկայացնում են սոսկ վերջիններիս կոնկրետ դրսևորումն այդ երկրներից յուրաքանչյուրում՝ դրանց կյանքի պատմական, տնտեսական, ազգային և այլ պայմաններին համապատասխան։ Ռևիզիոնիզմի, կոմունիզմի ռենեգատների և հակակոմունիզմի բացահայտ գաղափարախոսների պրոպագանդած «սոցիալիզմի մոդելների», «ազգային կոմունիզմի» բազմակիության ամեն տեսակի կոնցեպցիաների հակագիտական և ռեակցիոն էությունը մերկացված է ինչպես տեսականորեն, այնպես էլ համաշխարհային սոցիալիստական համագործակցության երկրների գործնական փորձով։ **Երրորդ**, սոցիալիզմի ինտերնացիոնալիզմն արտահայտվում է նրանում, որ ազգային փոխհարաբերություններում այն բոլոր ազգությունների սովետական մարդկանց, բոլոր սոցիալիստական ազգերի ու ազգությունների ինտերնացիոնալիստական հատկանիշների ձևավորման ու զարգացման կայուն հիմքն է։ Այստեղ վճռական դեր է խաղում սոցիալիզմի տնտեսական բազան՝ արտադրամիջոցների նկատմամբ հասարակական սեփականության վրա հիմնված արտադրաեղանակը, արտադրահարաբերությունները։ Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում արտադրամիջոցների նկատմամբ հասարակական սեփականության հաստատման շնորհիվ բոլոր ազգությունների աշխատավորների շրջանում ծագել ու ամրապնդվել են հասարակական արտադրության զարգացմանը հետամուտ ընդհանուր շահեր, որոնք դարձել են մեր երկրի բոլոր դասակարգերի ու սոցիալական խմբերի, բոլոր ազգերի ու ազգությունների շահերը համատեղելու կարևոր գործոն։ Շահերի այս ընդհանրությամբ էլ պայմանավորված են արտադրության պրոցեսում բոլոր աշխատավորների միջև ստեղծված կոլեկտիվիզմի հարաբերությունները, որոնք արդեն ազգային հարաբերությունների ոլորտում ստանում են ինտերնացիոնալիզմի, եղբայրական օգնության, ժողովուրդների միջև համագործակցության ու փոխօգնության բնույթ։ «Եթե մասնավոր սեփականությունը և կապիտալը անխուսափելիորեն մարդկանց անջատում են միմյանցից, բորբոքում ազգային երկպառակություն և ուժեղացնում ազգային ճնշումը, ապա կոլեկտիվ սեփականությունն ու աշխատանքը նույնքան անխուսափելիորեն մոտեցնում են մարդկանց, խարխլում ազգային երկպառակությունը և ոչնչացնում ազգային ճնշումը»,— նշված է դեռևս ՌԿ(բ)Կ X համագումարում ընդունված «Կուսակցության հերթական խնդիրները ազգային հարցում» բանաձևում (ՍՄԿԿ-ի համագումարների, կոնֆերանսների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում, հ. I, էջ 709)։

Սոցիալիզմի տնտեսական հիմքը հասարակական կյանքի բոլոր բնագավառներում, սոցիալիստական հասարակության գաղափարախոսությունում և մարդկանց վարքագծում, նրանց ապրելակերպում ստեղծում է օբյեկտիվ, իրական հնարավորություններ՝ ինտերնացիոնալիստական հատկանիշների ձևավորման ու զարգացման համար։ Այն ամեն կերպ նպաստում է ազգային հարաբերություններում պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարների մարմնավորմանը։ Բայց այդ ռեալ հնարավորությունը բուն իրականության վերածելու համար անհրաժեշտ է սոցիալիստական բազիսին համապատասխան վերնաշենք՝ մարքս-լենինյան տեսությամբ զինված կոմունիստական կուսակցության ղեկավարած սոցիալիստական պետություն։

Ինտերնացիոնալիզմը պրոլետարիատի գաղափարախոսությունը, քաղաքականությունն ու աշխարհայացքն է ազգային հարցում, ազգային հարաբերությունների բնագավառում։ Դրան հակոտնյա են բուրժուազիայի ազգայնական գաղափարախոսությունը, քաղաքականությունն ու աշխարհայացքը։ Բուրժուական նացիոնալիզմ և պրոլետարական ինտերնացիոնալիզմ՝ ահա երկու անհաշտելիորեն թշնամական լոզունգներ,— գրել է Վ. Ի. Լենինը,— որ համապատասխանում են ամբողջ կապիտալիստական աշխարհի երկու մեծ դասակարգային լագերներին և արտահայտում **Երկու** քաղաքականություն (ավելին՝



երկու աշխարհայեցողություն ազգային հարցում) (տե՛ս Երկեր, հ. 20, էջ 13)։ Բանվոր դասակարգի արմատական շահերի ու նպատակների ընդհանրությունը պահանջում է միավորել բոլոր երկրների, բոլոր ազգությունների պրոլետարներին՝ կապիտալիզմը կործանելու, հասարակությունը հեղափոխականորեն վերափոխելու, սոցիալիզմի ու կոմունիզմի հաղթանակն ապահովելու համար։

Մարքսիզմ-լենինիզմն ապացուցել է, իսկ բանվոր դասակարգի հեղափոխական պայքարի, ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման համաշխարհային պատմական պրակտիկան և սոցիալիզմի երկրների փորձը հաստատել, թե չի կարող ազատ լինել այն ժողովուրդը, որը ճնշում է ուրիշ ժողովուրդների։

Որո՞նք են պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքները։

Դրանք են՝ իրենց նպատակներին հասնելու համար մղվող պայքարում բոլոր երկրների ու ազգությունների բանվորների համերաշխությունը, միասնությունը, եղբայրական միությունն ու փոխօգնությունը.

բոլոր ազգերի ու ժողովուրդների հավասարությունը, սուվերենությունը, ինքնորոշման ու ազատ զարգանալու իրավունքը ճանաչելը.

միջազգային պրոլետարիատի նկատմամբ ինտերնացիոնալ պարտքի, ինտերնացիոնալ պարտականությունների հարցում յուրաքանչյուր երկրի ու ազգության բանվոր դասակարգի հավատարմությունը.

ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի, բոլոր հակաիմպերիալիստական առաջադեմ շարժումների նկատմամբ (պայքարը հանուն դեմոկրատական ազատությունների, հանուն խաղաղության) բանվոր դասակարգի համերաշխությունն ու միասնությունը.

պրոլետարիատի ինտերնացիոնալ և ազգային շահերի ու խնդիրների միասնությունը, ազգայինը բոլոր երկրների բանվորների ընդհանուր շահերին ու խնդիրներին ենթարկելը։

Այս սկզբունքներն իրոք պրոլետարական ինտերնացիոնալիզմի անխախտ հիմքն են այն առումով, որ սրանցից թեկուզ որևէ մեկից հրաժարվելն անխուսափելիորեն կհանգեցնի պրոլետարական ինտերնացիոնալիզմը խեղաթյուրելուն և, վերջին հաշվով, դրանից հեռանալուն։ Սակայն այս սկզբունքներն անփոփոխ չեն։ Սրանք զարգանում և հարստանում են պրոլետարիատի դասակարգային պայքարին, այդ պայքարում ձեռք բերված հաջողություններին, նոր ծագած խնդիրներին զուգընթաց։

Պայմանավորված լինելով ազգերի և ազգային տարբերությունների գոյությամբ, պրոլետարական ինտերնացիոնալիզմը չի սահմանափակվում միայն ազգային փոխհարաբերությունների ոլորտով։

ՍՍՀՄ-ում սոցիալիզմի հաղթանակի շնորհիվ ընդարձակվել է ինտերնացիոնալիզմի սոցիալական բազան. մեր հասարակության բոլոր դասակարգերն ու սոցիալական խմբերը պաշտպանում են բանվոր դասակարգի գաղափարախոսությունն ու քաղաքականությունը։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմը վերափոխվել է սոցիալիստականի, ամբողջ սովետական ժողովրդի գաղափարախոսության։ Ընդ որում, ինտերնացիոնալիզմի գաղափարական բովանդակությունը, դրա սկզբունքները հարստացել են հասարակության կյանքի նոր՝ սոցիալիստական պայմաններին համապատասխան։ Սոցիալիզմի համաշխարհային սիստեմի առաջանալուց հետո սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարներն ու սկզբունքներն առավել հարստանում ու զարգանում են։

Հասուն սոցիալիստական հասարակարգում կոնկրետ ինչպե՞ս են զարգանում ինտերնացիոնալիզմի գաղափարներն ու սկզբունքները, և ինչպե՞ս են դրանք դրսևորվում սովետական ապրելակերպում։

Բանվորների պրոլետարական համերաշխության, միասնության ու եղբայրական միության սկզբունքը վերաճում է սովետական սոցիալիստական բոլոր ազգերի ու ազգությունների եղբայրական բարեկամության, նրանց սերտ համագործակցության ու փոխօգնության, նոր պատմական հանրության՝ սովետական ժողովրդի ինտերնացիոնալ համախմբվածության։

Բոլոր ազգությունների սովետական մարդկանց բարեկամությունը, փոխօգնությունն ու ինտերնացիոնալ միասնությունը սովետական ապրելակերպի

հիանալի հատկություններից են։ Դրանք արտահայտվում են նրանց կենսագործունեության բոլոր ոլորտներում՝ աշխատանքում ու կենցաղում, գիտակցության մեջ ու վարքագծում։

Պատմության մեջ առաջին անգամ մեր երկրում է, որ հաստատվել են բոլոր ժողովուրդների, ազգերի ու ազգությունների իսկական իրավահավասարություն և փաստական հավասարություն։ Դրան հասել ենք թույլ զարգացած ժողովուրդներին ռուս բանվոր դասակարգի, ռուս մեծ ժողովրդի համակողմանի, անշահախնդիր օգնության շնորհիվ, որն արագացրել է նրանց տնտեսական, քաղաքական ու կուլտուրական զարգացումը, վերացրել հետամնացությունը։ Այդ դժվարագույն սոցիալական պրոբլեմի լուծմանը՝ ժողովուրդների փաստական անհավասարության վերացմանը, մեծապես նպաստել են սովետական ազգային պետականության ստեղծումն ու միավորումը բազմազգ միասնական պետության՝ Սովետական Միության մեջ։

ՍՍՀՄ ստեղծումը արգասալի եղավ համապետական մասշտաբով թույլ զարգացած ժողովուրդներին օգնություն կազմակերպելու, պատմական կարճ ժամանակահատվածում նրանց հետամնացությունը վերացնելու և երկրի բոլոր ժողովուրդների փաստական հավասարությունն ապահովելու գործում։ ՍՍՀՄ-ն իր այդ դերը կարողացավ կատարել շնորհիվ այն բանի, որ նրա բուն կառուցվածքում ու գործունեությունում մարմնավորված են սոցիալիստական ֆեդերացիայի և ինտերնացիոնալիզմի լենինյան սկզբունքները։

ՍՍՀՄ-ում ո՛չ միայն բանվոր դասակարգը, այլև կոլտնտեսային գյուղացիությունն ու սովետական մտավորականությունը, ամբողջ բազմազգ սովետական ժողովուրդն իր ինտերնացիոնալ պարտքն ու սրբազան պարտականությունն է համարում դասակարգային պայքարում համակողմանիորեն աջակցել, օգնել կապիտալիստական երկրների պրոլետարներին, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժմանը։ ՍՄԿԿ ծրագրում նշված է. «Կուսակցությունը ՍՍՀՄ-ում կոմունիստական շինարարությունը դիտում է որպես սովետական ժողովրդի ինտերնացիոնալ մեծ խնդիր, որը համապատասխանում է ամբողջ համաշխարհային սոցիալիստական սիստեմի շահերին, միջազգային պրոլետարիատի, բովանդակ մարդկության շահերին» (ՍՄԿԿ ծրագիրը, էջ 7)։

Ազգային ազատագրության և սոցիալական առաջընթացի համար ժողովուրդների մղած պայքարին սովետական պետության աջակցության անհրաժեշտությունն օրենսդրորեն ամրապնդվել է ՍՍՀՄ Սահմանադրությունում։

Այսպիսով, ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման, բոլոր առաջադիմական, հակաիմպերիալիստական շարժումների հանդեպ պրոլետարիատի համերաշխության սկզբունքը հարստացել է նոր գաղափարներով ու դրույթներով, այն է՝ իրենց անկախության ու ազատության համար պայքարող ժողովուրդների, սոցիալական առաջընթացին նպաստող բոլոր ուժերի, իրենց հետամնացությունը վերացնել ձգտող ժողովուրդների ու երկրների նկատմամբ սովետական բազմազգ ժողովրդի, նրա սոցիալիստական պետության համերաշխության և բազմակողմանի օգնության գաղափարներով ու դրույթներով։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմը սոցիալիստական ինտերնացիոնալիզմի փոխակերպվելու, վերաճելու ընթացքը ցույց է տալիս, որ դրանց միջև սկզբունքային տարբերություններ չկան։ Դրանք նույնական են իրենց դասակարգային, սոցիալական բնույթով և գաղափարաքաղաքական էությամբ։ Սոցիալիստական ինտերնացիոնալիզմի գաղափարներն ու սկզբունքները, ինչպես արդեն նշվեց, սովետական երկրում իրականացվել են և դրանցով է բնութագրվում սովետական սոցիալիստական ապրելակերպի ինտերնացիոնալիզմը։ Դրանք իրավականորեն արտահայտված են ՍՍՀՄ Սահմանադրության մեջ։

Սովետական ապրելակերպի ինտերնացիոնալ բնույթը ակներևաբար արտահայտվում է այն սերտ եղբայրական համագործակցությամբ ու փոխօգնությամբ (իսկ շատ հաճախ էլ՝ անշահախնդիր միակողմանի օգնությամբ), որ բոլոր ժողովուրդների և սովետական հանրապետությունների տնտեսական



ու սոցիալական զարգացման բազմակողմանի պրոցեսում միմյանց նկատմամբ դրսևորում են մեր երկրի տարբեր ազգությունների ներկայացուցիչները։

Սովետական մարդկանց ինտերնացիոնալիզմի վառ արտահայտությունն են սոցիալիստական համագործակցության երկրների աշխատավորների հետ նրանց ունեցած եղբայրական կապերը, ընկերակցությունն ու փոխօգնությունը։ Սովետական մարդիկ ինտերնացիոնալիզմի հիանալի օրինակներ են ցույց տալիս բազմաթիվ արտասահմանյան երկրներում, որտեղ նրանք նպաստում են նոր կյանքի կառուցմանը։ Լ. Ի. Բրեժնևն այդ առթիվ լենինյան կոմերիտմիության XVIII համագումարում ասաց. «Եվրոպայի սոցիալիստական երկրներում և հեռավոր Կուբայում, Սահարայի տաք ավազուտներում և Հարավ-Արևելյան Ասիայի ջունգլիներում, Հնդկաստանում և արաբական արևելքում, մոլորակի ամենատարբեր շրջաններում մեր երկրի հազարավոր որդիներ ու դուստրեր կատարում են իրենց ազնիվ հերթափոխը՝ կառուցում են գործարաններ և էլեկտրակայաններ, օգնում են հայտնաբերելու բնության գանձերը, բուժում են հիվանդներին և սովորեցնում երեխաներին։ Հաճախ նրանց աշխատանքն առանց աղմուկի և ազդարարման իսկական, անշահախնդիր, անձնվեր սխրանք է»։

Ինտերնացիոնալիզմը, որպես սովետական ապրելակերպի դրսևորում, չի ժխտում ազգին բնորոշ հատկանիշների ու առանձնահատկությունների առկայությունը սովետական մարդկանց ապրելակերպում։ Նրանց բոլորին բնորոշ է սոցիալիզմի էությամբ պայմանավորված ինտերնացիոնալիզմը։ Դրա շնորհիվ նրանք կազմում են միասնական բազմազգ սովետական ժողովուրդ, որը թե՛ սոցիալական, թե՛ ինտերնացիոնալիստական հատկանիշներով իրենից ներկայացնում է մարդկանց պատմական նոր հանրություն։ Այդ ինտերնացիոնալ հանրությունում ազգերից ու ազգություններից յուրաքանչյուրը անարգել զարգացնում է իր լեզուն ու ազգային սոցիալիստական մշակույթը, իր ավանդույթները, սովորույթները և այլն։

Սովետական մարդկանց ապրելակերպում ինտերնացիոնալիստական հատկանիշներն ու ազգային առանձնահատկությունները միմյանց չեն հակադրվում, այլ զարգանում են ներդաշնակ միասնության և փոխներգործության պայմաններում։ Այդ միասնությունում առաջատար դերը ինտերնացիոնալիստական հատկանիշներինն է, որովհետև դրանց աճով ու զարգացմամբ է պայմանավորված մեր երկրի ազգերի ու ազգությունների հարաճուն սերտ մերձեցման պրոցեսը։

Սովետական մարդկանց գիտակցության մեջ ու ապրելակերպում ինտերնացիոնալիստականի ու ազգայինի ներդաշնակ համադրման ու միասնության վառ մարմնացումն ու արտահայտությունն է սովետական հայրենասիրությունը։ Հայրենասիրությունը, ինչպես և պրոլետարական ինտերնացիոնալիզմը, դասակարգային բնույթ ունի։ Բայց հայրենասիրությունն առաջացել է պատմության ասպարեզում պրոլետարիատի հանդես գալուց շատ վաղ։ Հայրենասիրության էությունը կարճ կարելի է արտահայտել որպես իր հայրենիքի, իր ժողովրդի, լեզվի, մշակույթի և այլնի նկատմամբ եղած սիրո զգացմունք։ Վ. Ի. Լենինը հայրենասիրությունը բնութագրել է որպես անջատ հայրենիքների նկատմամբ դարերով ու հազարամյակներով ամրապնդված ամենախոր զգացմունքներից մեկը (տե՛ս **Երկեր**, հ. 28, էջ 227—228)։ Հայրենասիրության բովանդակությունը բոլոր ժամանակներում և բոլոր դասակարգերի համար անփոփոխ չի մնում։ Այն որոշվում է մարդկանց կյանքի սոցիալ-տնտեսական ու քաղաքական պայմաններով և նրանց դասակարգային շահերով։

Շահագործողական հասարակարգի պայմաններում ճնշված աշխատավոր դասակարգերի հայրենասիրությունը և տիրող, շահագործող դասակարգերի հայրենասիրությունը միմյանց հակադիր են։ Այսպես, կապիտալիստական հասարակարգում պրոլետարիատի հայրենասիրությունը և բուրժուազիայի հայրենասիրությունն արտահայտում են այդ հակամարտ դասակարգերի անհաշտելիորեն հակադիր շահերն ու գաղափարախոսությունները։ Բուրժուական հայրենասիրությունը, անխզելիորեն կապված լինելով նացիոնալիզմի գաղափարախոսության հետ, արտացոլում է բուրժուազիայի՝ կապիտալիստական

հասարակարգը և իր քաղաքական տիրապետությունը ամրապնդելու, հավերժացնելու ձգտումը: Պրոլետարիատի հայրենասիրությունը, իր ժողովրդի, լեզվի, ամեն մի կուլտուրական հասումի նկատմամբ նրա սերը արտահայտվում է առկա շահագործողական հասարակարգը կործանելու, բուրժուազիայի տիրապետությունը վերացնելու, պետական մեքենան ջարդելու, սոցիալական ու ազգային հակամարտություններից ազատ նոր, սոցիալիստական հասարակարգ ստեղծելու ձգտմամբ: Ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, պրոլետարիատին խորթ չէ ազգային հպարտության զգացումը: Նրա այդ հպարտությունն են կազմում իրոք պրոգրեսիվ և հեղափոխական հասումները, իր ժողովրդի նվաճումները, այն ամենը, ինչ օգնում, նպաստում է մարդկային հասարակության առաջընթացին, կապիտալիզմից սոցիալիզմին անցնելուն: Լենինը ռուս պրոլետարիատի ազգային հպարտության մասին գրել է. «Վելիկոռուսների ազգային հպարտության շահը (ծառայամտորեն չհասկացված) զուգադիպում է վելիկոռուս (և բոլոր այլ) պրոլետարների սոցիալիստական շահին» (Երկեր, հ. 21, էջ 122):

Հետևաբար, դեռևս կապիտալիստական հասարակարգի պայմաններում բանվոր դասակարգի հայրենասիրությունը զուգակցվում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարի հետ:

Սոցիալիստական հասարակության պայմաններում բանվոր դասակարգի հայրենասիրությունը վերաճում է սովետական, սոցիալիստական հայրենասիրության՝ սոցիալիստական հայրենիքի, ամբողջ սովետական ժողովրդի նկատմամբ սովետական մարդկանց՝ մեր երկրի բոլոր ազգությունների բանվորների, կոլտնտեսականների, ժողովրդական մտավորականության սիրուն և նվիրվածությանը:

Սովետական հայրենասիրությունն անխզելիորեն կապված է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի հետ. դրանք սովետական ապրելակերպի անքակտելի հատկանիշներն են: Սովետական յուրաքանչյուր ազգի և ազգության, յուրաքանչյուր հանրապետության տնտեսության ու մշակույթի զարգացման բոլոր հասումները ՍՍՀՄ ժողովուրդների ու հանրապետությունների համատեղ աշխատանքի արդյունքն են: Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակին նվիրված հանդիսավոր նիստում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, բնութագրելով կոմունիստական շինարարության բոլոր բնագավառներում հանրապետության հսկայական հասումները, ասաց. «Սովետական Հայաստանի աշխատավորները, ամբողջ հայ ժողովուրդը խորապես գիտակցում են, որ մեր հանրապետության այդ բոլոր նվաճումները ձեռք են բերվել հարազատ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, մեր մեծ հայրենիքի բոլոր ժողովուրդների և ազգությունների համատեղ պայքարով ու աշխատանքով, ՍՄԿԿ-ի գլխավոր գծի, նրա լենինյան իմաստուն ազգային քաղաքականության շնորհիվ, Սովետական Միության բոլոր ժողովուրդների, առաջին հերթին, ռուս մեծ ժողովրդի բարեկամության և անշահախնդիր օգնության շնորհիվ»: Մեր երկրի ժողովուրդների և հանրապետությունների եղբայրական համագործակցությամբ ու փոխօգնությամբ ստեղծվում են զարգացած սոցիալիստական հասարակության բոլոր նյութական ու հոգևոր արժեքները: Այդ հասարակության բուն էկոնոմիկան մի միասնական ժողովրդատնտեսական համալիր է, որի օրգանական մասն է յուրաքանչյուր սովետական հանրապետության տնտեսությունը:

Զարգացած սոցիալիստական հասարակությունում ձևավորվել է նաև սովետական բազմազգ ժողովրդի միասնական սոցիալիստական մշակույթը: Բնութագրելով այն, Լ. Ի. Բրեժնևը նշել է. «Այսօր մենք արդեն լիակատար իրավունքով կարող ենք ասել՝ մեր կուլտուրան սոցիալիստական է բովանդակությամբ, իր զարգացման գլխավոր ուղղությամբ, բազմազան է իր ազգային ձևերով և ինտերնացիոնալիստական է իր ոգով ու բնույթով: Այսպիսով, այն իրենից ներկայացնում է բոլոր ժողովուրդների կողմից ստեղծվող հոգևոր արժեքների համաձուլվածք» (Լենինյան կուրսով, հ. 4, էջ 80):

Սովետական հայրենասիրությունն ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմը, որպես սովետական ապրելակերպի հատկանիշներ, արտահայտված են սովետական մարդկանց կենսագործունեության ամենատարբեր բնագավառներում. դրանք դրսևորվում են, օրինակ, ԲԱՄ-ի և կոմունիզմի հարյուրավոր այլ կառույցների շինարարների հերոսական աշխատանքում: Այդ կառույցների աշխատանքային կոլեկտիվներում ներկայացված են մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների ներկայացուցիչները:



Սովետական հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը մարմնավորվել են սոցիալիստական մրցության մեջ: Տնտեսական և սոցիալական պլանների հաջող կատարման ու գերակատարման, արդյունաբերության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման համար ծավալվող մրցությունում դրսևորվում են ո՛չ միայն խոր հայրենասիրությունը, կոմունիստական շինարարությունում սովետական մարդկանց անձնական ներդրումը մեծացնելու ձգտումը, այլև տարբեր ազգության աշխատավորների ինտերնացիոնալ եղբայրության, նրանց փոխօգնության զգացմունքները: Սոցիալիստական մրցության առաջավորների փորձն ու հասումները փոխանցվում են մյուս բոլոր կոլեկտիվներին, դառնում կոմունիզմի կառուցումն արագացնող կարևոր գործոն:

Սովետական մարդկանց հոգեբանության, գիտակցության մեջ ազգային հպարտության հայրենասիրական զգացմունքները վերաճում են ողջ սովետական ժողովրդի, սովետական սոցիալիստական հայրենիքի նկատմամբ հպարտության համասովետական, ըստ էության, ինտերնացիոնալ զգացմունքների: Լ. Ի. Բրեժնևն այս նոր համասովետական հայրենասիրական զգացմունքը, որը միաձուլվում է ինտերնացիոնալիստականի հետ, անվանել է սովետական մարդու համազգային հպարտության զգացմունք: ՍՍՀՄ 50-ամյակի առթիվ զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշում է. «Սովետական մարդկանց խորթ և նողկալի են մի ժողովրդի նկատմամբ մյուսի գերազանցության պարծենկոտ միտքը և, մանավանդ, ազգային և ռասայական բացառիկության զառանցական գաղափարները: Սովետական մարդիկ ինտերնացիոնալիստներ են: Այդպես է նրանց դաստիարակում կուսակցությունը, այդպես է նրանց դաստիարակում մեր ամբողջ իրականությունը: Բայց սովետական մարդիկ, բոլոր սովետական մարդիկ, առանց ազգային պատկանելության կամ լեզվի տարբերության, հպարտանում են իրենց մեծ հայրենիքով՝ մարդկության պատմության մեջ նոր դարագլխի հռչակումով, հպարտանում են միլիոնների ոգեշունչ աշխատանքով, որոնք կոմունիստների առաջնորդությամբ կառուցել են նոր, իսկական արդարացի և ազատ հասարակարգ, որոնք ստեղծել են բազում ժողովուրդների եղբայրական անխախտ դաշինքը... Սովետական մարդու համազգային հպարտությունը վիթխարի, տարողունակ, իր բովանդակությամբ բազմահարուստ զգացում է: Նա մեր երկրի կազմի մեջ մտնող ժողովուրդներից ամեն մեկի ազգային բնական զգացումներից ավելի խորն է և ավելի լայն: Նա իր մեջ ներառել է այն ամեն լավագույնը, ինչ ստեղծված է միլիոնավոր ու միլիոնավոր սովետական մարդկանց աշխատանքով, խիզախությամբ, ստեղծագործական հանճարով» (Լենինյան կուրսով, հ. 4, էջ 135—136):

Դեպի կոմունիզմ տանող ուղին հարթ չէ և ոչ էլ զերծ խոչընդոտներից ու հակասություններից: Չխոսելով արդեն իմպերիալիստական պետությունների հակասովետական և հակակոմունիստական արտաքին քաղաքականության հետ կապված գործոնների մասին, բուն մեր հասուն սոցիալիստական հասարակության մեջ իսկ հակասություններ կան, կոմունիստական շինարարության պրոցեսում առաջանում են այս կամ այն դժվարությունները: Սակայն այդ հակասություններն անտագոնիստական բնույթի չեն և հաղթահարվում են կոմունիստական շինարարության ընթացքում:

XXV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ նշված է, որ կուսակցական կազմակերպությունները հաշվի են առել աշխատավորության ինտերնացիոնալ դաստիարակության գործում որոշ կուսակցական կազմակերպություններում տեղ գտած թերությունների ու սխալների վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի մի շարք որոշումներում եղած ցուցումները: «Կուսակցական կազմակերպությունները աշխատավորների հայրենասիրական ու ինտերնացիոնալ դաստիարակության աշխատանքն սկսեցին տանել ավելի նախաձեռնողաբար և լայնորեն: Արմատախիլ են արվում նացիոնալիզմի ու շովինիզմի

առանձին դրսևորումներ, պատմական իրադարձությունների գնահատման նկատմամբ ոչ դասակարգային մոտեցման փաստերը, տեղայնության դրսևորումները, նահապետականության գովերգման փորձերը։ Այս ամենը դատվ աշխատավորների խոր ըմբռնումն ու պաշտպանությունը, նպաստեց մեր երկրի ժողովուրդների բարեկամության ու եղբայրության հետագա ամրապնդմանը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 113)։

Զարգացած սոցիալիզմի արդի փուլում նոր հաջողություններ են ձեռք բերվել կուսակցության լենինյան ազգային քաղաքականության իրականացման գործում։ Անշեղորեն բարձրանում է բոլոր միութենական և ինքնավար հանրապետությունների տնտեսական ու սոցիալական զարգացման մակարդակը։ Մարդկանց գիտակցության մեջ է՛լ ավելի խոր են թափանցել սովետական հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի կենարար գաղափարները։ Այս հարցերը մշտապես գտնվում են լենինյան կուսակցության ուշադրության կենտրոնում։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի «Գաղափարական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշման մեջ ասված է. «ՍՄԿԿ-ն աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը դիտում է որպես կոմունիզմի համար մղվող պայքարի կարևոր ճակատ։ Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հաջողություններից ավելի ու ավելի մեծ չափով են կախված երկրի տնտեսական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական զարգացման ընթացքը, զարգացած սոցիալիզմի հնարավորությունների լիակատար իրացումը, Սովետական Միության լենինյան արտաքին քաղաքականության կուրսի իրականացումը, նրա միջազգային դիրքերի ամրապնդումը»։

Սովետական մարդկանց ինտերնացիոնալ ու հայրենասիրական դաստիարակության հետագա կատարելագործումը, սովետական ապրելակերպի ինտերնացիոնալ ու հայրենասիրական հատկանիշների խորացումն ու ամրապնդումը կոմունիզմի կառուցման հաջողության կարևոր պայմանն են։

---

# ԼԵՆԻՆՅԱՆ ՀԱՆՃԱՐԻ ՎԱՌ ՓԱՅԼԱՏԱԿՈՒՄԸ

(Վ. Ի. ԼԵՆԻՆԻ «ՄԱՏԵՐԻԱԼԻԶՄ ԵՎ ԷՄՊԻՐԻՈԿՐԻՏԻՑԻԶՄ» ԵՐԿԻ ՀՐԱՊԱՐԱԿՄԱՆ 70-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Լ. Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր

ԿԱՆ ՄՏՔԻ ԱՅՆՊԻՍԻ ստեղծագործություններ, որոնցում ո՛չ միայն այս կամ այն դարաշրջանն է արտացոլվում, այլև դրանք իրենք են հանդես գալիս որպես տվյալ դարաշրջանը դիմորոշող երևույթներ։ Այդպիսի բացառիկ գործերից է Վ. Ի. Լենինի Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ աշխատությունը, որը լույս տեսավ յոթ տասնամյակ առաջ և դարձավ մարքսիստական փիլիսոփայության դասական երկերից մեկը։

Այս գիրքն իր բովանդակությամբ մտել է փիլիսոփայական մտքի պատմության մեջ և մարմնավորում է մարքսիստական փիլիսոփայության զարգացման լենինյան փուլի կարևորագույն նվաճումները։ Դրանով հանդերձ աշխատության հրապարակումը սերտորեն առնչվում է պրոլետարիատի հեղափոխական պայքարի պատմության, բոլշևիզմի պատմության և նոր տիպի մարքսիստական կուսակցության կազմավորման հետ։

Երբ XX դարի արշալույսին Վ. Ի. Լենինը խնդիր էր դնում Ռուսաստանում ստեղծել մարքսիստական կուսակցություն, նա այն պատկերացնում էր որպես այն ժամանակվա սովորական սոցիալ-դեմոկրատական կուսակցություններից էապես տարբեր մի կուսակցություն։ Իրենց ողջ «պատկառելիությամբ» հանդերձ, այդ կուսակցությունները տառապում էին ո՛չ միայն կազմակերպչական, այլև տեսական-գաղափարական անդիմությամբ։ II Ինտերնացիոնալի առավել հեղինակավոր կուսակցության՝ գերմանական սոցիալ-դեմոկրատիայի առաջնորդները, մասնավորապես, այն կարծիքին էին, թե, իբր, փիլիսոփայական համոզմունքները կուսակցության անդամների «մասնավոր գործն է»։

Ելնելով դրանից՝ կուսակցության ղեկավարները վարում էին աշխարհայացքային բնույթի հարցերին կուսակցության «չմիջամտելու» գիծ, նրանք հանդուրժողական դիրքորոշում ունեին այն բանի նկատմամբ, որ կուսակցության տեսաբաններից ու գաղափարախոսներից ոմանք բացահայտորեն հակվում էին նեոկանտականությանը, իսկ մյուսները՝ պոզիտիվիզմի զանազան ձևերին։

Ուշագրավ է, որ այդ ժամանակ սոցիալ-դեմոկրատիայի որոշ գործիչներ ձգտում էին տեսական-գաղափարական հարցերում կուսակցության չեզոքության դիրքորոշումն արդարացնել՝ վկայակոչելով մտքի ազատության սկզբունքը։ Վ. Ի. Լենինը բացահայտեց այդ փորձերի ողջ սնանկությունը։ Նա ցույց տվեց, որ մտքի ազատության պահանջը դեմոկրատիայի պաշտպանության լոզունգ է, այն պահանջում է, որ պետությունը չմիջամտի քաղաքացիների փիլիսոփայական, կրոնական և այլ համոզմունքներին։ Ճիշտը այն կլինի, եթե դա համարվի «մասնավոր գործ» բուրժուական պետական իշխանության

հանդես։ Սակայն դրանից արմատապես պետք է տարբերել մարքսիստական կուսակցության գաղափարական քաղաքականության հարցը, կուսակցություն, որն ստեղծվում է այն նպատակով, որպեսզի բանվոր դասակարգին համակի գիտական իմացությամբ և նրա միջավայրում պաշտպանի ու արմատավորի հետևողական մատերիալիստական աշխարհայեցողություն։ Այս առումով կարելի՞ էր, արդյոք, որոշ սոցիալ-դեմոկրատ գործիչների նման պնդել, թե մախիզմի նկատմամբ վերաբերմունքը, իբր, կուսակցական հրապարակախոսների «մասնավոր գործն» է։

Վ. Ի. Լենինը սկզբունքորեն այլ կերպ էր հասկանում կուսակցության տեսական-գաղափարական պայքարի իմաստն ու նշանակությունը։ Նրա ելակետն ամենից առաջ այն էր, թե մարքսիզմի սոցիալ-քաղաքական ծրագիրը, տնտեսական ու փիլիսոփայական ուսմունքը միասնական ամբողջություն են։ «Մարքսիզմի քաղաքական գիծը,—նշել է Վ. Ի. Լենինը,— ...անխզելիորեն կապված է իր փիլիսոփայական հիմունքների հետ» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 17, էջ 504)։ Եթե Վ. Ի. Լենինը այդպիսի խոր և էական կապ չտեսներ պրակտիկ-քաղաքական գործունեության և ռեակցիայի դեմ տեսական-փիլիսոփայական հարցերի շուրջ կուսակցության մղած պայքարի միջև, ապա, հավանաբար, լույս աշխարհ չէր գա մարքսիզմի պաշտպանության մի այնպիսի կրքոտ ելույթ, ինչպիսին Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ աշխատությունն է։

Գիրքը գրվել և լույս է տեսել 1905—1907 թթ. ռուսական առաջին հեղափոխության պարտությանը հաջորդած ստոլիպինյան ռեակցիայի տարիներին։ Ռուսաստանում ազատագրական շարժման ժամանակավոր պարտությունը հեղափոխության ուղեկիցների շարքերում առաջացրեց հիասթափություն, անկման և նահանջի տրամադրություններ, որոնք դրսևորվեցին ո՛չ միայն քաղաքական մտքի ասպարեզում ընդհանրապես, այլև հասարակական գիտակցության այնպիսի ոլորտներում, ինչպիսիք արվեստն ու գրականությունն են (դեկադենտություն, մոդեռնիզմ և այլն)։ Գաղափարական զինաթափման տրամադրությունները, բնականաբար, չէին կարող չանդրադառնալ նաև աշխարհայացքային, փիլիսոփայական բնույթի հարցերի ըմբռնման վրա։

Գաղափարական-քաղաքական մթնոլորտի բոլոր այդ փոփոխությունները ինչ-որ չափով ներազդում էին նաև սոցիալ-դեմոկրատական միջավայրի վրա։ Մասնավորապես, որոշ կուսակցական մտավորականներ փորձեր ձեռնարկեցին մարքսիստական փիլիսոփայությունը ռևիզիայի ենթարկելու, այն բնագիտության՝ Է. Մախի մշակած իբր թե նորագույն մեթոդաբանությամբ և պոզիտիվիստորեն կողմնորոշված սոցիոլոգիայով «հարստացնելու» ուղղությամբ։

Սակայն մարքսիզմի փիլիսոփայության ռևիզիան միայն Ռուսաստանով սահմանափակված լոկալ երևույթ չէր։ Ռեակցիայի ուժեղացումը, կապված իմպերիալիզմին անցնելու հետ, միջազգային սոցիալ-դեմոկրատիայի շրջաններում, այդ թվում II Ինտերնացիոնալի առաջատար կուսակցություններում հանգեցրեց օպորտունիզմի և ռևիզիոնիզմի աճին։ Դրա որոշ գործիչներ, ովքեր իրենց «Մարքսի աշակերտ» էին համարում, ինչպես հայտնի է, պաշտպանեցին «Ետ դեպի Կանտը» տխրահռչակ լոզունգը։

Ինչպես հայտնի է, մինչև Վ. Ի. Լենինի գրքի լույս տեսնելը, փիլիսոփայական ռևիզիոնիզմի քննադատությանը նվիրված մի շարք աշխատություններ էր գրել Գ. Վ. Պլեխանովը։ Մասնավորապես մեծ արձագանք ունեին մարքսիզմի նեոկանտական ռևիզիայի դեմ ուղղված նրա փայլուն հոդվածները։

Ավելի ուշ Գ. Պլեխանովը հրապարակեց Մարտնչող մատերիալիզմ հոդվածաշարը, որի մեջ տրված էր Ա. Բոգդանովի մախիստական մոլորությունների քննադատական վերլուծությունը։ Սակայն այդ հոդվածաշարն իր ամբողջականությամբ չէր կարող համեմատվել Է. Բեռնշտայնի և Կ. Շմիդտի դեմ պլեխանովյան ելույթների հետ։ Ո՞րն է դրա պատճառը։ Ինչո՞ւ գրական բանավեճի վարպետն այստեղ այնպես համոզիչ չեղավ, ինչպես իր նախորդ աշխատություններում։

Մախիզմի պլեխանովյան քննադատության սահմանափակ բնույթը, ի թիվս այլ պատճառների, պայմանավորվում էր նաև նրանով, որ այդ քննադատությունը ինչ-որ կապ էր տեսնում բոլշևիզմի տակտիկական դրույթների



և բոլշևիկյան ուղղության որոշ գործիչների մախիստական մոլորությունների միջև։ Ղեկավարվելով մենշևիկյան խմբավորման նեղ ֆրակցիոն շահերով՝ Գ. Պլեխանովը Ա. Բոգդանովի էմպիրիոմոնիզմի իր քննադատությունն օգտագործեց բոլշևիզմի դիրքերը թուլացնելու համար։ Այդ կապակցությամբ Վ. Ի. Լենինը գրել է. «Մախիզմի դեմ ուղղված իր դիտողությունների մեջ Պլեխանովը ոչ այնքան մտահոգված էր Մախի հերքմամբ, որքան բոլշևիզմին ֆրակցիոն վնաս հասցնելու խնդրով» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 18, էջ 468)։

Պլեխանովի և Բոգդանովի միջև տարաձայնությունները (այդ մասին գրել է գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցության «Neue Z it» ամսագիրը) ունեին ՌՍԴԲԿ երկու ֆրակցիաների միջև գաղափարական-քաղաքական տարաձայնության վերածվելու միտում։ Այդ պայմաններում առավել ևս անհրաժեշտ էր Վ. Ի. Լենինի Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ գրքի հանդես գալը, որտեղ մարքսիզմի փիլիսոփայությունից կատարած նահանջի համար խիստ քննադատության են ենթարկվել ո՛չ միայն մենշևիկ-մախիստները, այլև բոլշևիկյան ֆրակցիային հարած որոշ գործիչներ (Բոգդանով, Բազարով, Լունաչարսկի)։ Դրա շնորհիվ բոլշևիզմը հստակորեն սահմանազատվեց որոշ գործիչների մախիստական հավատամքից, իսկ զուտ քաղաքական սահմանազատումը բոլշևիկների և մենշևիկների միջև դրա հետևանքով ավելի հստակ տեսք ընդունեց։ Այդ է նկատի ունեցել Վ. Ի. Լենինը, երբ Մ. Գորկուն գրած նամակում նշել է, թե «Փիլիսոփայական տուրուդմբոցը պետք է տարբերել ֆրակցիաներից»։

Հարցը միայն այն չէ, որ բոլշևիզմի և մախիստական փիլիսոփայության միջև չկար (և չէր կարող լինել) ոչ մի ներքին կապ, այլև այն, որ տեսության ու պրակտիկայի, գաղափարախոսության ու քաղաքականության միջև կապերը հասկացվում էին և երբեմն դեռ հասկացվում են չափից դուրս պարզունակացված։

Ժամանակին Լենինը իրավամբ ծաղրել է Ա. Պոտրեսովի փքուն հայտարարություններն այն մասին, որ, իբր, մենք լավ գիտենք, թե ինչպես փիլիսոփայության վերացական թվացող դրույթները իրականում կենդանի կոնկրետ նշանակություն էին ձեռք բերում գերմանական բանվորական շարժման համար։ «Փորձեցեք բացատրել, եթե «դուք գիտեք», թե ինչպիսի «կենդանի կոնկրետ նշանակություն» ունեցավ Էնգելսի այն թեզիսը, թե Դյուրինգի փիլիսոփայական դատողությունները ժամանակի ու տարածության մասին սխալ են» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 20, էջ 151)։

Ինքնին հասկանալի է, որ ընդհանուր փիլիսոփայական պրոբլեմների շուրջ պայքարը չէր կարող ուղղակի և անմիջականորեն կապված լինել քաղաքական հարցերի շուրջ պայքարի հետ։ Օրինակ՝ տարածության և ժամանակի վերաբերյալ իդեալիստական պատկերացումներից տրամաբանորեն ամենևին էլ չէր բխում ոչ օտզովիզմը, ոչ ուլտրաձախ տակտիկան՝ առհասարակ։ Փիլիսոփայությունը, իհարկե, սերտորեն կապված է կյանքի հետ, բայց, հակառակ մախիստական պատկերացումների, ռեալ քաղաքական պրոբլեմներն ամեն տեսակ «կարմիր գրքույկներում» կարդացված փիլիսոփայական դրույթների օգնությամբ չէ, որ լուծվում են...

Մախիզմի լենինյան քննադատությունը, ինչպես և նախկինում Դյուրինգի էնգելսյան քննադատությունը, այն նշանակությունն ունեցավ, որ կուսակցության համար պարզաբանվեց, թե հատկապես ինչու և ինչպես են այդ մտավոր հոսանքները նահանջել մատերիալիզմի սկզբունքներից և դա ինչ ազդեցություն է ունեցել հեղափոխական շարժման վրա։

Իսկ ինչո՞ւմ էր հատկապես Վ. Ի. Լենինը տեսնում մատերիալիստական փիլիսոփայությունից նահանջի վտանգը պրոլետարիատի հեղափոխական պայքարի տեսակետից։ Պետք է կարծել՝ այն բանում, որ փիլիսոփայության բոլոր հանգուցային պրոբլեմները հետևողականորեն լուծող մատերիալիզմն է միայն բացառում ֆիդեիզմի նկատմամբ հաշտվողական վերաբերմունքի հնարավորությունը։ Այնինչ մախիզմի տարածումը, որ ռուսական առաջին հեղափոխության պարտությունից հետո համակել էր կուսակցական մտավորականության մի մասին, ուղեկցվում էր առավելապես հենց կրոնական գաղափարների տա-

րածմամբ և, մասնավորապես, այսպես կոչված աստվածաշինարարության քարոզով։

Հեղափոխության պարտությունը, ռեակցիայի ուժեղացումն ու հարձակումը գաղափարապես անկայուն միջավայրում ծնեցին այնպիսի տրամադրություններ, որոնք հանգեցնում էին իրականության հետ հաշտվողականություն որոնելուն՝ կրոնական հավատին ապավինելու միջոցով։ Այդ տրամադրություններն այնքան ուժեղացան, որ կուսակցության որոշ գործիչներ առաջարկում էին նույնիսկ սոցիալիստական ուսմունքին հաղորդել կրոնական դոկտրինայի բնույթ։

Հետևողական մատերիալիզմից կատարված ամեն մի նահանջ ուժեղացնում է կրոնական գաղափարախոսության, ֆիդեիստական աշխարհայեցողության դիրքերը, գտնում էր Վ. Ի. Լենինը։ Որ հատկապես ա՛յդ բանում էր մարքսիզմ-լենինիզմը տեսնում մատերիալիզմից նահանջելու գլխավոր վտանգը, կարելի է համոզվել, դիմելով այն ժամանակ՝ 1908—1909 թվականներին, կուսակցության կենտրոնական տպագիր օրգանի ֆունկցիան կատարող «Պրոլետարի» թերթի ընդլայնված խմբագրության խորհրդակցության բանաձևերին (հունիս, 1909 թ.)։

Փիլիսոփայական հարցերի շուրջ վեճերին վերաբերող բանաձևում խորհրդակցությունն արձանագրել է այն հանգամանքը, որ ռեակցիայի ժամանակաշրջանում կրոնական տրամադրությունների ընդհանուր աճի կապակցությամբ այժմ «...առանձին սոցիալ-դեմոկրատների կողմից ևս փորձեր են արվում սոցիալ-դեմոկրատիայի հետ հավատի ու աստվածաշինարարության քարոզ կապել և նույնիսկ կրոնական հավատի բնույթ տալ գիտական սոցիալիզմին» (ՍՄԿԿ-ն համագումարների, կոնֆերանսների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում, մաս 1-ին, «Հայպետհրատ», 1954 թ., էջ 274)։ Խորհրդակցությունն ամենից առաջ հենց դրանում է տեսել մախիստական հրապուրանքների հնարավոր վտանգը պրոլետարիատի ազատագրական պայքարին։

Կարելի է ուշադրություն դարձնել նաև խորհրդակցության մեկ այլ բանաձևին, որը վերաբերում է Բոգդանովի բողոքին՝ կապված «Պրոլետարիում» աստվածաշինարարության քարոզի դեմ ուղղված հոդվածի հրապարակման հետ։ Բանն այն է, որ թերթի խմբագրությունը որոշում ուներ բոլշևիկյան անլեգալ օրգանի էջերում փիլիսոփայական թեմաներով հոդվածներ չտպագրել։ Սակայն տարաձայնությունների հետզհետե սրվելը խմբագրությանն ստիպեց 1909 թ. սկզբներին գործնականում հրաժարվել այդ որոշումից, որը և պատճառ հանդիսացավ Բոգդանովի պաշտոնական բողոքի համար։ «Պրոլետարիի» խմբագրության ընդլայնված խորհրդակցությունն այդ առարկությունը մերժեց։ Ընդ որում, ուշագրավ են այն պատճառաբանությունները, որոնք վկայակոչել է խորհրդակցությունը։ Վերջինս ամենից առաջ ելել է նրանից, թե «...այն պայքարը, որը մղվում է կրոնական գիտակցության ամեն տեսակի ձևերի ու կրոնական տրամադրությունների դեմ, որտեղից էլ որ դրանք ծագեն, անհրաժեշտ է ու ֆրակցիայի ղեկավար օրգանի հերթական խնդիրներից մեկն է, և «Պրոլետարիի» էջերը ոչ մի կերպ չեն կարող փակ լինել այդպիսի պայքարի համար» (Նույն տեղը, էջ 275)։

Այսպիսով, փիլիսոփայական պրոբլեմների վերաբերյալ հոդվածների հրատարակման անհրաժեշտությունը խորհրդակցությունն ուղղակիորեն կապում էր կրոնական գաղափարախոսության ազդեցության դեմ պայքարի խնդիրների հետ։

Դրա վկայությունն են այն կարևորագույն հետևությունները, որ կատարել է Վ. Ի. Լենինը Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ աշխատության եզրափակման մեջ։ Հիշենք, որ այստեղ խոսվում է մախիստական փիլիսոփայության սոցիալական բնույթի մասին. «էմպիրիոկրիտիցիզմի օբյեկտիվ, դասակարգային դերն ամբողջովին հանգում է ֆիդեիստներին սպասարկելուն...» (Վ. Ի. Լենին, Եխ, հ. 18, էջ 472)։ Վ. Ի. Լենինի այս հետևությունը տարակույս չի թողնում այն բանի վերաբերյալ, թե հատկապես ինչումն է, նրա կարծիքով,



մատերիալիզմից նահանջելու օբյեկտիվ վնասը հեղափոխական պայքարի ընդհանուր խնդիրների տեսակետից։

Այստեղ հարկ է ընդգծել, որ Վ. Ի. Լենինը միշտ խոսել է մախիզմով սոցիալ-դեմոկրատների հրապուրվելու օբյեկտիվ սոցիալական ազդեցության, այլ ոչ թե նրանց անձնական մտադրությունների ու ձգտումների մասին։ Նա չէր ժխտում, որ կուսակցության այնպիսի գործիչներ, ինչպիսին Լունաչարսկին էր, սուբյեկտիվորեն ցանկանում էին մարքսիստ լինել։ Բնորոշ է, որ ի պատասխան Լունաչարսկու հայտարարության, թե «Գուցե մենք մոլորվում ենք, բայց մենք որոնում ենք», Վ. Ի. Լենինը գրել է. «Ոչ թե դո՛ւք եք որոնում, այլ ձե՛զ են որոնում՝ ահա՛ թե որն է դժբախտությունը... էմպիրիոկրիտիցիզմով և «ֆիզիկական» իդեալիզմով հրապուրվելը նույնքան արագ է անցնում, որքան նեոկանտականությամբ և «ֆիզիոլոգիական» իդեալիզմով հրապուրվելը, իսկ ֆիդեիզմը յուրաքանչյուր այդպիսի հրապուրումից ավար է վերցնում իր համար՝ հազարավոր ձևերով փոխակերպելով իր խորամանկությունները հօգուտ փիլիսոփայական իդեալիզմի» (Նույն տեղը, էջ 452)։

Վ. Ի. Լենինը, սակայն, չի սահմանափակվել մատերիալիզմից կատարվող շեղումների սոցիալական վնասակարությունը պարզապես մատնանշելով։ Նա խորապես բացահայտել է այդ շեղումների գիտության տեսակետից սխալ լինելը։

Այս կապակցությամբ վերադառնալով Գ. Վ. Պլեխանովին, այն բանին, թե ինչու բոգդանովյան էմպիրիոմոնիզմի դեմ նրա ելույթն իրոք նշանակալից ուղենիշ չհանդիսացավ մարքսիստական փիլիսոփայության մեջ, հարկ է դրա պատճառներին ավելացնել ևս մի հանգամանք. նրա տեսադաշտից դուրս էր մախիզմի էական կապը բնագիտության ճգնաժամային երևույթների հետ։ Մախիզմի իմացաբանական արմատների վերլուծությունը Գ. Վ. Պլեխանովի Մարտնչող մատերիալիզմ աշխատությունում չի հասցված մինչև գիտական ճանաչողության այն ռեալ դժվարությունների վերլուծությանը, որոնց հողի վրա փթթում են սուբյեկտիվ իդեալիզմի տվյալ ձևի մոլորությունները։

Գ. Վ. Պլեխանովն ուշադրություն չի դարձրել մախիզմի այն էական առանձնահատկությանը, որ այդ դպրոցը հանդես է եկել ոչ իբրև զուտ փիլիսոփայական սպեկուլյատիվ դոկտրինա, այլ, լինելով պոզիտիվիստական ուսմունք, իր հիմնական սկզբունքն է հռչակել կողմնորոշումը դեպի «դրական գիտելիքը», դեպի գիտությունը և փորձը։ Այստեղից էլ բխում են դրա այնպիսի ինքնանվանումները, ինչպիսիք են «էմպիրիոկրիտիցիզմ», «էմպիրիոմոնիզմ» և այլն։ Ավելին, մախիզմը հավակնում էր ամեն տեսակի սպեկուլյացիայից և «մետաֆիզիկայից» զերծ մի ինչ-որ «բնագիտության փիլիսոփայության» դերի։ Պատահական չէ, որ դրան հաջողվեց ազդեցություն գործել այնպիսի խոշոր ֆիզիկոսների վրա, ինչպիսիք են Հ. Պուանկարեն և Ա. Էյնշտեյնը, թեև վերջինիս վրա այդ ազդեցությունը մասնակի էր։

Հասկանալի է, որ մախիզմը չէր տալիս և չէր էլ կարող տալ այն լուրջ տեսական պրոբլեմների լուծումը, որոնք ծառացել էին գիտության առջև բնագիտությանը համակած խոր հեղաշրջման հետևանքով։ Բայց նա այդ պրոբլեմներն առաջադրում էր, որովհետև, կարելի է ասել, նա ուղղակի բախվեց դրանց։ Իսկ դա նշանակում է, որ մարքսիստական քննադատության առջև, եթե նա չէր ցանկանում լինել զուտ նեգատիվ, ծառանում էր գիտական ճանաչողության բուն ընթացքով առաջադրված իմացաբանական հարցերն իր սեփական դիրքերից լուծելու խնդիրը։ Այդ խնդրի կատարումը, ինչպես ցույց տվեց պատմությունը, տեսական-գաղափարական վիթխարի նշանակության փաստ դարձավ։

Այսպիսի մոտեցման շնորհիվ մախիզմի լենինյան քննադատությունը հատկապես համոզիչ դարձավ, որովհետև, բացահայտելով մախիզմի կապը բնագիտության ճգնաժամի հետ, Վ. Ի. Լենինը ցույց տվեց, որ մախիզմը ո՛չ միայն ունակ չէ փիլիսոփայական հիմք ծառայելու այդ ճգնաժամի հաղթահարման համար, այլ որ, ընդհակառակն, այն սրում ու խորացնում է այդ ճգնաժամը՝ առաջ բերելով տեսական խառնաշփոթություն և ֆիզիկան մշտապես մղելով իդեալիստական հետևությունների։

*Բայց ֆիզիկայի ճգնաժամի վերլուծությունը, դրանում առաջ եկած դժվարությունների ըմբռնումը անհրաժեշտ էին ո՛չ միայն իդեալիզմի նորագույն տարատեսակությունների հերքման նպատակով, այլև հանուն մարքսիստական մտքի հետագա ստեղծագործական զարգացման։ Ավելի ուշ անդրադառնալով այն իրադրությանը, որում 1908—1909 թվականներին պայքար էր ծավալվել փիլիսոփայական պրոբլեմների շուրջ, Վ. Ի. Լենինը գրել է, որ այն ժամանակ «...նոր ֆիզիկան դրել է մի շարք նոր հարցեր, որոնց հետ պետք է «հաշվի նստեր» դիալեկտիկական մատերիալիզմը» (ԵԼԺ, հ. 20, էջ 155)։*

*Լենինյան այս դրույթը, կարծում ենք, պետք է հասկանալ այն իմաստով, որ դիալեկտիկական մատերիալիզմը, իբրև գիտական փիլիսոփայություն, իբրև կենդանի, ստեղծագործական ուսմունք պետք է մշտապես հաստատի իր գիտականությունը՝ յուրացնելով գիտության նվաճած նորանոր տարածությունները։ Գիտական փիլիսոփայությունը միայն այդ կերպ կարող է հուսալիորեն կանխել մատերիալիզմի սկզբունքներից ամեն մի նահանջ։ Եթե առաջամարտիկի դերը կարող է կատարել միայն այն կուսակցությունը, որը ղեկավարվում է առաջավոր տեսությամբ, (տե՛ս Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 6, էջ 31), ապա նույնքան էլ անկասկածելիորեն ճիշտ է, որ այն առաջավոր սոցիալ-քաղաքական տեսությունը, որով ղեկավարվում է հեղափոխական կուսակցությունը, պետք է հենվի առաջավոր, իրոք գիտական աշխարհայացքի վրա։*

*Վ. Ի. Լենինի գրքում համոզիչ կերպով ցույց է տրված, որ էմպիրիոկրիտիցիզմը և դրան ազգակից այլ հոսանքները, ըստ էության, ոչ այլ ինչ են, քան բերկլիականության և հյումիզմի գաղափարների, այսինքն՝ սուբյեկտիվ իդեալիզմի և սկեպտիցիզմի լոկ կրկնություններ։ Վ. Ի. Լենինը ամբողջ խորությամբ բացահայտեց մախիզմի (էմպիրիոկրիտիցիզմի) սկզբունքային անհամատեղելիությունը հետևողական մատերիալիզմի և դրա բարձրագույն նվաճման՝ դիալեկտիկական մատերիալիզմի դրույթների հետ։*

*Էմպիրիոկրիտիցիզմն անհամատեղելի է մարքսիզմի հետ այն պատճառով, ուսուցանում է Վ. Ի. Լենինը, որ դիալեկտիկական մատերիալիզմի և իդեալիզմի հիմնարար դրույթներն իրենց բուն իմաստով իսկ հակադիր են ու անհարիր։ Այդ հակադրությունը ոչ մի կերպ չի կարող վերանալ կամ ինչ-որ կերպ մեղմանալ, հարթվել և հենց դրա համար էլ հնարավոր չէ մատերիալիզմից և իդեալիզմից զատ մի «երրորդ» գիծ մշակել, որը «չեզոք» լիներ փիլիսոփայության հիմնական ուղղությունների նկատմամբ։*

*Մատերիալիզմի և իդեալիզմի հիմնական, որոշիչ սկզբունքների հակադրությունը և անհաշտելիությունը, ինչպես ցույց է տրված Վ. Ի. Լենինի գրքում, հանդես է գալիս ամենից առաջ այն բանում, թե ինչպես են նրանք լուծում փիլիսոփայության հիմնական հարցը։ Բայց այդ հակադրությունները դրսևորվում են իմացաբանության կարևորագույն պրոբլեմների լայն ճակատով մեկ՝ և՛ արտացոլման էության ըմբռնման, և՛ այնպիսի հասկացությունների մեկնաբանման մեջ, ինչպիսիք են մատերիա, շարժում, էներգիա, տարածություն և ժամանակ, պատճառականություն և այլն։ Վ. Ի. Լենինը խոր կերպով մեկնաբանել է բոլոր այս արմատական պրոբլեմները, որոնք ունեն ո՛չ միայն գիտամեթոդաբանական, այլև ընդհանուր աշխարհայացքային առաջնակարգ նշանակություն։*

*Քանի որ մարքսիզմը ռևիզիայի ենթարկելու կողմնակիցները մախիզմը վկայակոչում էին որպես «գիտության փիլիսոփայություն», «նորագույն բնագիտության փիլիսոփայություն», Վ. Ի. Լենինն իր գրքում մեծ տեղ է հատկացրել XX դարի սկզբին բնագիտության մեջ գոյացած իմացաբանական կացության հետազոտությանը, ֆիզիկայի ճգնաժամի էության ու պատճառների բացատրությանը։ Նա խորամուխ է եղել ֆիզիկայի զարգացման դժվարությունների հետևանքով մակաբույծ դարձած՝ «ֆիզիկական» իդեալիզմի իմացաբանական և սոցիալական արմատների ուսումնասիրության մեջ։ Վ. Ի. Լենինը ցույց է տվել, որ գիտելիքների այդ բնագավառների նորագույն տվյալները, որոնք մասնավորապես կապված են միկրոաշխարհի հայտնագործման հետ, ո՛չ միայն չեն խարխլում մատերիալիզմի հիմքերը (ինչպես*



*ենթադրում էին «մատերիան չքացավ» թեզիսի կողմնակիցները), այլև, ընդհակառակն, լիովին հաստատում են դիալեկտիկական մատերիալիզմը։*

*Ֆ. Էնգելսը մի ժամանակ այն միտքն է հայտնել, որ բնագիտության ասպարեզում ամեն մի խոշոր հայտնագործության հետ մատերիալիզմը նոր ձև է ընդունում։ Վ. Ի. Լենինը եղավ այն մեծ մտածողը, որը, հենվելով գիտական ճանաչողության բարդ պրոցեսում ճգնաժամային երևույթների վերլուծության վրա, մատերիալիզմին տվեց XX դարի սկզբին կազմավորվող ֆիզիկական նոր կոնցեպցիաների (խոսքն, ամենից առաջ, վերաբերում է քվանտային մեխանիկային և հարաբերականության տեսությանը) բնույթին համապատասխանող նոր ձև։*

*Վ. Ի. Լենինը ցույց տվեց իդեալիզմի անզիջում և միաժամանակ համակողմանիորեն փաստարկված քննադատության դասական օրինակ։ Մարքսիզմի սկզբունքային դիրքերից բնորոշելով ու գնահատելով էմպիրիոկրիտիցիզմը, նա դրանով իսկ մշակեց բուրժուական գաղափարախոսության ռևիզիոնիստական հոսանքների քննադատության կարևորագույն սկզբունքները։ Վ. Ի. Լենինը շեշտեց, որ իմացաբանության և բնության փիլիսոփանության, թվում է ամենավերացական պրոբլեմների վերաբերյալ պայքարի ետևում «...չի կարելի չտեսնել կուսակցությունների պայքարը փիլիսոփայության մեջ, մի պայքար, որ վերջին հաշվով արտահայտում է ժամանակակից հասարակության թշնամական դասակարգերի տենդենցներն ու գաղափարախոսությունը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 18, էջ 471)։*

*Բացահայտելով իդեալիզմի տեսական սնանկությունը, Վ. Ի. Լենինը ժխտեց գաղափարական չեզոքության կոնցեպցիան՝ բուրժուական օբյեկտիվիզմը, և հիմնավորեց փիլիսոփայության կուսակցականության գաղափարը։ «Նորագույն փիլիսոփայությունը նույնպե՛ս կուսակցական է, ինչպես և երկու հազար տարի սրանից առաջ» (նույն տեղը)։* Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ *երկը հեղափոխական կուսակցականության փայլուն օրինակ է, մարտնչող մատերիալիզմի հանճարեղ նմուշ։*

*Վ. Ի. Լենինի այս գործի նշանակությունը գնահատելու համար պետք է նկատի ունենալ, որ նախքան դրա լույս տեսնելը կուսակցության շարքային գործչի համար հեշտ չի եղել պարզել, թե իրականում ինչ է «էմպիրիոմոնիզմը»— մարքսիստական փիլիսոփայության յուրօրինակ մեկնաբանությո՞ւն, թե՞ սուբյեկտիվ իդեալիզմի խառնաշփոթ արտահայտություն։*

*Մինչև Վ. Ի. Լենինի գրքի լույս տեսնելը մախիզմի գնահատման հարցում անորոշ դիրք էին գրավել նույնիսկ որոշակի տեսական պատրաստականություն ունեցող մի շարք գործիչներ։ Այսպես, այդ գործիչներից մեկը հայտարարել է, թե մարքսիստների խնդիրն է՝ զարգացնել Մարքսի և Էնգելսի փիլիսոփայությունը «Յո. Դիցգենի ոգով, միևնույն ժամանակ յուրացնելով մախիզմի լավ կողմերը»* (История КПСС в шести томах, т. II, М., 1966, стр. 272)*։ Ինքնին հասկանալի է, որ Դիցգենի և Մախի այդպիսի գնահատականը ընդհանուր ոչինչ չունի մարքսիստական փիլիսոփայության զարգացման լենինյան կոնցեպցիայի հետ։*

*Կարելի է որոշակիորեն ասել, որ մինչև Վ. Ի. Լենինի գրքի լույս տեսնելը կուսակցության մեջ շատ չէին այն գործիչները, որոնք հստակորեն ըմբռնում էին «Պրոլետարիի» խմբագրությունում ծագած փիլիսոփայական տարաձայնությունների էությունը։ Ի թիվս նրանց (Վ. Վ. Վորովսկի, Ի. Ֆ. Դուբրովինսկի և ուրիշներ) Շահումյանն էր, որ սկզբից ևեթ ըմբռնում էր մախիզմի հետ մարքսիստական փիլիսոփայության անհամատեղելիությունը։ Մ. Ցխակայային գրած նամակում (1908 թ. հուլիս) նա հայտնել է, որ հաստատ համոզված է Վ. Ի. Լենինի դիրքորոշման ճշտության մեջ և մեծ անվստահությամբ է վերաբերվում էմպիրիոմոնիզմին և այլնին (տե՛ս Ստ. Շահումյան, ԵԼԺ, 5 հատորով, հ. 2, 1976 թ., էջ 68)։ Նա հույս է հայտնել, որ բանավեճի արդյունքը կլինի մարքսիզմի փիլիսոփայական հիմունքներին ավելի լավ ծանոթանալը և մարքսիզմի լրացումը լինելուն միտող նոր «իզմերից» մաքրվելը (տե՛ս նույն տեղը, էջ 69)։ Մեկ այլ նամակում (1908 թ. նոյեմբեր) Ս. Գ. Շահումյանը բա-*

ցատրել է, թե ինչու ինքը Բոգդանովի էմպիրիոմոնիզմը ծայրահեղորեն բացասական է համարել: «Կեցության ու գիտակցության նույնության նրա դրույթը, ըստ իս, կործանում է Մարքսի ամբողջ սիստեմը» (նույն տեղը, էջ 109): Ս. Գ. Շահումյանի այս բնորոշումը խիստ դիպուկ է: Չէ՛ որ մատերիալիզմը ելնում է ոչ թե կեցության և գիտակցության նույնությունից, այլ կեցության առաջնայնությունից և գիտակցության երկրորդայնությունից:

Վ. Ի. Լենինի Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ գրքի հրատարակումը կուսակցության գաղափարական գործունեությանը նոր որակ հաղորդեց: Բազում վկայություններ կան այն մասին, որ Լենինի այս աշխատությունը լայնորեն ուսումնասիրվել է: Այսպես, լենինյան աշխատության խոր ուսումնասիրության հետքերը նկատելի են Սուրեն Հովսեփյանի հոդվածներում, որոնք տպագրվել են 1913—1914 թվականներին բոլշևիկյան «Պրոսվեշչենիե» հանդեսում: Մախիզմի գնահատման հարցում ճիշտ կողմնորոշվելն է՛լ ավելի մեծ նշանակություն ուներ, քանի որ իդեալիզմի այդ հոսանքն իր արձագանքն էր գտել նաև հայկական իրականության մեջ (տե՛ս «Միտք» ժողովածուն, 1910 թ., Երևան):

Վ. Ի. Լենինի Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ գիրքը բացառիկ կարևոր դեր է կատարել մարքսիստական կուսակցության տեսական փիլիսոփայական հիմքերի պաշտպանության ու զարգացման գործում: Այդ աշխատությունը վիթխարի ավանդ է մարդկային ճանաչողության պատմության մեջ: Այն նշանավորում է մարքսիստական տեսության զարգացման նոր՝ լենինյան փուլը: Այսօր անհնարին է տիրապետել մարքսիստական փիլիսոփայության հիմունքներին՝ դիալեկտիկական և պատմական մատերիալիզմին, առանց խորապես ուսումնասիրելու լենինյան այս աշխատությունը:

Վ. Ի. Լենինի Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ գիրքը, լույս տեսնելուց տասնամյակներ անց էլ, շարունակում է մնալ նոր հասարակարգ կերտողների տեսական անպարտելի զենքը: Լենինի այս աշխատությունը կոմունիստական հասարակություն կերտողների հոգևոր հարստության անսպառ աղբյուր է:

---

«Կոմունիստական բարոյականությունը ներառնում է համամարդկային այն հիմնական բարոյական նորմերը, որ ժողովրդական մասսաները մշակել են հազարամյակների ընթացքում սոցիալական ճնշման ու բարոյական արատների դեմ մղած պայքարում»:

(ՍՄԿԿ ծրագրից)

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԵՎ ՀԱՄԱՄԱՐԴԿԱՅԻՆ ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՐԱԲԵՐԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

**Մ. Ա. ՄԵԼԻՔՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

ՀԱԿԱՄԱՐՏ ԴԱՍԱԿԱՐԳԵՐԻ ԲԱԺԱՆՎԱԾ հասարակության մեջ մարդկանց ողջ գիտակցությունը, հետևաբար և դրա մասը կազմող բարոյական ըմբռնումներն ստանում են որոշակի դասակարգային բնույթ, որն արտահայտվում է բարոյական հիմնական սկզբունքներում: Դրա հիմքը, ինչպես իրավամբ նշել է Ֆ. Էնգելսը, այն է, որ «...մարդիկ, գիտակցորեն թե անգիտակցորեն, իրենց բարոյական հայացքները վերջին հաշվով քաղում են այն գործնական հարաբերություններից, որոնք նրանց դասակարգային դրության հիմքն են կազմում, այսինքն՝ տնտեսական այն հարաբերություններից, որոնց մեջ տեղի են ունենում արտադրությունն ու փոխանակությունը» (Անտի-Դյուրինգ, «Հայաստան» հրատ., 1967 թ., էջ 123—124):

Արտադրության ու փոխանակության կապիտալիստական եղանակի հիման վրա ծագած և հասարակության մեջ տիրապետող բուրժուական բարոյականության հետ մեկտեղ հանդես է գալիս պրոլետարական բարոյականությունը, որը նույնպես դասակարգային է, սակայն, ի տարբերություն բուրժուականի, արտահայտում է ոչ թե անցյալի ու մահացողի, այլ ապագայի ու կենսունակի շահերը: Անշուշտ, պրոլետարական բարոյականությունը նույնպես դասակարգայնորեն սահմանափակ էր ու միակողմանի, սակայն Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը, հայտնագործելով մասնավոր սեփականատիրական ու շահագործողական կարգերը վերջնականապես կործանելու պրոլետարիատի առաքելությունը, նրա բարոյականության մեջ կարողացան նկատել ապագա անդասակարգ հասարակության՝ կոմունիզմի բարոյականության ռեալ նախադրյալները: Դրանց հիման վրա նրանք մշակեցին ապագա անդասակարգ հասարակության համար մղվող պայքարի և այդ իսկ հասարակության բարոյականության մի շարք հիմնական սկզբունքները— բոլոր աշխատավորների համագործակցություն, պրոլետարական հումանիզմ, կոլեկտիվիզմ, անհատի ու հասարակության միասնություն, պրոլետարական ինտերնացիոնալիզմ, անհաշտություն ամեն կարգի շահագործողների ու ճնշողների հանդեպ:

Բնական է, որ այդ բարոյական սկզբունքները համընկնում էին պրոլետարիատի ազատագրական պայքարի սոցիալ-քաղաքական հիմնական ձգտումներին, քանի որ մարքսիզմը մշակեց ապագա հասարակության ստեղծման ոչ թե սահմանափակ, այլ համակողմանի՝ տնտեսական, քաղաքական, փիլիսոփայական ու բարոյական միասնական և կուռ ուսմունք: Օրինաչափ է նաև, որ մասնավոր սեփականատիրական կարգերի կործանման համար մղվող պայքարի սկզբնական շրջանում կոմունիստական ուսմունքով, նշանակում է նաև կոմունիստական բարոյականության սկզբունքներով համակված էին ոչ թե

բոլոր բանվորները, այլ գլխավորապես նրա ավանգարդը կազմող կոմունիստները, որոնք ձգտում էին գործնական շարժման մեջ, հեղափոխության պրոցեսում ներգրավել ամենալայն աշխատավոր զանգվածներին՝ նրանց շրջանում տարածելով կոմունիզմի քաղաքական ու բարոյական սկզբունքները։ Այդ իսկ առումով ո՛չ միայն քաղաքական-կազմակերպչական, այլև բարոյական հզոր գործոն է կոմունիստական կուսակցությունը, որին Լենինը բնութագրել է որպես «մեր դարաշրջանի միտքը, պատիվն ու խիղճը», այսինքն՝ որպես բարոյական ուժ, որի նպատակն էր հաստատել արդարության ու հավասարության այնպիսի հասարակարգ, ուր, Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի խոսքերով ասած, «յուրաքանչյուրի ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման պայմանն է»։

Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը, դեռևս 1845 թ. հատկապես նշել են, որ կոմունիստական գիտակցության «մասսայական ծննդի», ինչպես և բուն նպատակին՝ կապիտալիզմի տապալմանը հասնելու համար «...անհրաժեշտ է մարդկանց մասսայական փոփոխություն, որը հնարավոր է միայն գործնական շարժման մեջ, հեղափոխության մեջ» և ավելացրել, որ հեղափոխությունն անհրաժեշտ է ո՛չ միայն այն պատճառով, որ «ուրիշ ոչ մի եղանակով հնարավոր չէ տապալել տիրապետող դասակարգը, այլև նրա համար, որ տապալող դասակարգը միայն հեղափոխությամբ կարող է իր վրայից դեն շպրտել ամբողջ հին աղտեղությունը և ընդունակ դառնալ ստեղծելու հասարակության նոր հիմք» (Ընտիր երկեր երեք հատորով, «Հայաստան» հրատ., հ. 1, էջ 41)։ Հեղափոխական դասակարգի այս մասսայական վերափոխման հարցին հետագայում բազմիցս անդրադարձել է Վ. Ի. Լենինը, նշելով, որ նոր կյանք պետք է կառուցել մարդկային այն նյութից, որը փչացրել են դարավոր ստրկությունն ու ծանր կյանքը, որ կուսակցության՝ որպես պայքարի ավանգարդի, հիմնական խնդիրը պետք է լինի «օգնել աշխատավոր մասսաների դաստիարակությանն ու կրթությանը՝ հաղթահարելու համար այն հին սովորությունները, հին ունակությունները, որ մեզ ժառանգություն են մնացել հին հասարակարգից...» (Երկեր, հ. 31, էջ 456—457)։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը և սոցիալիզմի կառուցումը մեր երկրում հաստատեցին մարքսիզմի հիմնադիրների այդ հանճարեղ մտքերի ճշմարտացիությունը։ Սոցիալիզմի կառուցումը ո՛չ միայն տնտեսական ու սոցիալական նոր հարաբերությունների հաստատումն ու զարգացումն է, այլև ժողովրդական ամենալայն զանգվածների գիտակցության՝ քաղաքական, իրավական, գեղագիտական ու բարոյական ըմբռնումների արմատական վերափոխում։ Պայքարն այդ վերափոխման համար նույնքան կարևոր էր, որքան հանուն քաղաքական ու տնտեսական վերափոխումների մղվող պայքարը։ Ստեղծելով ու ամրապնդելով արտադրության ու փոխանակման նոր պայմաններ՝ կոմունիստական կուսակցությունն ու սովետական պետությունը միաժամանակ վիթխարի, պատմության մեջ աննախընթաց աշխատանք ծավալեցին մասսաների գիտակցության վերափոխման, մասնավորապես աշխատանքի նկատմամբ նոր վերաբերմունքի արմատավորման համար։ Սա աշխատանքի նկատմամբ ո՛չ միայն իրավական, և ոչ այնքան իրավական, որքան բարոյական նոր վերաբերմունքի մշակման հարց էր, որի էությունը աշխատանքային գիտակցական կարգապահության արմատավորումն է։ Վ. Ի. Լենինն ուղղակի նշել է, որ «Կոմունիզմն սկսվում է այնտեղ, որտեղ երևան է գալիս շարքային բանվորների անձնվեր, ծանր աշխատանքը հաղթահարող հոգսը՝ բարձրացնելու աշխատանքի արտադրողականությունը, պահպանելու յուրաքանչյուր փութ հացը, ածուխը, երկաթը և այլ մթերքներ, որոնք հասնում են ոչ թե անձնապես աշխատողներին և ոչ թե նրանց «մերձավորներին», այլ «հեռավորներին», այսինքն՝ ամբողջ հասարակությանը...» (Երկեր, հ. 29, էջ 524)։

Այս նոր, աշխատանքի նկատմամբ գիտակցական բարոյական վեհ վերաբերմունքի հիման վրա ծագեցին ու արմատացան այնպիսի սոցիալ-բարոյական նոր երևույթներ, ինչպես՝ սոցիալիստական մրցությունը, միլիոնների առօրյա աշխատանքային հերոսությունը, սոցիալական բարձր ակտիվությունը։ Միաժամանակ, շահագործումից ու ճնշումից ազատագրված ժողովուրդների



նոր հարաբերություններն ու կամավոր միավորումը սոցիալ-քաղաքական մեկ միության մեջ ծնեց պրոլետարական ինտերնացիոնալիզմի նոր որակ՝ ժողովուրդների եղբայրական բարեկամությունը և փոխօգնությունը։

Այսպիսով, սոցիալիստական հասարակարգը ծնեց պատմականորեն նոր երևույթ՝ հասարակության ու անհատի ներդաշնակ միասնություն և ամբողջ ժողովրդի բարոյաքաղաքական միասնություն։

Սովետական հասարակության բարոյական սկզբունքները հակադրվում են բուրժուական բարոյականության սկզբունքներին, անհատապաշտական, եսասիրական, անհատների միմյանց և հասարակությանը հակադրող ամենաբազմազան ըմբռնումներին։ Բայց դա ամենևին չի նշանակում, թե կոմունիզմ կառուցող մարդկանց բարոյական ըմբռնումները սոսկ նեղ, դասակարգայնորեն սահմանափակ, միակողմանի ըմբռնումներ են և ոչ մի կապ չունեն հազարամյակների ընթացքում մարդկության ստեղծած բարոյական հասկացությունների հետ։ Բանն, ըստ էության, հակառակն է. կոմունիստական հասարակությունը, ասված է ՍՄԿԿ ծրագրում, ինչպես առանձին անհատների, նույնպես և ժողովուրդների հարաբերությունների անխախտ կենսական նորմեր է դարձնում «Բարոյականության և արդարության այն պարզ նորմերը, որոնք շահագործողների տիրապետության ժամանակ այլանդակվում կամ անպատկառ կերպով ոտնահարվում էին»։

Կոմունիստական բարոյականությունն արդարության, հավասարության, ազնվության, մարդասիրության, բարեկամության, հայրենասիրության, պարտքի, պատվի ու արժանապատվության և մարդկային այլ բարձր արժույթների դարերով մշակված հասկացություններին հաղորդում է նոր իմաստ, նոր, ավելի վեհ, ավելի համամարդկային բովանդակություն, բարոյական նոր սկզբունքների մեջ միավորում և՛ յուրաքանչյուր անհատի, և՛ հասարակության, և՛ ժողովուրդների հիմնական շահերն ու իդեալները, որոնք Սովետական Միության կոմունիստական կուսակցության ծրագրում վավերագրված են որպես կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքս։

Այդ կոդեքսի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ այն խարսխվում է այնպիսի հիմնական բարոյական նորմերի վրա, ինչպիսիք են՝ կոլեկտիվիզմը, հավատարմությունը, սերը, հոգատարությունը, բարեխղճությունը, մարդասիրությունը, բարեկամությունը, ընկերությունը, եղբայրությունը, համերաշխությունը և այլն։ Միաժամանակ այդ հասկացություններն այնտեղ ձևավորված են որպես նոր, կոմունիստական, այսինքն՝ մարդկանց միջև սոցիալ-դասակարգային միջնորմները հաղթահարող և համամարդկային հնչեղություն ունեցող բարոյական սկզբունքներ— հավատարմություն կոմունիզմի գործին, սեր սոցիալիստական հայրենիքի նկատմամբ, բարեխիղճ աշխատանք հասարակության, այսինքն՝ բոլորի բարօրության համար, հասարակական պարտքի խոր գիտակցում, կոլեկտիվիզմ և ընկերական փոխօգնություն, մարդասիրական հարաբերություններ ու փոխադարձ հարգանք, ազնվություն և ճշմարտասիրություն, բարոյական անաղարտություն, պարզություն ու համեստություն հասարակական և անձնական կյանքում, ժողովուրդների բարեկամություն ու եղբայրություն, եղբայրական համերաշխություն բոլոր երկրների աշխատավորների, բոլոր ժողովուրդների հետ։ Ակնհայտ է, որ կոմունիզմ կառուցողների բարոյական սկզբունքները մարդկային վեհ առաքինությունների ձևավորումն ու ամրապնդումն օրգանապես կապակցում են շահագործող դասակարգերի ստեղծած հետադիմական ըմբռնումների, իրենց դարն ապրած բարոյական ավանդույթների ու սովորույթների նկատմամբ անհաշտության սկզբունքի հետ։ Սա նշանակում է, որ կոմունիստական բարոյականությունը մարտնչող է, որ այն պայքար է ո՛չ միայն բարու և լավի հաստատման, այլև չարի ու հետադիմականի հաղթահարման համար։ Վերջապես, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսն անմիջականորեն կապված, ավելին՝ խարսխված է աշխատավոր ժողովրդի դարերով մշակված համամարդկային, անանց բնույթ ունեցող այնպիսի բարոյական սկզբունքների վրա, ինչպես՝ «ով չաշխատի՝ նա չի ուտի», «մարդը մարդուն բարեկամ է, ընկեր, եղբայր»։

Կոմունիզմ կառուցողի բարոյական սկզբունքներն այսօր վավերագրված

են նաև ՍՍՀՄ Սահմանադրության մեջ և արտահայտում են սոցիալիստական հասարակության անդամների իրավունքների ու պարտականությունների ներդաշնակ միասնությունը։

«Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը, կրկին շեշտելով զարգացած սոցիալիզմի ծրագրային նպատակները, մեր հասարակության զարգացման հիմնական խնդիրներից մեկը հռչակեց ո՛չ միայն հասարակության բոլոր անդամների գիտակցականության հետագա բարձրացումը, այլև թերությունների նկատմամբ նրանց առավել անհանդուրժողականությամբ, գործուն հասարակական ակտիվությամբ օժտելը։ Որոշմամբ շեշտվում է, որ գործնական աշխատանքի, պրոպագանդայի և դաստիարակության համակարգի բոլոր միջոցներով անհրաժեշտ է պարբերական, նպատակադիր և անհաշտ պայքար մղել մեր կյանքում դեռևս գոյատևող և սոցիալիստական ապրելակերպին անհարիր այնպիսի այլանդակ վերապրուկների դեմ, ինչպես՝ ընչաքաղցությունն ու կաշառակերությունը, հասարակությանը ոչինչ չտալով նրանից որքան հնարավոր է շատ կորզելը, անտնտեսավարությունն ու շռայլությունը, հարբեցողությունն ու խուլիգանությունը, բյուրոկրատիզմն ու մարդկանց նկատմամբ անհոգի վերաբերմունքը, աշխատանքային կարգապահության և հասարակական կարգի խախտումները։

Ակնհայտ է, որ նման երևույթների դեմ պայքարը տարվում է առաջին հերթին օրենքի ուժով, պետական-իրավական կազմակերպության տրամադրության տակ եղած միջոցներով։ Սակայն նույնքան ակնհայտ է, որ դրանց հաղթահարման գործում իրավական միջոցները պահանջվող արդյունքը չեն կարող տալ, եթե չուղեկցվեն, չզուգակցվեն այդ երևույթների դեմ հասարակության բոլոր անդամների գիտակցական, ակտիվ պայքարով։ Ահա այս երկու կողմերի զուգակցմամբ է ստեղծվում իրավաքաղաքական և բարոյական միասնությունը։ Բանն այն է, որ նշված բոլոր երևույթները ո՛չ միայն իրավական, այլև որոշակիորեն բարոյական ատաղձ ունեն, ընչաքաղցությունը, կաշառակերությունը, բյուրոկրատիզմը, հարբեցողությունը և նման բոլոր երևույթները մեր հասարակության բարոյական սկզբունքների խախտում են, սոցիալիզմին խորթ բարոյական նորմերի հետևանք։

Այդ իսկ առումով զարգացած սոցիալիզմի հասարակությանն անհարիր է պասիվ, հանդուրժողական մոտեցումը հասարակության անդամների արատավոր վարքի նկատմամբ. մեր բարոյականությունը ո՛չ միայն բարին, առաքինին, ազնիվը հաստատող ու ամրապնդող, այլև չարը, անառակը, անազնիվն արմատախիլ անող, լիովին հաղթահարող ու վերացնող ուժ է, այն մարտնչող, պայքարող, հասարակայնորեն ակտիվ գործող ուժ է։

Հենց դրանից ելնելով՝ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը նշում է, որ ղեկավարների, տնտեսական կադրերի աշխատանքը գնահատելիս անհրաժեշտ է հաշվի առնել ո՛չ միայն արտադրական պլանների կատարման ցուցանիշները, այլև կարգապահության մակարդակը, կոլեկտիվի բարոյաքաղաքական մթնոլորտը, աշխատանքի ու կենցաղի պայմանները։ Բոլոր սովետական մարդկանց հարկ է համակել սոցիալիստական հայրենիքի համար հպարտության, ՍՍՀՄ ժողովուրդների անխախտ եղբայրական բարեկամության, ազգային արժանապատվության զգացումով, ազգային մշակույթի նկատմամբ հարգանքով, նացիոնալիզմի ամեն տեսակ դրսևորումների հանդեպ անհանդուրժողականությամբ, ամեն կերպ նպաստելով սովետական մեծ ժողովրդի միասնության և համախմբվածության հետագա ամրապնդմանը։

Ինչպես ՍՄԿԿ XXV համագումարում նշել է Լ. Ի. Բրեժնևը, «ոչ մի բան այնպես չի վեհացնում անհատին, ինչպես ակտիվ դիրքը կյանքում, գիտակցական վերաբերմունքը հասարակական պարտքի նկատմամբ, երբ խոսքի և գործի միասնությունը դառնում է վարքագծի ամենօրյա նորմ։ Այդպիսի դիրքի մշակումը բարոյական դաստիարակության խնդիրն է» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութեր, էջ 116)։

Այս վեհ խնդրի իրականացման, սովետական մարդկանց բարոյական դաստիարակությունը նոր, ավելի բարձր աստիճանի հասցնելու գործին, նրանց



գիտակցության և գործունեության ոլորտում դեռևս նկատվող բարոյական արատների հաղթահարման, դրանց դեմ ծավալվող հետևողական պայքարին զգալիորեն նպաստում է աշխատավոր ժողովրդի դարերով մշակված բարոյական արժույթների ավելի խոր ու համակողմանի ուսումնասիրությունը։

---

# ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐՈՅԱԿԱՆ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԻ ԱՐՏԱՑՈԼՈՒՄԸ ՀԱՅ ԲԱՆԱՐՎԵՍՏՈՒՄ

**Ա. Տ. ՂԱՆԱԼԱՆՅԱՆ**
ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՄԱՐԴՈՒ հասարակական վարքագծի հիմքում ընկած այն պատկերացումների ու սկզբունքների ամբողջությունն է, որով ղեկավարվում է նա իր կյանքում։ Այն պայմանավորված է հասարակական հարաբերություններով և ունի որոշակիորեն արտահայտված պատմական ու սոցիալական բնույթ։ Իրարամերժ ու թշնամական դասակարգերի բաժանված հասարակության մեջ չի եղել և չէր էլ կարող լինել մի միասնական բարոյականություն։ Բարոյական այնպիսի ընդհանուր հասկացություններ, ինչպիսիք են, օրինակ, «բարին ու չարը», «լավն ու վատը», «արդարն ու մեղավորը», յուրաքանչյուր պատմական դարաշրջանում և որոշակի միջավայրում ստացել են ուրույն բովանդակություն ու երանգավորում։ Մինչ տիրապետող վերնախավերի բարոյականությունն ամբողջովին ներթափանցված է եղել եսամոլ գաղափարներով և արդարացրել նրանց շահերն ու իշխանությունը, ժողովրդական զանգվածների բարոյականությունը պաշտպանել է աշխատավորության իրավունքները և առաջադրել մարդկային համակեցության վեհ սկզբունքներ։

Աշխարհի մյուս բոլոր ազգերի աշխատավորական խավերի նման, հայ շինականը, ռամիկը ևս իրենց բարոյական ավանդները դրոշմել են սեփական բանավոր ստեղծագործության տարբեր տիպի ստեղծագործություններում (առասպել, հեքիաթ, առակ, ավանդություն, վեպ, երգ և այլն)։

Այս առումով հիշարժան են, ամենից առաջ, մեր բազմաթիվ ու բազմաբնույթ հեքիաթները։ Դրանցից շատերի առանցքն է կազմում բնության և մարդկային կյանքի իրարամերժ ուժերի դարավոր անհաշտ պայքարը, որը սովորաբար արտահայտվում է հեքիաթային համապատասխան կերպարներում մարմնավորված «բարու» և «չարի» բարոյական սկզբունքների ճակատագրական բախումով և, իբրև կանոն, ավարտվում առաջինի հաղթանակով, երկրորդի պարտությամբ կամ բնաջնջումով։

Այդ տիպի հեքիաթների ցայտուն օրինակներից են մնում՝ Հազարան բլբուլը, Արևհատն ու օձամանուկը, Գառնիկ ախպերը, Որսորդի որդին, Ջրկնորսի տղան, Ուրիշի համար հոր փորողը ինքը կընկնի մեջը և այլն։ Դրանցում ժողովրդի ընդերքից ելած, նրա նվիրական ձգտումների ու իղձերի արտահայտիչ հերոս-հերոսուհիների ջանքերով իրենց արժանի պատիժն են ստանում նույն ժողովրդի հակոտնյա ու թշնամական տարրերը։ Ագահ ու ընչաքաղց հարուստն իր անմարդկային արարքների համար չարաչար պատժվում է։ Պատժվում են և զանազան խարդախ ու դաժան արարածները, հանցագործներն ու մեղավորները, զրպարտիչներն ու հալածողները։ Արդար, ազնիվ, բարեխիղճ, ճշմարտախոս մարդիկ գտնում են իրենց հովանավորներին ու պաշտպաններին, երջանկանում՝ հասնելով բաղձալի նպատակին։ Երախտավորն ստանում է իր երախտիքի փոխհատուցումը։ Հանիրավի հալածված ու տուժած անմեղները, երկար տառապանքներից հետո, ի վերջո, արդարանում են ու փրկվում…

Հայ ժողովրդի աշխատավորական խավերի համար միշտ էլ խորթ են եղել

ազգային անհանդուրժողականությունն ու ազգայնական մոլեռանդությունը։ Ժողովուրդը հավատարիմ է մնացել համերաշխության վեհ գաղափարին, ուրիշ ազգերի հետ բարեկամական ու դրացիական հարաբերություններ պահպանելու սկզբունքին։ Նա, որ բազմիցս ենթարկվել է օտար նվաճողների ավերիչ արշավանքներին, լավ գիտակցել է, որ բռնության ու սպանդի կազմակերպիչները եղել են ոչ թե այլազգի ներքնախավերը, այլ նրանց աշխարհիկ ու հոգևոր տերերը՝ թագավորներն ու շահերը, սուլթաններն ու խաները, խալիֆաներն ու ցարերը։

Հատկանշական է այս առումով հայկական հերոսական մեծ էպոսի օրինակը։ Ազատագրական պայքարի բովում ծնված այս հոյակապ ստեղծագործությունը զերծ է ազգային ատելության տարրերից, մի բան, որ այնքա՜ն հատուկ է տիրողների միջավայրում հորինված ստեղծագործություններին։ Երբ Դավիթը հարձակվում է Մսրա Մելիքի բազմամբոխ բանակի վրա և սկսում աջ ու ձախ կոտորել թշնամու զորքը, արաբական բանակից նրան է մոտենում մի ծերուկ և հորդորում վերջ տալ անմեղ մարդկանց կոտորածին։ Իբրև իր ժողովրդի հարազատ զավակ, որի համար թանկ է աշխատավոր ընչազուրկ մարդկանց կյանքը, անկախ նրանց ազգային պատկանելությունից, Դավիթը սիրով ունկնդրում է արաբ ծերունուն և դիմելով նրան՝ վճռականությամբ ասում.

«Հալևո՛ր, դու աղեկ բան ասացիր,
Քու խոսք տ'ենիմ»։

Զգաստ ու աչալուրջ կանգնած լինելով իր հայրենիքի պաշտպանության դիրքերում և հերոսաբար ու աննկուն դիմագրավելով բազում թշնամիների ոտնձգություններին, մեր ժողովուրդը միշտ եղել է խաղաղության համոզված ու հետևողական պաշտպան։ Նա ներքնապես միտել է դեպի խաղաղությունը, նվաճողական ու կողոպտիչ պատերազմները դիտել որպես մեծ աղետ, որի համար պատասխանատու են իշխողները։ Ժողովրդի խաղաղասիրության պերճախոս հաստատումն է հետևյալ հնօրյա ավանդությունը։ Ավանդությունը պատմում է, թե երբ Վերին Հայաստանի թագավոր Տիրիթը (Տրդատ) գալիս է Հռոմ՝ թագադրվելու Ներոնի կողմից, Հռոմի իշխանները, կամենալով զարմացնել նրան, ցույց են տալիս այն բազմաթիվ սենյակները, ուր պահված էին հռոմեական օրենսգրքերը։ Եվ երբ Տիրիթը ճաշի է նստում Ներոնի հետ, հռոմեացի զոռոզ կայսրը հարցնում է նրան. «Հայոց աշխարհում էլ այսպիսի օրենքներ կա՞ն»։ Տիրիթը պատասխանում է. «Մեր օրենքները, ճիշտ է, թվով քիչ են, բայց լավ օրենքներ են ու ամեն մարդ պարտավոր է իմանալ դրանք։ Եվ, եթե հայ ժողովուրդը լավ պահպանի այդ օրենքները, հռոմեացիք չեն կարող մոտենալ Հայաստանին»։ Ներոնը զարմանքով հարցնում է. «Որո՞նք են ձեր այդ օրենքները, որ մենք դեռ չենք լսել»։ Տիրիթը արժանապատվությամբ պատասխանում է. «Մեր առաջին օրենքն այն է, որ մեր թուրը ժանգոտ լինի ու մանգաղը՝ հայելիի նման փայլուն։ Երկրորդ օրենքն էլ այն է, որ մեր դատաստանի դուռը կանաչ խոտ բուսած լինի, իսկ տաճարի դուռն էլ միշտ ցեխոտ լինի...»։

Հայ ժողովրդի դավանած բարոյական սկզբունքներն առանձնապես ցայտուն են դրսևորվել նրա առածների ու ասացվածքների մեջ կամ «մեծունանց» խոսքերում։ Վերջիններս դարեր շարունակ կատարել են մարդկային վարքագծի յուրատեսակ չգրված օրենքների դեր։

Հայկական առածներում ու ասացվածքներում յուրովի բացահայտված են այն ըմբռնումները, որ դարեր շարունակ ունեցել են դրանց ստեղծողները մարդու և մարդկայինի վերաբերյալ։ Այդ ըմբռնումների համաձայն՝ մարդկային արժանիքների հիմնական ու էական չափանիշը ոչ թե հարստությունն է, ինչպես այդ բնորոշ է վերնախավերի ներկայացուցիչների հայացքներին, այլ՝ բարոյական վեհ հատկությունները։ Ժխտելով բարեկեցիկ կենսապայմանների անհրաժեշտությունն ու կարևորությունը՝ ժողովուրդը հատկապես կարևորել է բարոյական գործոնի դերը, վեր հանել մարդու մեջ եղած մարդկայինն ու վսեմը. «Մարդամիջի մարդ ունենամ, հազար թուման պարտք ունենամ», «Բարի



անունն ավելի լավ է, քան աշխարհի գանձը», «Ջուլի (ցնցոտու) տակ էլ մարդ կըլնի»*։

Հասարակության յուրաքանչյուր անդամ, անկախ դիրքից ու դերից, իր նմանի հետ ունեցած հարաբերությունները պետք է խարսխի ոչ թե անձնական շահի ու հաշիվների, այլ անշահախնդիր հարգանքի, անկեղծ սիրո, տևական բարեկամության ու անդավաճան ընկերականության վրա. ինչպես անձնական, նույնպես և հասարակական գործերում առաջնորդվի միայն ու միայն այդ ազնիվ սկզբունքներով. «Սիրե ինձ, սիրեմ քեզ», «Ըսե ջան, լսե ջան», «Մի ունեցիր հարյուր դահեկան, ունեցիր երկու բարեկամ», «Հավքը թևով է թռչում, մարդը՝ բարեկամով», «Սրտանց բարեկամը սև օրվա համար է», «Մարդուն ընկերովը կը ճանաչեն», «Ընկերովի մահը հարսանիք է», «Ընկերը ընկերին թե չը գտնի, աշխարհը ախ ու վախով անց կը կենա»։

Մարդկային կյանքի և հասարակական հարաբերությունների կարևորագույն շարժիչներից են փոխադարձությունն ու փոխօգնությունը։ Անհատը չի կարող ապրել հասարակությունից կտրված, միայնակ։ Ուժեղ, ապահով ու երջանիկ լինելու համար նա պետք է ունենա համախոհներ, գործակիցներ ու դաշնակիցներ, ապրի սեփական համայնքի հետ և իր նմանների մեջ. «Մարդս մարդով է շեն», «Մի ձեռը ծափ չի տա», «Մի ծաղկով գարուն չի գա», «Լավ է գեղով գերի գնալ, քան մեն-մենակ՝ հարսանիք», «Մեջք-մեջքի որ տանք, սար կը շուռ տանք», «Գեղ կանգնի, գերան կը կոտրի»։

Յուրաքանչյուր ոք պետք է ձգտի իր վարքագծով լինել ազնիվ ու ճշմարտացի, պարզ ու համեստ. ամեն կերպ խուսափի անազնիվ արարքներից, ստախոսելուց, ամբարտավանությունից ու գոռոզամտությունից։ Միայն այդ կերպ նա կարող է հարգանք ու սեր վայելել շրջապատում, ապահովել իր դիրքը հասարակության մեջ. «Հալալը որ մազ դառնա՝ չի կտրվի, հարամը որ գերան դառնա՝ կը կոտրվի», «Հալալ վաստակը գելը չի տանի», «Ճիտակ պատը չի փլչի», «Ճիտակ ճամփով գնացողը չի հոգնի», «Սուտը սամույր քուրք էլ որ լինի, մարդ վրան չի առնի», «Վարը նստի, որ վերևը քեզ տեղ տան», «Պտղատու ծառի ճյուղերը կախ կլինեն», «Լեցուն հասկը գլուխը քաշ կանի»։

Բոլոր ազնիվ մարդիկ պարտավոր են նշավակել ու մերժել ծուլությունը, պորտաբուծությունն ու ձրիակերությունը, գնահատել աշխարհի բարիքներն ստեղծող արդար ու հանրօգուտ աշխատանքը, ջատագովել ու պաշտպան կանգնել մարդկային կյանքի միակ նախապայմանին, այդ ամենազոր մեծ ուժին։ «Աչքն ուրիշի դռան, հողը մարդու գլխին», «Ուրիշի հացով փոր չի կշտանա», «Ով ալարի՝ ոչ դալարի», «Ամռան պառկեմ հովեր, ձմռան հատեն կովեր», «Աշխարհի տերն աշխատանքն է», «Աշխարհքս աշխատավորինն է», «Աշխատանքը լեռներ կը հավրե», «Աշխատողն անոթի չի մնա», «Ով կը դատի, նա կուտի», «Աշխատող ձեռքը միշտ տաք կլինի»։

Ի հակակշիռ բռնի ուժին և ռազմամոլ նկրտումներին, մեր ժողովուրդն իր առածների ու ասացվածքների միջոցով միշտ քարոզել է իրեն հարազատ խաղաղասիրական գաղափարները. «Խաթրը քանց զոռը լավ է», «Հացի կտրածը՝ թուրը չի կտրի»։

Վերոհիշյալ բարոյական սկզբունքները հայ ժողովուրդն ստեղծել, մշակել ու զարգացրել է բնության և հասարակական կյանքի չար ուժերի դեմ մղած մահու և կենաց պայքարի ընթացքում, շինարար ու ստեղծագործ աշխատանքի բովում։

Բարոյական այդ սկզբունքների մի զգալի մասի արմատները շատ խորն են։ Դրանք թաղված են երբեմնի համայնական տնտեսաձևի ու կենցաղի ծալքերում, այդ տնտեսաձևի ու կենցաղի վրա խարսխված համապատասխան պատկերացումներում ու հասկացություններում։

Հերոսական ու դրամատիկ դրվագներով հարուստ իր երկհազարամյա կյանքի ողջ ընթացքում մեր ժողովուրդը միշտ հավատարիմ է մնացել մարդուն գեղեցկացնող, նրան զարդարող բարոյական այդ վեհ սկզբունքներին, իբրև նվիրական ավանդ հաղորդել դրանք որդոց որդի և սերնդից սերունդ։

---

* Այս և հաջորդ բոլոր օրինակները բերված են Առածանի-ից (ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1960 թ.)։

## Կենսագործենք ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումները

# ՄԵՐ ՌԵԶԵՐՎՆԵՐՆ ՈՒ ՀԵՌԱՆԿԱՐՆԵՐԸ

**Ն. Կ. ԱՅՎԱԶՅԱՆ**
ՀԿԿ Նաիրիի շրջկոմի առաջին քարտուղար

Մեր երկրի հետագա առաջընթացի, ՍՄԿԿ XXV համագումարի մշակած սոցիալ-տնտեսական ծրագրի իրականացման գործում կուսակցությունը մեծ կարևորություն է տալիս գյուղատնտեսությանը։ Ժողովրդական տնտեսության այդ առաջատար ճյուղի զարգացմանը հանգամանորեն անդրադարձավ ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումը, որի մշակած միջոցառումները կարևոր քայլ են համագումարի որոշումների կենսագործման ճանապարհին։ Հուլիսյան պլենումն ընդհանրացրեց և ըստ ամենայնի արժեքավորեց ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965) պլենումից հետո ընկած ժամանակամիջոցում մեր երկրի գյուղատնտեսության ձեռք բերած լուրջ հաջողությունները, բացահայտեց այդ բնագավառում եղած թերությունները և նշեց նրա հետագա զարգացման ուղիները։ Եթե մարտյան պլենումի որոշումները դարձան կուսակցության ներկայիս ագրարային քաղաքականության հիմքը, ապա հուլիսյան պլենումը որոշեց այն կոնկրետ խնդիրները, որ այժմ ծառացած են գյուղի առջև։ «Արդի ագրարային քաղաքականությունը,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումում,— կուսակցության լենինյան ստրատեգիան ու տակտիկան է գյուղատնտեսության բնագավառում, զարգացած սոցիալիզմի պայմաններում»։ Հաստատակամորեն իրագործելով լենինյան ագրարային քաղաքականությունը, կուսակցությունը հաջողությամբ լուծում է գյուղատնտեսության վերելքի խնդիրը։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումից հետո մեկ տարի է անցել։ Մեր գործունեության արդյունքները գնահատելով պլենումի պահանջների ոգով, այսօր մենք պարզորոշ տեսնում ենք ինչպես ձեռք բերված հաջողությունները, այնպես էլ գյուղատնտեսության զարգացման գործում մեր առջև ծառացած խնդիրները։

Տասներորդ հնգամյակի անցած ժամանակամիջոցում գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումները հասել են ավելի քան 29 միլիոն ռուբլու, այդ ճյուղի համախառն արտադրանքի աճը կազմել է 13,6 տոկոս։ Շրջանն արդեն կատարել է հացահատիկի պետական վաճառքի հնգամյա պլանը։ Անցած տարիներին պլանից դուրս մթերվել են 1.300 տոննայից ավելի պտուղ, 550 տոննա միս, 1.200 տոննա կաթ։ Ընդհանուր առմամբ պետությանը վաճառվել է յոթ միլիոն ռուբլու արտապլանային արտադրանք։

Մեր մարդկանց ջանքերը գնահատվել են ըստ արժանվույն. բարձր արդյունավետության ու որակի հնգամյակի առաջին տարում, համամիութենական սոցիալիստական մրցությունում հաղթող ճանաչվելու համար, շրջանն արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի, իսկ երրորդ տարում՝ ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներին։ Անցած տարվա երկրորդ և երրորդ եռամսյակների արդյունքներով շրջանի անասնապահության բնագավառի աշխատողները հաղթող դուրս եկան հանրապետական սոցիալիստական մրցությունում և նվաճեցին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշն ու դրամական առաջին կարգի մրցանակը։

Մենք դեռ առաջին քայլերն ենք արել ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումների կենսագործման ճանապարհին։ Անշուշտ, շրջանն ունի գյուղատնտեսության բնագավառում ավելի բարձր արդյունքների հասնելու պոտենցիալ մեծ հնարավորություններ։ Յուրաքանչյուր տնտեսությունում կան չօգտագործված ռեզերվներ, որոնց գործադրմամբ հնարավոր է էականորեն բարձրացնել գյուղատնտեսական արտադրության արդյունավետությունը։ Կան նաև ոչ քիչ թվով պրոբլեմային հարցեր, որոնց լուծումը հեռանկարային կարևոր նշանակություն ունի գյուղատնտեսության հետագա վերելքն ապահովելու համար։

Նաիրին քաղաքամերձ շրջան է, և դա յուրահատուկ խնդիրներ է առաջադրում նրա էկոնոմիկային։ Խաղողագործության ու պտղաբուծության, բանջարաբուծության, կաթնամսային տավարաբուծության ու թռչնաբուծության զարգացումը դառնում է հույժ անհրաժեշտություն։ Այդ ճյուղերում եղած ռեզերվների համակողմանի ու արդյունավետ օգտագործումը մեզ թելադրում է գործադրել ավելի շատ ջանքեր, դրսևորել ձեռներեցություն, վերացնել էկոնոմիկայի զարգացման ճանապարհին եղած արգելքներն ու խոչընդոտները, ավելացնել արտադրանքի ծավալը, բարձրացնել բերքատվությունն ու մթերատվությունը։ Խնդիրներ, որ բխում են ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի պահանջներից և որոնց անշեղ կատարումը մշտապես գտնվում է կուսշրջկոմի, սկզբնական կազմակերպությունների, սովետական ու գյուղատնտեսական մարմինների տեսադաշտում։

Խաղողագործությունը մեր շրջանի էկոնոմիկայի առաջատար ճյուղերից է։ Անցած տարի տնտեսությունները, ամբողջությամբ վերցրած, կատարեցին խաղողի պետական մթերումների պլանը։ Եվ, այնուամենայնիվ, արդյունքները դեռևս չեն համապատասխանում եղած հնարավորություններին։ Այդ բնագավառում դեռ շատ են չօգտագործված ռեզերվները։ Բերենք այսպիսի օրինակ։ Այգիները հիմնելիս հաշվի չեն առնվել շրջանի բնակլիմայական պայմաններում խաղողի այս կամ այն սորտի աճեցման նպատակահարմարությունը, անտեսվել է զտասորտայնության գործոնը, չի ապահովվել այգիների լիարժեքությունը։ Այստեղից էլ՝ ցածր բերքատվությունը։ Այգիների նոսրության վերացումը ինքնին բերքի ավելացման կարևոր ռեզերվ է։ Նոսրությունը մեզ մոտ դեռևս կազմում է 12 տոկոս։ Այդ նշանակում է, որ մենք կորցնում ենք 280 հեկտար տարածություն։ Եվ ահա այդ ամենի հետևանքը. հնգամյակի անցած երեք տարում պլանով նախատեսվածից պակաս է ստացվել երեք հազար տոննա խաղող։ Պարզ է, որ մենք մեծ ջանքեր պետք է գործադրենք հնգամյակի առաջադրանքն ամբողջությամբ կատարելու համար։

Բյուրոյի նիստերում մենք մի քանի անգամ քննարկել ենք խաղողագործության զարգացման հարցերը։ Շրջանում խաղողի արտադրության ավելացման հիմնական ուղին արտադրության ինտենսիվացումն է՝ այգիների վերակառուցումը, լիարժեքության ապահովումը, բարձր բերքատու սորտերի ներդրումը և հեկտարի բերքատվության բարձրացումը։ Շրջանում վերջին տասը տարում միջին բերքատվությունը չի անցել 40—42 ցենտներից, մինչդեռ տնտեսություններից մի քանիսն այժմ ապահովում են 55—60, իսկ առաջավոր բրիգադները՝ 80—90 ցենտներ բերք։ Հաշվարկները ցույց են տալիս, որ ետ մնացողներին առաջավորների մակարդակին հասցնելու միջոցով հնարավոր կլինի տարեկան լրացուցիչ արտադրել 2,5—3 հազար տոննա խաղող։ Շրջանի կուսկազմակերպությունը հենց այդ խնդրի լուծմանն է նպատակամղում այգեգործների ջանքերը։

Մեզ համար առաջնահերթ հարց է պտղաբուծության զարգացումը։ Այդ նպատակով խնդիր է դրվում հիմնել ավելի քան 500 հեկտար պալմետային

այգի, վերակառուցել հին, անարդյունավետ այգիները, ներդնել խնձորի և տանձի բարձր բերքատու սորտեր։

Ընթացիկ և հեռանկարային խնդիրները լուծելիս կուսշրջկոմը միշտ էլ հենվում է սկզբնական կուսկազմակերպությունների ակտիվության և նախաձեռնության վրա։ Եվ դա տալիս է ցանկալի արդյունք։ Երբ մենք որոնում էինք պտղաբուծության զարգացման արդյունավետ ուղիներ, լավ նախաձեռնությամբ հանդես եկան Նոր Գեղիի սովխոզ-տեխնիկումի սկզբնական կուսկազմակերպությունն ու դիրեկցիան։ Նրանք առաջինը պատրաստակամություն հայտնեցին ընդարձակել պտղատու այգիները, բայց ոչ ավանդական ձևով։ Ինտենսիվ այգեգործության զարգացման հարցը գործարար կերպով քննարկվեց սովխոզ-տեխնիկումի կուսակցական ժողովում, որոշվեց հիմնել 200 հեկտար պալմետային այգի։ Ստանալով կուսշրջկոմի և հանրապետության գյուղմինիստրության աջակցությունը՝ նորգեղցիները գյուղատնտեսության նյութատեխնիկական ապահովման շրջանային միավորման մելիորատիվ ջոկատի ուժերով նախապատրաստեցին 200 հեկտար հողատարածություն և գարնանը հիմնեցին 80 հեկտար պալմետային այգի, որի տնկիները ստացվեցին Հարավսլավիայից և Հունգարիայից։ Մնացած 120 հեկտարը կհիմնվի աշնանը։ Շատ կարևոր է, որ գյուղի հասարակայնությունն ապրում է այդ մեծ գործով։ Սովխոզ-տեխնիկումի կոմունիստները, բանվոր և ուսանող կոմերիտականներն ակտիվորեն մասնակցեցին այգու հիմնմանը։ Այս գործում նրանց ակտիվորեն աջակցեց ողջ շրջանի աշխատավորությունը։ Պատահական չէ, որ 80 հեկտարանոց այս զանգվածին տրվեց «Բարեկամության այգի» անունը. շրջանի այգեգործական տնտեսություններից յուրաքանչյուրն այստեղ հիմնեց 1—2 հեկտար այգի։ Սա մեծ գործի, կուլտուրական այգեգործության սկիզբն է։ Նախնական հաշվումներով մեկ հնգամյակ հետո Նոր Գեղիի տնտեսությունը կարտադրի ավելի քան հինգ հազար տոննա պտուղ, այսինքն՝ այնքան, որքան այժմ ստանում են շրջանի տնտեսությունները՝ միասին վերցրած։

Նորգեղցիների նախաձեռնությունը լայն արձագանք ստացավ շրջանում։ Եղվարդի մեքենափորձարկման կայանի կուսկազմակերպությունը և դիրեկցիան որոշեցին ընթացիկ տարվա աշնանը և եկող տարի հիմնել 300 հեկտար պտղատու պալմետային և 120 հեկտար խաղողի բարձր բերքատու սորտերի այգիներ։ Ընդ որում, հաշվի կառնվեն զտասորտայնությունն ու տնկումների կազմակերպումը գիտական հիմունքներով։

Ի դեպ, այգիներ հիմնելիս հետևողականորեն կիրառվում են գիտնականների հանձնարարականներն ու ցուցումները։ Այսպես, Նոր Գեղիում պալմետային այգու հիմնման նախօրեին սովխոզ-տեխնիկումի սկզբնական կուսկազմակերպության, դիրեկցիայի ու խաղողագործության, պտղաբուծության և գինեգործության գիտահետազոտական ինստիտուտի նախաձեռնությամբ տեղում անցկացվեց ինտենսիվ այգեգործության հարցերին նվիրված սեմինար պարապմունք, որին մասնակցում էին նաև գյուղմինիստրության մասնագետները։ Գիտնականներն ու առաջատար մասնագետները տնտեսության մարդկանց ծանոթացրին ինտենսիվ այգիների հիմնման սկզբունքներին, ծառերի տնկման տեխնոլոգիային, արժեքավոր խորհուրդներ տվեցին էտը, ձևավորումը, պարարտացումը, մշակությունն ու բուժումը գիտական հիմունքներով կազմակերպելու վերաբերյալ։

Այս տարվա մարտին շրջկոմը նույն ինստիտուտի հետ կազմակերպեց գիտական կոնֆերանս՝ նվիրված շրջանում այգեգործության զարգացման հրատապ հարցերին։ Կոնֆերանսին մասնակցեցին տնտեսությունների ղեկավարները, բուսաբուծության մասնագետները, այգեպտղաբուծական բրիգադների բրիգադավարները, առաջավոր այգեգործները և պտղաբույծները։ Կոնֆերանսի մասնակիցներն ունկնդրեցին ճանաչված գիտնականների, որոնց զեկուցումները նվիրված էին Նաիրիի շրջանում պտղաբուծության և խաղողագործության զարգացման հեռանկարներին, դեղձենու և ծիրանենու սորտերի ընտրությանն ու տեղաբաշխմանը, բազմամյա տնկիների վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարի կազմակերպմանը, հողերի մելիորացմանը, այգեգործության նորագույն տեխնիկայի օգտագործմանը։



Գիտնականների հետ մենք հաստատել ենք գործնական սերտ կապեր, որոնց ամրապնդումը կխթանի այգեգործության և պտղաբուծության զարգացումը և կօգնի այդ ասպարեզում շրջանի հեռանկարային պրոբլեմների լուծմանը։

Շրջանի կուսկազմակերպության առջև ծառացած է մասնագիտացման հետագա խորացման խնդիրը։ Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման և համակենտրոնացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից հետո լուրջ քայլեր են արվել այդ ասպարեզում։ Մասնագիտացման հարցը համակողմանիորեն քննարկվել է շրջկոմի 1977 թվականի պլենումում, ապա՝ կուսակցական ժողովներում։ Պլենումի հանձնարարությամբ շրջսովետի գործկոմի գյուղվարչությունը ներկայացրեց կոնկրետ առաջարկություններ շրջանի տնտեսությունների հնարավորությունների և զարգացման հեռանկարների վերաբերյալ, իսկ «Հայգյուղմեքենայացում» շրջանային գիտաարտադրական միավորումը մշակեց ըստ տնտեսությունների կոմպլեքսային մեքենայացման հեռանկարային պլան՝ երկու փուլով. մինչև 1990 և մինչև 2000 թվականը։ «Հայպետհողնախագիծ» ինստիտուտն արդեն կազմել է շրջանի հողօգտագործման գլխավոր սխեման և հեռանկարային քարտեզը մինչև 2000 թվականն ընկած ժամանակամիջոցի համար։ Դրանք ներառում են հին այգիների վերակառուցումը, նորերի հիմնումը, գյուղատնտեսական շրջանառությունից դուրս մնացած 1.700 հեկտար հողատարածության օգտագործումը և հեռանկարային այլ խնդիրներ, որոնք նույնպես քննարկվել են սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում և մշակվել են գործնական միջոցառումներ։

Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման ծրագրին համապատասխան շրջանում ստեղծվել և գործում են մի քանի օբյեկտներ՝ խոշոր եղջերավոր անասունների մատղաշների ինտենսիվ աճեցման և բտման Եղվարդի համալիրը՝ 10 հազար գլխի կարողությամբ, Լուսակերտի թռչնաբուծական ֆաբրիկան և Գետամեջի թռչնաբուծական տոհմային գործարանը։

Մասնագիտացման վերաբերյալ կուսշրջկոմի և շրջսովետի գործկոմի մշակած միջոցառումներն արժանացան ՀԿԿ Կենտկոմի և հանրապետության կառավարության հավանությանն ու պաշտպանությանը։ Նրանց ընդունած որոշումը վճռական նշանակություն ունի մեր շրջանում գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման ու կոոպերացման խորացման և այդ ասպարեզի հեռանկարային պրոբլեմների լուծման համար։ Որոշմամբ խնդիր դրվեց Եղվարդի համալիրը կերով ապահովելու նպատակով Արագյուղի երինջների աճեցման միջտնտեսային ձեռնարկությունը վերակազմել կերարտադրության մասնագիտացված սովխոզի։ Այն համալիրին տարեկան կտա 2.500 տոննայից ավելի կերամիավոր։ Բայց քանի որ հոտի արդյունավետ վերարտադրության շահերը պահանջում են անպայման ունենալ երինջների աճեցման տնտեսություն, որոշվեց Քարաշամբի կոլտնտեսության բազայի վրա ստեղծել տոհմային էգ հորթերի աճեցման մասնագիտացված սովխոզ և նրան վերապահել Արագյուղի միջտնտեսային ձեռնարկության ֆունկցիան։

ՀԿԿ Կենտկոմի և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի որոշմամբ լուծվել են նաև արտադրության մասնագիտացման հետ առնչվող և դրանցից բխող այլ խնդիրներ։ Հանձնարարվել է, օրինակ, «Հայգլխջրշին» հանրապետական վարչությանը՝ 1979 թվականին նախագծել 4.000 հեկտար հողատարածության վերակառուցման ու ոռոգման աշխատանքը, ուսումնասիրել Բուժականի և Արագյուղի միջև ընկած տարածքում ջրամբար կառուցելու հնարավորությունը։ Խնդիր է դրվել գյուղատնտեսության նյութատեխնիկական ապահովման հանրապետական կոմիտեի առջև՝ մշակել և իրականացնել Եղվարդի համալիրի, Արագյուղի, Քարաշամբի և Բուժականի հողերի ջրացման ու կուլտուր-տեխնիկական բարելավման լրացուցիչ միջոցառումներ և այդ նպատակով մեծացնել շրջանային մելիորացիոն ջոկատի հզորությունը։

Հայտնի է, որ ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը նեղ մասնագիտա-

ցումը սխալ համարեց և դատապարտեց ֆերմաների հախուռն վերացման միտումները։ Մենք գտնում ենք, որ դա միանգամայն ճիշտ է և բխում է գյուղատնտեսական արտադրության համակողմանի զարգացման, բնակչության և վերամշակող արդյունաբերության հարաճուն պահանջների բավարարման շահերից։ Ահա ինչու շրջկոմը խնդիր է դրել, որպեսզի խաղողապտղաբուծական յուրաքանչյուր տնտեսություն ունենա առնվազն 200, իսկ առանձին տնտեսություններ՝ մինչև 300—400 գլուխ կով։ Շրջանը, ամբողջությամբ վերցրած, այժմյան 2.000-ի դիմաց կունենա ավելի քան 3.000 գլուխ կով։

Մասնագիտացման նպատակը արտադրության դինամիկ աճի ապահովումն է, իսկ դա անհնար է առանց բարձր բերքատու նոր, արժեքավոր սորտերի ներդրման և բարձր մթերատու ցեղերի արմատավորման։ Անասնապահության մեջ մասնագիտացումը խորացնելու նպատակով հարկավոր է առաջին հերթին արմատապես բարելավել ցեղաբուծական աշխատանքը։ Իսկ դա պահանջում է ո՛չ միայն զարգացնել տնտեսական ղեկավարների ու մասնագետների ձեռներեցությունը, բարձրացնել նրանց պատասխանատվությունը, այլև ապահովել այդ հույժ կարևոր գործի նկատմամբ կուսակցական վերահսկողությունը, տնտեսությունների ղեկավարների ու կուսկազմակերպությունների համագործակցությունը։ Ճիշտ այդպես էլ վարվեցին Նոր Երզնկայի սովխոզում։ Այստեղ մասնագիտացման և մթերքների արտադրության հետագա աճի հարցերը քննարկվեցին կուսակցական ժողովում, ընդունվեց որոշում։ Դրան համապատասխան, դիրեկցիան ձեռք բերեց սև խայտաբղետ ցեղի 100 երինջ։ Արդյունքը գոհացուցիչ է. անցած տարի նորերզնկացիները, շրջանում առաջին անգամ, ամեն մի կովից ստացան 3.180 կգ կաթ, իսկ առանձին կթվորուհիներ՝ ՍՄԿԿ անդամության թեկնածու, շրջանային սովետի դեպուտատ Լաուրա Սարգըսյանը, Թոռուն Ստեփանյանը հատեցին 3.700—3.800 կիլոգրամի սահմանագիծը։ Նրանք պայքարում են այս տարի կովերի միջին կաթնատվությունը 4.000 կիլոգրամի հասցնելու համար։ Գյուղմինիստրությունը Նոր Երզնկայի ֆերման հաստատեց որպես տոհմային։ Այդ նշանակում է, որ տնտեսությունը կարող է զբաղվել տոհմային մատղաշների վաճառքով և մեծապես շահել դրանից։ Ահա թե ճիշտ տնտեսավարումը ինչպես է նպաստում նոր ռեզերվների ստեղծմանը։

Նորերզնկացիների նախաձեռնությունն ակնհայտորեն դուր եկավ և մյուսներին։ Եղվարդի մեքենափորձարկման կայանը ևս ձեռք բերեց 100 գլուխ սև խայտաբղետ ցեղի, իսկ Նոր Գեղիի սովխոզ-տեխնիկումը՝ նույնքան կովկասյան գորշ ցեղի երինջ։

Նոր Երզնկայի սովխոզի ցուցանիշները ստիպում են շատ բան վերանայել և ամենից առաջ այն, որ այսօր շրջանի միջին մակարդակը՝ մեկ կովից 2.500 կիլոգրամ կաթը, չի կարելի այլևս գոհացուցիչ համարել։ Կուսշրջկոմը և շրջսովետի գործկոմը տնտեսությունների ղեկավարներին և կուսկազմակերպություններին կողմնորոշում են դեպի 3.000—3.500 կիլոգրամի բնագիծը։ Դրան, անշուշտ, կարելի է հասնել։ Շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպություններն ուժեղացրել են հսկողությունը կաթի արտադրության ավելացման նպատակով տարվող աշխատանքի նկատմամբ. տնտեսություններին ըստ ամիսների տրվում են առաջադրանքներ, ըստ օրերի կատարվում է կաթի արդյունքների հաշվառում։ Արդյո՞ւնքը։ Նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ բարձրացել է կովերի միջին կաթնատվությունը, աճել կաթի համախառն արտադրանքը։

Ի՞նչ ենք անում ձեռք բերածը ամրապնդելու համար։ Կուսշրջկոմի նախաձեռնությամբ և սկզբնական կուսկազմակերպությունների հսկողությամբ իրականացվում է հոտի արագ վերարտադրությունը. բոլոր տնտեսություններում առանձնացվել են կովերի բարձր կաթնատու ցեղի էգ մատղաշներ և առանձնակի խնամք է տարվում դրանց նկատմամբ։ Քարաշամբի մասնագիտացված սովխոզը, լրիվ կարողությամբ գործելու դեպքում, շրջանի տնտեսություններին կտա այնքան մատղաշ, որքան նրանց պահնջն է, վերջիններս, բնականաբար, կազատվեն էգ մատղաշներ աճեցնելու հոգսից։



Կովերի գլխաքանակի ավելացումը մեր առջև դնում է նոր խնդիրներ՝ կառուցել ժամանակակից կոմպլեքսային մեքենայացված գոմեր, կերարտադրությունը կազմակերպել գիտական հիմունքներով։ Գոմաշինության գործը ձեռնարկվել է. մի շարք տնտեսություններում արդեն կառուցվում են 200—400 գլխի տարողությամբ կոմպլեքսային մեքենայացված գոմեր։ Մեզ հուզողն այսօր կերարտադրության կազմակերպման հարցն է։ Այն լուծվում է ինչպես նոր հողերի յուրացման, նախկինում լքված հողերի օգտագործման հաշվին ցանքատարածությունների ընդարձակման, այնպես էլ կերային կուլտուրաների բերքատվության բարձրացման, նոր կերատեսակների արմատավորման միջոցով։ 1978 թվականի աշնանը Նոր Երզնկայի սովխոզում, Նոր Գեղիի սովխոզ-տեխնիկումում, Արագյուղի մասնագիտացված սովխոզում, Եղվարդի համալիրում և մեքենափորձարկման կայանի տնտեսությունում առաջին անգամ ցանվեց բազմամյա տարեկան, որից նախատեսվում է այս տարի երկու բերք ստանալ։

Արագյուղի տնտեսությունում առաջիկա տարիներին կյուրացվեն նոր հողեր և կերային կուլտուրաների այժմյան 1.000 հեկտար ցանքատարածությունը կկրկնապատկվի, բոլոր տնտեսություններում լայնորեն կներդրվի սենաժը։ Սենաժի պատրաստմամբ տնտեսությունները կշահեն մեծ քանակությամբ կերամիավոր։ Կերարտադրության աճին կնպաստի նաև ոռոգելի հողատարածության ընդարձակումը։

Մսի և ձվի արտադրության ավելացումը ևս մեր առջև ծառացած լուրջ խնդիրներից է, թեև այս բնագավառներում ունենք որոշակի հասումներ։ Ո՛չ միայն Եղվարդի համալիրում, այլև մյուս տնտեսություններում ներդրվել է տավարի մատղաշի ինտենսիվ բտման առաջավոր եղանակը։ Նոր Գեղիի սովխոզ-տեխնիկումն ու Նոր Երզնկայի սովխոզը ինտենսիվ եղանակով աճեցրած մատղաշները մեկ տարեկան հասակում մթերակայան են հանձնում 470—500 կիլոգրամ կենդանի քաշով և ամեն մեկի հաշվով ստանում ավելի քան 700 ռուբլու եկամուտ։ Եղվարդի համալիրում կոմունիստներն ակտիվորեն մասնակցում են մատղաշների աճեցման շնորհակալ գործին։ Նրանցից Ռիտա և Գայանե Խաչատրյանները, Գոհար Գևորգյանը անցած տարի, նախատեսված 450-ի դիմաց, խնամել են 500-ական մատղաշ և զգալիորեն գերակատարել քաշաճի օրական նորման։ Նրանք նույն բարեխղճությամբ շարունակում են այդ գործը նաև այս տարի։

ՀԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումում Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Դեմիրճյանը իրավացիորեն քննադատեց Եղվարդի համալիրի աշխատանքի թերությունները։ Տնտեսության դիրեկցիան և կուսկազմակերպությունը, ճիշտ է, որոշ բան արեցին թերությունները շտկելու համար, գործին միջամտեցին նաև կուսշրջկոմն ու գյուղմինիստրությունը, սակայն այսօր էլ այստեղ կան չլուծված խնդիրներ, չօգտագործված հնարավորություններ ու ռեզերվներ։ Բանն այն է, որ դանդաղ են ընթանում հողերի մելիորացման, ցանքատարածությունների ընդարձակման, ոռոգման ցանցի ընդլայնման աշխատանքները, անբավարար են լուծվում տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման, նյութատեխնիկական մատակարարման հարցերը։ Շրջկոմը և համալիրի սկզբնական կուսկազմակերպությունը ձգտում են լուծել դրանք և ստեղծել ռեզերվների համակողմանի օգտագործման նախապայմաններ։ Տնտեսության առաջընթացի կարևոր գործոն կլինի կերի կայուն բազայի ստեղծումը։ Այդ նպատակով այստեղ կառուցվում են ժամանակակից տեխնոլոգիային համապատասխանող սենաժի հորեր՝ 25 հազար տոննա կարողությամբ։

Լուսակերտի թռչնաբուծական ֆաբրիկան և Գետամեջի թռչնաբուծական տոհմային գործարանը ձվի ու թռչնամսի խոշոր մատակարար են։ Երկու տնտեսություններն էլ ունեն զարգացման լայն հեռանկարներ. նախատեսվում է այստեղ իրականացնել վերակառուցման մեծ աշխատանքներ. այդ նպատակով պետությունը հատկացրել է 32 միլիոն ռուբլի։ Վերակառուցումն արդեն սկսվել է ու դրա իրականացման շնորհիվ շրջանում տարեկան կարտադրվի 200 միլիոն ձու և 2.900 տոննա թռչնի միս։ Աճն ավելի տեսանելի դարձնելու համար

տենք, որ այժմ համապատասխանաբար արտադրվում է 30 միլիոն ձու և 550 տոննա միս: Ածան հավերի գլխաքանակը կաճի 5 անգամ:

Շրջանի գյուղատնտեսության զարգացման ծրագիրը հաջողությամբ կենսագործելու նպատակով շրջկոմը ամեն կերպ ջանում է այն ամրապնդել կազմակերպչորեն ու գաղափարապես, բարձրացնել դրա իրականացմամբ շահագրգռված կազմակերպությունների և կադրերի պատասխանատվությունը: Աշխատավորներին լայնորեն պարզաբանվում են նրանց առջև ծառացած խնդիրների լուծման սոցիալ-տնտեսական և քաղաքական նշանակությունը: Մենք ղեկավարվում ենք «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման այն պահանջով, որ սովետական մարդը պետք է պարզորոշ գիտակցի ժողովրդատնտեսական պլանների կատարմանը, գիտատեխնիկական առաջընթացի արագացմանն իր անձնական մասնակցության հասարակական նշանակությունը: ՍՄԿԿ Կենտկոմը պահանջում է պաշտպանել նորն ու առաջավորը, վճռականորեն պայքարել այն ամենի դեմ, ինչը խանգարում է մեր առաջընթացին: «Աշխատանքին, հասարակական կյանքին ձեռներեց ստեղծագործական մասնակցությունը մարդու գաղափարական, քաղաքացիական հասունության ցուցանիշ է»— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ:

Այդպիսի հասունության չափանիշը կոնկրետ գործերն են: Եվ մեր կադրերը հասունության լավ քննություն են բռնում: Այսպես, Քանաքեռավանի սովխոզում բրիգադներից մեկը ետ էր մնում, չէր կատարում արտադրական առաջադրանքները, այնտեղ թույլ էր աշխատանքային կարգապահությունը: Եվ ահա 1978 թ. սկզբներին ՍՄԿԿ անդամ, գյուղատնտես-մելիորատոր Վրույր Պետրոսյանը ցանկություն հայտնեց գլխավորել այդ ետ մնացող տեղամասը: Կուսշրջկոմի բյուրոն հավանություն տվեց այդ նախաձեռնությանը և հանձնարարեց գյուղական կուսկազմակերպություններին տարածել այն, միջին օղակը ամրապնդել բարձրագույն կրթությամբ և գործիմաց մասնագետներով: Նախաձեռնությունը լայն պաշտպանության արժանացավ շրջանի գյուղատնտեսության մասնագետների կողմից, և այժմ միջին օղակում ղեկավար աշխատանք են կատարում բարձրագույն կրթությամբ տասնյակ մասնագետներ:

Մենք բնավ չենք տարակուսում, որ անպայման կլուծենք մեր շրջանի գյուղատնտեսության առջև ծառացած խնդիրները: Աշխատավորները, համախմբված կուսկազմակերպությունների շուրջը, ջանք ու եռանդ չեն խնայի տասներորդ հնգամյակի առաջադրանքները պատվով կատարելու, կուսակցության XXV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումի որոշումներն անշեղորեն կենսագործելու համար:

---

# ԲԱՐՁՐ ՊԱՐԳԵՎԻՆ ԱՐԺԱՆԻ ԳՈՐԾԵՐ

Ա. Մ. ՍԱՔԱՆՅԱՆ

## ՆՈՐԱՑՈՂ ԱՅԳԻՆԵՐ

Արաքս գյուղը գողտրիկ պարտեզներով օղակված իր նորատիպ առանձնատներով փռված է Սարդարապատի ճակատամարտին նվիրված հուշահամալիր տանող ավտոխճուղու ձախակողմում: Շուրջը, մոտիկ ու հեռու, պետական տնտեսության խաղողի ու պտղատու այգիներն են: Ծիրան ու դեղձ, խնձոր ու տանձ, խաղողի մի քանի տեսակներ են աճեցնում այստեղ:

Գյուղից երակ-երակ ճամփաներ են ձգվում չորս դին ու վերջանում հին ու նոր այգիների մոտ: Դրանցից մեկով, Մայր Արաքսի ջրանցքին զուգահեռ, սլանում է ավտոմեքենան: Կուսկազմակերպության բյուրոյի քարտուղար Թովմաս Սարգսյանի հետ գնում ենք այգիները:

Այգեպտղաբուծական № 6 բրիգադի խաղողի այգում ենք: Բանվորները զինվորների շարասյան պես ծավալվել ու փորում են միջվազային տարածությունը: Միջշարայինը վարել են մի քանի օր առաջ: Հիմա մարդիկ մեքենայի արածին ավելացնում են իրենցը. ոչնչացնում են մոլախոտերը, փխրեցնում հողը, վերջնական տեսքի բերում այգին: Այգեհատվածները իրարից բաժանող ժապավենանման միջնակներում աստիճանաբար ավելանում ու մեծանում են մոլախոտերի կույտերը, որոնք վաղը, մյուս օրը դուրս կբերվեն: Այգեվարին ու այգեփորին կհաջորդեն շատ այլ գործեր, որոնք կդառնան առատ բերքի երաշխիք և պատիվ ու փառք կբերեն Արաքսի աշխատասեր մարդկանց:

Պտղատու այգիների զգալի մասը ձգվում է գյուղից աջ: 108 հեկտարանոց մի զանգված զբաղեցնում են դեղձենիները, որոնք հատված առ հատված բաժանված են ըստ բրիգադների: Յոթերորդ բրիգադի այգեհատվածում հանդիպեցինք Մկրտիչ Զերիցյանին: Տասնհինգամյա պատանի է եղել, երբ նրանց ընտանիքը Հունաստանից եկել է Արաքս: Երեք տասնամյակից ավելի ջրվոր է: Գործընկերը Ղազար Ղուկասյանն է, որը ևս Հայրենիք է եկել 1946-ին, Բեյրութից: Նրանց է հանձնարարված պտղատու այգիների ոռոգումը, իսկ նրանք այդ գործն անում են խղճի մտոք, պայքարում բարձր բերքի համար:

— Ինչպիսի՞ բերք է սպասվում:

Ջրվորը երկար չի խորհում հարցիս վրա: Քաջատեղյակ մարդու վստահությամբ պատասխանում է.

— Երկրորդ, երրորդ և յոթերորդ բրիգադներում, օրինակ, լավ բերք կլինի:

— Ինչպե՞ս եք գուշակում բերքի լավն ու վատը:

— Շատ հասարակ,— զարմանում է Մկրտիչը,— ծառի ընդհանուր վիճակն ու ծաղկման չափը վաղվա բերքի նշաններն են: Այդ բրիգադներում ծաղկման տոկոսը շատ է բարձր: Հատկապես լավ է Շատալովի ծառի մոտի այգին:

— Շատալովի ծա՞ռ, ի՞նչ բան է:

— Տիեզերագնաց-օդաչու Շատալովը,— ասում է սովխոզի կուսբյուրոյի քարտուղար Թովմաս Սարգսյանը,— 1974 թվականին եկավ գյուղ, հանդիպեց բանվորների հետ դեղձենու այգու եզրին, ուռենու մոտ: Այդտեղ էլ հյուրասիրեցինք: Այդ օրվանից ծառը կոչվում է տիեզերագնացի անունով:

## ՄՐՏԱԲԱՑ ԶՐՈՒՅՑ

Հաջորդ օրը սովխոզի գրասենյակում նշանակված էր հանդիպումը տնտեսության ղեկավարների հետ: «Կլոր սեղանի շուրջ»— այսպես էր ծրագրված: Մինչև հանդիպումը դեռ ժամանակ կար, երբ մտա սովխոզի դիրեկտորի առանձնասենյակ: Տաք զրույց էր ծավալվել, ինչ-որ չափով վեճի նման, բայց՝ բարեկամական, ինչպես նկատեցի, փոխադարձ ըմբռնման մթնոլորտում: Հյուրերը շինարարական կազմակերպությունների ներկայացուցիչներ են: Զրույցը պտտվում է ոռոգման ներքին ցանցի կարգավորման և ջրման ռեժիմի պահպանման շուրջ: Պարզվում է, որ շինարարները լավ չեն տեղադրել կիսախողովակները, և դիրեկտոր Արտաշ Սարդարյանը հրա-

ժարվում է ստորագրել կատարման ակտերը:

— Մենք,— ասում է դիրեկտորը փոքր-ինչ խիստ,— այս բոլոր ծախսերն անում ենք, որպեսզի նորմալ ոռոգենք այգիները, արդյունք ստանանք, եթե օգուտ չի տալու, ո՞ւմ է հարկավոր: Դեղձենու տնկիներն սկսել են հյութակալել, դրա համար պետք է բավարար քանակով ջուր ստանան: Ուշացրինք՝ ջրենք-չջրենք, մեկ է:

Շինարարներն անցնում են «հարձակման».

— Խնդրում եմ ձեր բրիգադավարներին ասեք՝ այնքան ջուր բաց թողնեն ջրանցքից, որքան խողովակների տարողությունն է: Ցավալի է, երբ տեսնում ես ջուրը թափվում է խողովակների եզրերից և զուր կորչում...

Հյուրերը դուրս են գալիս:

Ծավալվում է մի նոր գործարար զրույց, որը շոշափում է Արաքսի սովխոզի նվաճումներին, հոգսերին, խնդիրներին ու հեռանկարներին առնչվող հարցեր՝ բազմազան ու բազմատեսակ...

Մթնոլորտը տրամադրող է: Առանձնասենյակի անկյունում ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշն է, որի նվաճման գործում իրենց արժանի ներդրումն ունեն այստեղ ժողովված մարդիկ՝ մասնագետներն ու միջին օղակի ղեկավար կադրերը:

**ՀԱՐՑ.**— Ո՞րն եք համարում ձեր սովխոզի հիմնական նվաճումը, որի համար կոլեկտիվն անցյալ տարվա արդյունքներով արժանացավ համամիութենական փոխանցիկ կարմիր դրոշի:

**Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ** (սովխոզի դիրեկտոր).— Մասնակցելով համամիութենական սոցիալիստական մրցությանը՝ մեր կոլեկտիվն զգալիորեն գերակատարեց գյուղատնտեսական մթերքների արտադրության ու մթերումների 1978 թվականի պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները: Ի դեպ, համամիութենական փոխանցիկը մեր միակ պարգևը չէ: Անցած տարի տնտեսությունն արժանացավ նաև կուսշրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ կարմիր դրոշին՝ սոցմրցությունում հաղթելու համար: Առաջին կիսամյակում անասնապահները ևս առաջնություն նվաճեցին շրջանային մասշտաբով, իսկ այգեգործները պարգևատրվեցին ՀԱՄԿԽ-ի նախագահության պատվոգրով՝ բերքահավաքի ժամանակ լավ արդյունքների հասնելու համար:

**Գ. ՂՈՒԿԱՍՅԱՆ** (գլխավոր տնտեսագետ).— Անցած տարի տնտեսությունը պլանից դուրս արտադրեց 120 տոննա խաղող, մոտ 6 տոննա պտուղ, 94 տոննա բանջարեղեն, 34 տոննա բոստանային կուլտուրա, կաթի ու մսի արտադրության ու վաճառքի առաջադրանքները կատարեց 113—120 տոկոսով, զգալիորեն գերակատարեց կերի կուտակման պլանը և ստացավ 126 հազար ռուբլու արտապլանային օգուտ:

**ԱՂՎԱՆ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ** (կաթնապրանքային ֆերմայի վարիչ).— Ֆերման բոլոր ցուցանիշներով կատարել է պլանները, հատկապես գերազանց է կազմակերպված մսի արտադրության գործը. պետությանը վաճառած անասունների միջին կենդանի քաշը անցած տարի կազմեց 370 կիլոգրամ, այս տարի ևս այդ մակարդակը կպահպանվի: Զուտ եկամուտը 35—50 տոկոսի է հասնում:

**ՀԱՐՑ.**— Որո՞նք են տնտեսության հաջողությունների հիմնական գործոնները:

**Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ.**— Բարձր արդյունքը ձեռք է բերվում քրտնաջան աշխատանքով, և մենք ամեն մի հաջողության հասնում ենք մեր կոլեկտիվի ուժերով: Մարդիկ սիրով ընդունում են բոլոր ձեռնարկումները և օգնում դրանց իրագործմանը: Կադրերի պատասխանատվությունն ու բանվորների պատրաստակամությունը մեր հաջողության երաշխիքն են:

**Մ. ՎԱՐԴԱՆՅԱՆ** (գլխավոր գյուղատնտես).— Մեր հաջողությունն առաջին հերթին պայմանավորված է բոլոր օղակներում հաստատված ամուր, գիտակցական կարգապահությամբ: Մասնագետներից ու միջին օղակի ղեկավար կադրերից յուրաքանչյուրը լավ գիտե իր տեղն ու դերը: Կարևոր է նաև աշխատատար պրոցեսների մեքենայացումը. առանց դրա տնտեսությունը չի կարող զարգանալ:

**Թ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ** (մեքենատրակտորային բրիգադի բրիգադավար).— Ընկեր Վարդանյանը ճիշտ է ասում, մեքենայացման ասպարեզում շատ ենք առաջադիմել: Վերջին տարիներին պարկը համալրվել է բազմաթիվ նոր մեքենաներով ու կցվող գործիքներով: 1970 թվականին ունեինք ընդամենը 5 տրակտոր, իսկ այժմ՝ 30: Պարկում կան ցանքի, մշակության, բուժման, պարարտացման, բերքահավաքի և այլ նշանակության բավարար քանակությամբ մեքենաներ: Դա մեզ հնարավորություն է ընձեռում մեքենայացնելու շատ աշխատանքներ և ամեն մի կամպանիա ավարտելու սեղմ ժամկետում:

**Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ.**— Ֆերմայում՝ կոմպլեքսային մեքենայացումը, մատղաշների ինտենսիվ բտումը, ստերջության վերացումը: Անցած տարի 100 կովից 110 հորթ ստացանք: Եվ, ամենակարևորը, կերի կայուն բազան, որը հնարավորություն է տալիս շուրջ տարին կիրառել կովերի մսուրային պահվածքը:

**Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ.**— Կուսկազմակերպությունը լավ է օգնում մեզ: Բյուրոյի նիստերում ու կուսակցական ժողովներում քննարկում ենք արտադրությանն առնչվող հրատապ հարցեր:



Այնպես որ, կուսակցական ճիշտ ղեկավարությունը հաջողության գրավականն է:

**Թ. ՍԱՐԳՍՅԱՆ** (կուսբյուրոյի քարտուղար).— Կուսակցական ժողովներում ու կուսբյուրոյի նիստերում քննարկում ենք այնպիսի հարցեր, որոնք բխում են սովխոզի արտադրության զարգացման շահերից և կարող են նպաստել գործերի վիճակի բարելավմանը, խթանել էկոնոմիկայի վերելքը: Զեկուցումներով ու հաղորդումներով հանդես են գալիս սովխոզի դիրեկտորը, մասնագետները, ճյուղերի ղեկավարները: Մենք ընդհանրացնում ենք լավն ու ուսանելին, բացահայտում թերությունները ու վրիպումները: Այս տարի, օրինակ, անդրադարձել ենք գարնանացանի ընթացքի, կովերի կաթնատվության բարձրացման, ֆերմայում աշխատանքային կարգապահության ամրապնդման, խաղողի նոր այգիների հարթեցման, պտղատու այգիների հիմնման և այլ հարցերի:

Հաջողության վճռական գործոն է սոցիալիստական մրցության արդյունավետ կազմակերպումը:

## ԳԻՏՈՒԹՅԱՆ ՀԵՏ ԴԱՇՆԱԿՅԱԾ

**ՀԱՐՑ.**— Ես եղա դաշտերում, տեսա գիտնականների հիմնած օրինակելի այգին, ասացեք, խնդրեմ, ինչպե՞ս եք իրականացնում գիտության ու արտադրության կապը, արտադրության մեջ ինչպիսի՞ նորույթներ եք ներդնում:

**Թ. ՍԱՐԳՍՅԱՆ.**— Մեր տնտեսության մասնագետները սերտ կապի մեջ են Հայաստանի խաղողագործության, պտղաբուծության և գինեգործության գիտահետազոտական ինստիտուտի գիտնականների հետ: Պրոֆեսոր Սուրեն Պողոսյանի ղեկավարությամբ № 6 բրիգադում հիմնեցինք 7 հեկտարանոց խաղողի այգի՝ նրա իսկ ստեղծած սորտերով՝ Սև լեռնատու, Անուշ, Հադիսի և այլն: Դա յուրօրինակ մի փորձայգի է, որտեղ մշակության բոլոր աշխատանքները կատարվում են գիտական հիմունքներով և ինստիտուտի գիտնականների անմիջական հսկողությամբ: Ս. Պողոսյանը և մյուս գիտնականները պարբերաբար, գլխավորապես մշակության կամպանիաների ժամանակ, գալիս են մեզ մոտ, անհրաժեշտ խորհուրդներ տալիս մասնագետներին ու այգեգործներին, նրանց գործնականում ծանոթացնում մշակության առաջավոր եղանակներին, հաղորդակից դարձնում գիտության ու պրակտիկայի նորույթներին: Օրինակ, այս տարի գիտնականներից մեկը եկավ տնտեսություն, անձամբ էտեց մի քանի տասնյակ վազ և հետևեց, թե բանվորներն ինչպես են կատարում իր ցուցումները:

**Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ.**— 1977 թվականին Երևանում տեղի ունեցավ ծիրանի մշակության հարցերին նվիրված միջազգային գիտաժողով: Նրա մասնակիցները եղան մեր սովխոզի ծիրանու այգում: Հյուրեր կային Ֆրանսիայից, ԱՄՆ-ից, Ավստրալիայից և այլ երկրներից: Նրանք մեզ օգտակար խորհուրդներ տվեցին ծիրանու այգու խնամքի, բուժման, ոռոգման վերաբերյալ և վերադարձան լավ տպավորություններով: Նրանց հատկապես դուր եկավ մեր աճեցրած ծիրանի արտաքին տեսքն ու համը: Մենք ևս ուսանելի շատ բան քաղեցինք գիտնականների հետ ունեցած հանդիպումից: Ներդրված նորույթներից կարևոր է խաղողի կտրոնների տնկումների մեքենայացումը. 60 հեկտար տնկել ենք այդ եղանակով:

**Մ. ՎԱՐԴԱՆՅԱՆ.**— Դա լուրջ հաջում էր:

**Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ.**— Պտղատու ծառեր տընկելու մեքենա էլ ունենք, աշնանը 65 հեկտար կտնկենք մեքենայով: Ձեռք ենք բերել նաև այգեթաղի ու միջվազային մշակության մեքենաներ, դրանք ևս կօգտագործենք:

**Մ. ՎԱՐԴԱՆՅԱՆ.**— Վերակառուցվող այգիները լրիվ հիմնեցինք մեքենայով, դրա շնորհիվ կտրոնները տնկեցինք խոր ու հավասար, ձեռքով այդպես չի ստացվում:

**ԱԶԱՏ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ** (բրիգադավար).— Մեքենայով տնկելու դեպքում քիչ տարածություն է մնում այգեփորի համար, ձեռքի աշխատանք քիչ է պահանջվում, հավասար տնկման շնորհիվ հետագայում մշակության մեքենաների համար մեծ հնարավորություններ են լինում:

**Թ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.**— Նորույթի հեղինակ է մեր պարկի տրակտորիստ-մեքենավար Իսահակ Սարգսյանը: Նա ձևափոխել է գութանը և հարմարեցրել պտղատու ծառերի միջշարային տարածությունը վարելու համար: Տրակտորը շարժվում է շարքի միջով, իսկ գութանը զգալի շեղությամբ՝ բնին ավելի մոտ, առանց վնասելու ծառերը: Այդ նորամուծության տնտեսական օգուտը, իհարկե, մեծ է:

## ԵՐԲ ԱՄԵՆ ՈՔ ԻՐ ՏԵՂՈՒՄ Է

**ՀԱՐՑ.**— Այստեղ խոսք եղավ կադրերի մասին. կուզեի իմանալ՝ ինչպե՞ս են աշխատում արտադրական ճյուղերի ղեկավարները, կուսկազմակերպությունն ինչպե՞ս է զբաղվում նրանց ընտրության ու դաստիարակության հարցերով:

**Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ.**— Պարզ է, մենակ ոչինչ չես կարող անել: Գուցե և կրկնություն է, բայց հարկ եմ համարում նորից ասել՝ հաջողությունը կոլեկտիվ ջանքերի արգասիք է: Պահանջկոտությունն իր տեղը, մարդկանց վստա-

հել ու գնահատել է պետք: Երբ գործ ունես հմո՛ւտ, աշխատանքը սիրող ու դրանով ապրող մարդկանց հետ, քեզ թեթև ես զգում, բացակայելիս էլ չես տարակուսում, թե ինչ-որ բան կիսատ-պռատ կարվի: Ժողովուրդը զուր չի ասել՝ հացը հացթուխին տուր, մի հաց էլ ավելի: Մեր բրիգադավարներն այդպես են: Նրանցից մի քանիսն այստեղ են: Համիկ Մկրտչյանը, օրինակ, 1950 թվականից ղեկավարում է առաջին բրիգադը: Լավ կազմակերպիչ է, պահանջկոտ, միշտ հետևում է որակին, և դա շատ կարևոր է:

**Թ. ՍԱՐԳՍՅԱՆ.**— Համիկ Մկրտչյանը կուսբյուրոյի անդամ է և այդ պարտականությունը ևս պատվով, բարեխղճորեն է կատարում:

**Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ.**— Չորրորդ բրիգադի բրիգադավար Տարիել Ասատրյանին երևի գիտեք. ՀամԼԿԵՄ Կենտկոմի դափնեկիր է, իսկ այդ կոչումը հենց այնպես չեն տալիս: Պլանները միշտ կատարում է: Տարիելն ու յոթերորդի բրիգադավար Ազատ Աբրահամյանը շատ լավ են կազմակերպում նոր այգիների խնամքը: Լիարժեքությունը 98 տոկոսից բարձր է, հիմա լրացնում են և աշնանը 100 տոկոսանոց այգի կունենանք: Կամ վեցերորդի բրիգադավար Գևորգ Գևորգյանը. հիանալի ղեկավար է: Յոթ բրիգադավար ունենք, բոլորից էլ գոհ ենք:

**Թ. ՍԱՐԳՍՅԱՆ.**— Կադրերի ընտրության ու տեղաբաշխման ժամանակ դիրեկցիան հաշվի է առնում կուսկազմակերպության կարծիքը, նրանց հաստատում ենք կամ կուսակցական ժողովում, կամ՝ կուսբյուրոյի նիստում: Այգեպտղաբուծական յոթ բրիգադավարներից վեցը, բոլոր մասնագետներն ու մյուս ճյուղերի ղեկավարները կոմունիստներ են և արդարացնում են իրենց, մասնակցում գյուղում տարվող հասարակական-քաղաքական աշխատանքին: Կիրառում ենք կադրերի դաստիարակության զանազան եղանակներ՝ հաշվետվությունների ունկնդրում, քաղաքական ուսուցում, տարբեր հանձնարարությունների կատարում և այլն:

**Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ.**— Մարդ պետք է գործի համար ցավ զգա, իր սխալից եզրակացություն անի: Այդպիսի մարդուն կարելի է հարգել ու գնահատել: Խաչիկ Հակոբյանը մեզ օրինակ. 1949 թվականից բրիգադավար էր, լավ էր աշխատում, սակայն 1976 թվականին ստիպված էինք նրան ազատել՝ տնկիների կպչողականության նախատեսված նորման չապահովելու համար. այդպես էլ ձևակերպեցինք կուսբյուրոյի որոշման մեջ: Եվ, գիտե՞ք, նա ո՛չ միայն չլքեց սովխոզը, այլև որպես շարքային աշխատող իրեն շատ լավ դրսևորեց: Մեկ տարի անց կուսբյուրոյի որոշմամբ նրան վերականգնեցինք բրիգադավարի պաշտոնում: Ի՞նչ կարող ես ասել. անցած տարի 33 հեկտար խաղողի այգի է հիմնել, կպչողականությունը գրեթե 100 տոկոս է: Երբ ամեն ոք իր տեղում է, հաջողությունն ինքն իրեն կգա:

**ՀԱՐՑ.**— ՍՄԿԿ XXV համագումարին տրված հաշվետու զեկուցման մեջ ասվեց, որ մրցության ավանգարդում ընթանում են կոմունիստները: Ձեզ մոտ ինչպե՞ս է:

**Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ.**— Դժգոհելու ոչինչ չունենք: Կոմունիստները, իրոք, մրցության ավանգարդում են և լավ օրինակ են ծառայում:

**Թ. ՍԱՐԳՍՅԱՆ.**— Արժե առանձնացնել հատկապես այգեգործներ Տարոն և Վարսիկ Հակոբյաններին, Սանդուխտ Ալեքսանյանին, Սիրեկան Կարապետյանին, մեխանիզատորներ Արամայիս Սարգսյանին, Էդիկ Հովհաննիսյանին, Գերասիմ Աբրահամյանին, Հարություն Հարությունյանին: Բայց, ինչո՞ւ միայն կոմունիստները: Ինչպե՞ս կարող եմ չհիշատակել Հոկտեմբերյան հեղափոխության շքանշանակիր Օլյա Սումբուլյանին, Սիրան Պետրոսյանին, Հրանուշ Սամվելյանին, Ծմավոն Բարսեղյանին, Սերյոժա Սումբուլյանին: Փորձառու, առաջավոր այգեգործներ են, մրցության առաջամարտիկներ: Նվաճած պարգևները նրանց և նրանց նմանների մեծ ջանքերի արգասիք են:

**Խ. ԽԱՉԱՏՐՅԱՆ.**— (արհկոմի նախագահ).— Անցած տարի մի խումբ առաջավոր այգեգործների նախաձեռնությամբ ծավալվեց օրական 500—600 կիլոգրամ խաղող հավաքելու շարժումը: Նրանց մեջ կային ինչպես կոմունիստներ, այնպես էլ անկուսակցականներ:

**ՀԱՐՑ.**— Ինչպիսի՞ թերություններ կան մրցության կազմակերպման գործում և ինչպե՞ս եք ուզում բարելավել ու կատարելագործել այն:

**Խ. ԽԱՉԱՏՐՅԱՆ.**— Բարոյական խրախուսման բոլոր ձևերը չենք կիրառում: Ինչպես հարկն է չենք ապահովում մրցության իսկական հրապարակայնությունը, ցուցադրական կողմին բավարար ուշադրություն չենք նվիրում: Լավ կլինի, եթե անհատական մրցության ձևը կիրառենք նաև այգեպտղաբուծական բրիգադներում, դա կբարձրացնի մարդկանց շահագրգռությունը:

**Թ. ՍԱՐԳՍՅԱՆ.**— Մտադիր ենք փոխանցիկ հուշադրոշներ սահմանել անհատական մրցության հաղթողների համար:

**Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ.**— Կարծում եմ՝ բրիգադներում կարող ենք ավելի կատարելագործել մրցությունը: Մենք միշտ տնտեսական տարին փակում ենք օգուտով, միջոցներ ունենք, կարող ենք ավելի լավ խրախուսել:

**Գ. ՂՈՒԿԱՍՅԱՆ.**— Պլանային օգուտների տասը և արտապլանային օգուտների յոթ տոկոսը հատկացնում ենք խրախուսման ֆոնդին, դրանից էլ մասհանումներ կատարում՝ մրցության հաղթողներին պարգևատրելու համար:



Անցած տարի լրացուցիչ վարձատրության կարգով բանվորներին վճարվել է ավելի քան 68.500, իսկ առավել առաջավորներին ու մրցության հաղթողներին՝ 76.500 ռուբլի: Այս տարի մեծ չափով կավելանա խրախուսման ֆոնդը: Այնպես որ մրցության խրախուսման համար ունենք լայն հնարավորություններ ու մեծ միջոցներ:

## ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ՀԱՍՏԱՏՈՒՆ ՔԱՅԼԵՐԸ

**ՀԱՐՑ.**— Բավարա՞ր եք համարում ձեռք բերածը, ինչպիսի՞ հոգսեր ու լուծման կարոտ խնդիրներ ունեք: Արտադրության բարձրացման ինչպիսի՞ ռեզերվներ կարելի է օգտագործել:

**Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ.**— Իհարկե, ո՛չ: Հատկապես, երբ արածն ու արդյունքները գնահատում ենք ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումի պահանջների տեսանկյունից, ապա տեսնում ենք, որ անելիքներ դեռ շատ ունենք: Մենք գոհ չենք խաղողի բերքատվության ներկա մակարդակից: Բանն այն է, որ նախկինում մեր տնտեսությունն զբաղվել է շերամապահությամբ և ունեցել է մեծ տարածությամբ թթաստաններ: Հետագայում փոխվել է արտադրության ուղղությունը՝ տնտեսությունը դարձել է խաղողապտղաբուծական: Խաղողի այգիները հիմնել են թթենիների մեջ, առանց մելիորացիոն աշխատանք կատարելու ու անսիստեմ: Թթենիներն արագ աճել և ճնշել են խաղողի վազերը: Այստեղից էլ՝ ցածր բերքատվությունը: 1974 թվականից սկսեցինք այգիների վերակառուցումը. քանդում ենք հին, անարդյունավետ այգիները և հիմնում նորը: Վերջին հինգ տարում հիմնել ենք 110 հեկտար նոր այգի, 20 հեկտար էլ աշնանը կստեղծենք, իսկ դա առատ բերքի խոշոր ու անփոխարինելի ռեզերվ է:

**Մ. ՎԱՐԴԱՆՅԱՆ.**— Առանց վերակառուցման տնտեսությունը չի կարող առաջադիմել: Հին այգին պետք է փոխարինող ունենա, չի կարելի հախուռն ձևով վերացնել հինը, դա պետք է արվի պլանավորված կարգով, այնպես, որ համախառն բերքը չպակասի: Եթե գյուղմինիստրությունը ժամանակին գումարներ հատկացներ, ապա մենք կարող էինք ավելի վաղ յուրացնել խոպան հողերը և ստեղծել փոխարինող այգի, ունենալ հուսալի ռեզերվ:

**Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ.**— Ի դեպ, գումարի մասին: Մենք բավականաչափ դրամական միջոցներ ունենք, որը, սակայն, չենք կարող օգտագործել առանց գյուղմինիստրության թույլտվության: Մինչդեռ դրանք մեզ շատ են հարկավոր: Նախ՝ ոռոգման ջուրը չի բավականացնում և պետք է կառուցենք առնվազն վեց խորքային ջրհոր, երկրորդ՝ կարող ենք լրացուցիչ խմելու ջուր բերել գյուղ և վերջապես՝ ունենալ ժամանակակից տիպային գոմեր, բարեկարգել փողոցները:

**Թ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ.**— Մեքենատրակտորային պարկը ծածկ չունի, մեքենաները, ճիշտ է, խնամքով նորոգվում ու պահպանվում են, պարկում կարգուկանոն է, բայց առանց ծածկի մեքենան երկար չի դիմանա:

**ԱՂՎԱՆ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ.**— Ճիշտ է, կովերի կաթնատվությունը բարձրացել է, առաջադրանքը գերակատարում ենք, բայց մեկ կովից 2.700 կիլոգրամը մեզ չի գոհացնում: Առաջավոր կթվորուհի Թենիկ Բալոյանը անցած տարի մեկ կովից ստացավ 2.883 կգ կաթ, եթե մյուս կթվորներն ստանային թեկուզ և 2.800 կգ, ապա 20—30 տոննա կաթ կշահեինք: Կաթնատվության բարձրացումը խոշոր ռեզերվ է, և մենք ձգտում ենք ստանալ առնվազն 3.000 կիլոգրամ: Այստեղ խոսվեց կառուցումների մասին. մեզ հարկավոր է ծածկ ունենալ, որպեսզի ամռանը կովերը պատսպարվեն շոգից: Դա ևս կաթնատվության աճի ռեզերվ է: Կարծում եմ, վաղուց ժամանակն է կիրառել կերի բաշխման ու կովերի էլեկտրակթի նոր առաջավոր եղանակներ:

**Մ. ՎԱՐԴԱՆՅԱՆ.**— Մեզ խիստ մտահոգում է փոխադրամիջոցի հարցը. բանվորները դաշտ են գնում բեռնատար ավտոմեքենաներով, որն անթույլատրելի է, մինչդեռ մեզ ավտոբուս է հարկավոր: Էական է նաև շահագրգռության բարձրացումը:

Եթե նոր հիմնած այգում վազերի կպչողականությունը 95 տոկոսից բարձր է, ապա բանվորը տարեվերջին լրացուցիչ ստանում է իր վաստակի 20 տոկոսի չափով: Նա գիտե, որ այդ այգին ավելի բերքառատ ու եկամտաբեր կլինի, և ինքը հետագայում լրացուցիչ վարձատրություն կստանա նաև բերքի համար, ահա ինչու ավելի լավ է մշակում:

**Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ.**— Ամեն տարի նորոգում ենք ինչպես խաղողի, այնպես էլ պտղատու այգիները: Այս տարի, օրինակ, այգիները լրացրել ենք 12 հազար խաղողի արմատակալներով, մոտ 1.800 պտղատու տնկիներով: Այդ նշանակում է՝ մենք շահել ենք մի քանի հեկտար այգի:

**ՀԱՐՑ.**— Որո՞նք են ընթացիկ տարվա ձեր խնդիրները և առաջիկա տարիների հեռանկարները:

**Գ. ՂՈՒԿԱՍՅԱՆ.**— Մեր կոլեկտիվը սոցմրցությամբ խոստացել է նախատեսված պլանից դուրս արտադրել ու պետությանը վաճառել մեծ քանակությամբ գյուղատնտեսական

մթերքներ: Բերքատվության բարձրացման հաշվին նախորդ տարվա համեմատությամբ մոտ 135 տոննայով կավելացնենք խաղողի համախառն արտադրանքը և կանցնենք 1.000 տոննայի բնագիծը:

**Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ.—** Մենք էկոնոմիկայի զարգացման մեծ հնարավորություններ ու լայն հեռանկարներ ունենք: Թվեմ մի քանիսը: Մեզ մոտ ընթանում է այգենորացման պրոցես: Առաջիկա երկու տարում պետք է լիովին վերակառուցենք խաղողի հին, անարդյունավետ այգիները, իսկ պտղատու այգիների վերակառուցումը կավարտենք հաջորդ տարիներին: 70 հեկտար խոպան հող ունենք յուրացնելու, 42 հեկտարի յուրացումը կավարտենք այս տարի և կհիմնենք դեղձենու այգի: Այգիների վերականգնմանը զուգընթաց կընդարձակենք դրանց տարածությունը:

**Մ. ՎԱՐԴԱՆՅԱՆ.—** Հեկտարից 70—80 ցենտներ խաղողի բերքը մեզ չի գոհացնում: Ճիշտ է, դրա պատճառը այգիների վերակառուցումն է,— նորատունկ այգին լիարժեք բերք է տալիս հինգերորդ տարում,— բայց մենք հնարավորություն ունենք հեկտարից 120—150 ցենտներ բերք ստանալու: Մեր հեռանկարային բնագիծը դա է:

**Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ.—** Խոպան հողերի հաշվին այգիների ընդարձակումը մեզնից կպահանջի ջրհան կայանում տեղադրել ժամանակակից հզոր պոմպեր, կարգավորել ու ընդարձակել ոռոգման ներքին ցանցը: Այդպիսի ծրագիր ունենք և այժմվանից իրագործում ենք այն: Արդեն տեղադրել ենք 15 կմ կիսախողովակ: Շատ անելիքներ ունենք անասնապահության բնագավառում: Արդեն նախնական համաձայնություն կա 200 գլուխ կովի տարողությամբ կաթնային համալիր ստեղծելու համար: Ֆերմաների վերացնելը սխալ է: Մենք, օրինակ, կարող ենք թռչնաբուծական ֆերմա ունենալ՝ տասը հազար գլխի համար, ոչխար էլ կարող ենք պահել, ավելացնել կովերի գլխաքանակը և, ինչպես ֆերմայի վարիչն ասաց, ամեն մի կովից առնվազն 3000 կգ կաթ ստանալ: Սրանք երազանք չեն, այլ ռեալ ծրագիր, որ կարող ենք իրականացնել:

**Տ. ԱՍԱՏՐՅԱՆ (բրիգադավար).—** Մեր ակումբը ժամանակի պահանջներին չի համապատասխանում, լավ կլինի կուլտուրայի պալատ ունենանք: Դա երիտասարդությանը գյուղի, արտադրության հետ կապի լավ միջոց է:

**Ա. ՍԱՐԴԱՐՅԱՆ.—** Գյուղմինիստրությունն արդեն որոշել է նոր ակումբի կառուցումն սկսել 1980 թվականից: Կոլեգիայի որոշմամբ գումարներ են հատկացվել՝ վթարային տները նորոգելու և բնակելի չորս տուն կառուցելու համար: Կարծում եմ՝ հնարավոր կլինի լուծել նաև ֆերմայում և մեքենատրակտորային պարկում ծածկեր կառուցելու հարցերը: Տնտեսական ու սոցիալ-կուլտուրական խնդիրների լուծումը մեզ հնարավորություն կընձեռի արտադրել ու պետությանը հանձնել ավելի շատ խաղող, պտուղ, բանջարեղեն, կաթ, միս ու ձու:

* * *

Զրույցն ավարտվում է: Ես հրաժեշտ եմ տալիս մրցանակակիր տնտեսության մարդկանց այն խորին համոզմամբ, որ նրանք կհաղթահարեն արգելքները, կիրագործեն կանխագծած ծրագրերը, կբազմապատկեն հաջողությունները, կապահովեն հանրային արտադրության նոր վերելքը: Այդ են վկայում ֆերմայի մուտքի մոտ, պաստառին գրված հավատիացման խոսքերը: «Արաքսցիները լի են վճռականությամբ՝ 10-րդ հնգամյակը դարձնելու որակի ու արդյունավետության հնգամյակ»: Հավատում եմ, որովհետև իմ աչքերի առջև պատկերանում են վերակառուցվող ու նորացվող այգիները, նյութական բարիքներ արարող խանդավառ մարդիկ ու տնտեսության շահերով ապրող կազմակերպիչները: Հավատում ու նոր հաջողություններ եմ մաղթում նրանց:

---



Սոցիալիզմը մի հասարակարգ է, որտեղ չկան արտոնյալ դասակարգեր ու խավեր: Բայց բնակչության մի մասը սովետական իշխանության առաջին իսկ օրերից դարձավ արտոնյալ. մեր երեխաները, մեր երիտասարդությունն է այն:

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ

# ԵՐԵԽԱՆԵՐԸ ՄԵՐ ԱՊԱԳԱՆ ԵՆ

**ԵՐԵԽԱՆԵՐԸ ԿԱԶՄՈՒՄ ԵՆ** աշխարհի բնակչության մեկ երրորդը: Ամեն մի երկրի, ամբողջ աշխարհի ապագան պայմանավորված է այն բանով, թե ի՛նչ կրթություն ու դաստիարակություն կստանան երեխաները, ի՛նչ գաղափարներով կառաջնորդվեն նրանք:

Երեխաները երկրագնդի վրա տեղի ունեցող ամեն մի անարդարության առաջին զոհերն են: Եվ դա, բնականաբար, չի կարող չմտահոգել մարդկությանը: Կանանց համաշխարհային ֆեդերացիայի և աշխարհի պրոգրեսիվ այլ կազմակերպությունների համառ ջանքերով Միավորված ազգերի կազմակերպությունը դեռևս 1959 թվականի նոյեմբերի 20-ին ընդունեց Մանկան իրավունքների դեկլարացիան՝ միջազգային հարաբերությունների պատմության մեջ այդ կարգի առաջին փաստաթուղթը: Դեկլարացիայի ընդունման 20-ամյակը նշանավորելու նպատակով ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեան 1979 թվականը հայտարարեց Մանկան միջազգային տարի:

Մանկան իրավունքների դեկլարացիայի՝ այդ կարևոր փաստաթղթի հիմքում դրված սկզբունքները մարդկության տասը պատվիրաններն են՝ երեխաների պաշտպանության նպատակով ծավալված պայքարի տասը ուղղությունները:

Ի՞նչ են հռչակում դրանք:

Մանկան իրավունքները պետք է ընդունվեն բոլոր երեխաների համար, անկախ ռասայից, մաշկի գույնից, սեռից, լեզվից, կրոնից, քաղաքական կամ այլ համոզմունքներից, ազգային, սոցիալական ծագումից, ունեցվածքից կամ այլ հանգամանքից. երեխային պետք է ընձեռվեն ֆիզիկական, մտավոր, բարոյական, հոգևոր ազատ ու անկաշկանդ զարգացման պայմաններ. երեխան պետք է ունենա անվան, քաղաքացիության իրավունք. նա պետք է օգտվի սոցիալական ապահովվածության բարիքներից, ունենա անհրաժեշտ սննդի, բնակարանի, զվարճանքի ու բուժսպասարկման իրավունք, իսկ երեխայի մայրը պետք է ապահովվի նախածննդյան ու հետծննդյան խնամքով. ոչ լիարժեք երեխան պետք է ստանա իր վիճակին համապատասխան հատուկ խնամք. երեխան պետք է աճի սիրո և գուրգուրանքի, նյութական ու բարոյական ապահովության մթնոլորտում և, բացի բացառիկ պայմաններից, ոչ ոք չի կարող անջատել նրան մորից. երեխան իրավունք ունի ստանալու կրթություն, որը պետք է լինի անվճար ու պարտադիր. երեխան պետք է առաջինը պաշտպանություն և օգնություն ստանա, պաշտպանված լինի դաժանության ու շահագործման բոլոր ձևերից: Նա չպետք է առ ու ծախի առարկա հանդիսանա: Անչափահասի աշխատանքը չպետք է վնասի նրա առողջությանը, խանգարի ուսմանը. վերջապես, երեխան պետք է դաստիարակվի փոխըմբռնման, հանդուրժողականության մթնոլորտում, ժողովուրդների բարեկամության, խաղաղության , համընդհանուր եղբայրության ոգով:

Մանկան իրավունքների այս դեկլարացիան ամենից առաջ երկրագնդի բնակչությանն ուղղված պայքարի կոչ է՝ հանուն խաղաղության, ազատության դեմոկրատիայի և սոցիալական պրոգրեսի, առանց որոնց երեխաները զուրկ կլինեն ո՛չ միայն երջանկության, այլև ապրելու կանոնավոր պայմաններից: Երեխաների և, ընդհանրապես, հասարակության զարգացման համար կենսականորեն անհրաժեշտ այդ պայմանները սոցիալիստական հասարակարգում ձեռք բերված իրողություն են:

Սովետական Միությունը երկրագնդի վրա

առաջին երկիրն է, որտեղ սերը և հոգատարությունը երեխաների, մայրերի նկատմամբ դարձել է կյանքի անխախտ օրենք: Մատաղ սերնդի կյանքն ու առողջությունը, կրթությունն ու դաստիարակությունը Սովետական Միության կոմունիստական կուսակցության և կառավարության մշտական հոգածության առարկան են: «Ամենայն լավագույնը՝ երեխաներին»— այս սկզբունքը հռչակեց երիտասարդ սովետական հանրապետությունը Մեծ հոկտեմբերից հետո: Երեխաների պաշտպանության խորհուրդ ստեղծելուց երկու տարի անց՝ 1921 թվականին, կազմակերպվեց երեխաների կյանքը բարելավող հանձնաժողով, որը գլխավորում էր Ֆ. Ձերժինսկին: «Երբ նայում ես երեխաներին,— ասել է նա,— չես կարող չասել՝ ամեն ինչ նրանց համար: Հեղափոխության պտուղները ոչ թե մեզ, այլ՝ նրանց... հարկավոր է ուղղակի նետվել նրանց օգնության այնպես, ինչպես խեղդվող երեխային տեսնելիս»:

Սովետական իշխանության հաստատման առաջին օրերից ստեղծվեց մայրության ու մանկության պահպանության մի ամբողջ պետական համակարգ: Մեր պետության առաջին դեկրետներից մեկը վերաբերում է մանկական աշխատանքի արգելմանը, երեխաների սննդի բարելավմանը: Բացվում են մանկական բուժպրոֆիլակտիկ և մանկաբարձա-գինեկոլոգիական հիմնարկություններ: Յուրաքանչյուր երեխային երջանիկ մանկություն— այս է ՍՍՀՄ-ում մոր և մանկան պահպանության համակարգի մշտական կատարելագործման նպատակը:

Նույնիսկ Հայրենական մեծ պատերազմի ծանր տարիներին սովետական կառավարության ուշադրությունից չվրիպեց մոր և մանկան առողջության պահպանման հարցը: Այդ նպատակով ձեռնարկված միջոցառումներից հիշենք ՍՍՀՄ Գերագույն սովետի 1944 թ. հուլիսի 8-ի հրամանագիրը «Հղի կանանց, բազմազավակ և միայնակ մայրերին պետական օգնությունն ավելացնելու, մոր և մանկան պահպանությունն ուժեղացնելու, «Հերոսուհի մայր» պատվավոր կոչում սահմանելու և «Մայրական փառք» շքանշան ու «Մայրության մեդալ» հիմնելու մասին»:

Հոգատարությունը երեխաների նկատմամբ ընդգրկում է պրոբլեմների լայն շրջան՝ պայմանավորված ժողովրդի կենսամակարդակի բարձրացմամբ, առողջապահության գործի զարգացմամբ, կրթության համակարգի կատարելագործմամբ, երեխաների և պատանիների դաստիարակության բարելավմամբ, բազմակողմանի զարգացած մարդկանց ձևավորմամբ:

«Յուրաքանչյուր երեխայի երջանիկ մանկության ապահովումը կոմունիստական հասարակարգի կառուցման առավել կարևոր և վեհ խնդիրներից մեկն է», ասված է ՍՄԿԿ ծրագրում: Եվ այդ խնդիրը հաջողությամբ լուծվում է կոմունիստական շինարարության ընթացքում: Այսօր մենք՝ սովետական մարդիկս, իրավասու ենք օրինական հպարտությամբ նշելու, որ մեր երկրում երեխաները շրջապատված են ջերմ հոգատարությամբ, որ նրանց բախտ է վիճակվել ապրելու ամենաարդարացի օրենքներով ղեկավարվող երկրում, իսկ մայրության ու մանկության պաշտպանությունը դարձել է սահմանադրական սկզբունք: Մատաղ սերնդի առողջության պահպանման համար մեր երկրում հոգում են ավելի քան 91.000 մանկաբույժներ:

Կուսակցության և սովետական կառավարության սոցիալական քաղաքականության կարևոր խնդիրներից է հասարակական օգնությունը ընտանիքներին՝ երեխաների դաստիարակության գործում: Այժմ մոտ տասներեք միլիոն փոքրիկներ դաստիարակվում են մշտապես գործող նախադպրոցական մանկական հիմնարկություններում, մոտ հինգ միլիոն գյուղական մանուկներ՝ սեզոնային մանկապարտեզներում ու մանկամսուրներում: Այդ հիմնարկություններում երեխաներին խնամելու հետ կապված ծախսերի չորս հինգերորդը կատարում է պետությունը և միայն մեկ հինգերորդը՝ ծնողները: Տասներորդ հնգամյակում կառուցվելու և գործարկվելու են 2,5—2,8 միլիոն տեղով մանկապարտեզներ ու մանկամսուրներ: Հատուկ ուշադրություն է նվիրվելու մանկական հիմնարկությունների աշխատանքի բարելավմանը:

Մանկան ներդաշնակ զարգացում, ֆիզիկական կատարելություն և հոգևոր հարստություն՝ ահա ինչի է ձգտում մեր երկիրը երեխաների դաստիարակության գործում: Պետությունը, արհմիությունները, ձեռնարկությունները, կոլտնտեսությունները ամեն տարի զգալի միջոցներ են ծախսում պիոներական ճամբարների, մանկական առողջարանների ստեղծման, կահավորման ու պահպանության նպատակով: Միայն 1976 թ. մեր երկրում բացվել են 33 հազար ճամբարներ— քաղաքային, քաղաքամերձ, առողջարանային, կազդուրիչ-սպորտային, աշխատանքի և հանգստի, ուր իրենց արձակուրդներն են անցկացնում 10,5 միլիոն պիոներներ ու դպրոցականներ: Աճել է առողջարանային տիպի պիոներական ճամբարների ցանցը, որոնք մեծ դեր են խաղում երեխաների առողջության ամրապնդման գործում:

Սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարելավումը, կուլտուրական մակարդակի բարձրացումը, բժշկական սպասարկման մշտական կատարելագործումը հնարավորություն ընձեռեցին նվազեցնելու մանկական մահացությունը: Այս ամենը, անշուշտ, ձեռնարկվում է առողջ, գործունյա երեխաների, մեր հասարակության պիտանի անձնավորությունների ձևավորման նպատակով: Իսկ ֆիզիկապես և հոգեպես նորմալ, առողջ մարդ դառնալու համար շատ կարևոր է, որ երեխան առողջ ծնվի. մեր երկրում լիովին ապահովված է ծննդաբերությունը ստացիոնար պայմաններում: Այս ասպարեզում մեծ է ծննդատների, կանանց և մանկական կոնսուլտացիաների, պոլիկլինիկաների դերը: Դրանք լայն բացատրական աշխատանք են ծավալում հղիության, նախածննդաբերության շրջանում մոր ապրելակերպի, սնման, բուժման, աշխատանքային ու հանգստի ռեժիմի պահպանման, վնասակար սովորույթներից խուսափելու և այլնի վերաբերյալ:

Առողջ երեխայի ծննդյանը և մոր կյանքի ու առողջության պահպանմանն է ծառայում մոր և մանկան պաշտպանության սովետական սիստեմը: Որտե՛ղ էլ ապրելիս լինի ապագա մայրը, մեծ քաղաքում թե հեռավոր գյուղում, նա ծննդաբերում է ծննդատանը և ստանում անվճար բուժօգնություն: Կյանքի առաջին շաբաթը երեխան անց է կացնում ծննդատանը, ապա նրա խնամքին ու առողջության պահպանությանն ամենայն հոգածությամբ հսկում են պոլիկլինիկայի մանկաբույժն ու այլ բժիշկներ, օգնում ծնողներին՝ ճիշտ հունով վարելու մանկան բնականոն աճման, զարգացման գործը:

ՍՄԿԿ ԿԿ-ի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ «Ժողովրդական առողջապահության հետագա բարելավման միջոցառումների մասին» որոշման մեջ պետական կարևորագույն խնդիր է համարվում կանանց և երեխաների առողջության պահպանությունը: Պրոֆիլակտիկ միջոցներ կձեռնարկվեն առողջ մանկան դաստիարակության նպատակով: Կփոքրացվեն մանկաբույժների սպասարկած տեղամասերը: Կմեծանան ծննդատների և մանկական հիվանդանոցների՝ սննդին ու դեղորայքին հատկացվող միջոցները, կավելանան կրծքի և նախադպրոցական երեխաների սննդատեսակները: Այս տարի Մոսկվայում կբացվի մոր և մանկան պահպանության համամիութենական գիտահետազոտական կենտրոն:

Սովետական պետությունն ընդլայնում է կանանց արտոնությունները, օրենքն արգելում է աշխատանքից ազատել հղի, կերակրող, մինչև մեկ տարեկան երեխա ունեցող կանանց: ՍՄԿԿ XXV համագումարի որոշմամբ նախատեսված է աշխատող կանանց համար սահմանել մասնակիորեն վճարովի արձակուրդ՝ մինչև մեկ տարեկանը երեխային խնամելու նպատակով, հնարավորություններ ստեղծել, որպեսզի երեխաներ ունեցող կինն աշխատի ոչ լրիվ աշխատանքային օր կամ շաբաթ, իսկ անհրաժեշտության դեպքում՝ տանը: ՍՍՀՄ Գերագույն սովետի առաջարկությամբ արտադրական կոլեկտիվների սոցիալական զարգացման պլաններում կնախատեսվի «կնոջ առողջապահության» հատուկ բաժին:

Մեր երկրում մայրության և մանկության պաշտպանության հարցերով զբաղվում են 25 գիտահետազոտական ինստիտուտներ, քաղաքներում ու գյուղերում՝ 20 հազարից ավելի մանկական պոլիկլինիկա և բուժտեղամաս: Տարեցտարի ընդլայնվում է մանկական հիվանդանոցների ցանցը: Այժմ երկրում գործում են 120 հազար մանկապարտեզ և մանկամսուր: Անցած տարի 23 միլիոն երեխաներ ու դեռահասներ հանգստացել են պիոներական և դպրոցական ճամբարներում, էքսկուրսիոն-տուրիստական բազաներում: Սեզոնային մանկական հիմնարկություններն սպասարկել են հինգ միլիոն երեխայի, որից երկու միլիոնը՝ նախադպրոցական հասակի: Անցած իններորդ հնգամյակում միայն արհմիությունները սոցիալական ապահովության միջոցներից 250 միլիոն ռուբլի են հատկացրել երեխաների հանգստի կազմակերպմանը:

Մեր երկրում ավելի քան 45 միլիոն երեխաներ հաճախում են դպրոց: 1978 թվականից առաջին դասարանցիներն անվճար ստանում են դասագրքեր: Երեխաների համար ո՛չ միայն սովորելը և կրթություն ստանալը, այլև դրանց պարտադիր լինելը վավերացված է ՍՍՀՄ Սահմանադրությամբ:

Ծավալուն աշխատանքներ են նախատեսված մեր հանրապետությունում: Առավել մեծ ուշադրություն կնվիրվի երեխաների բուժսպասարկման, դիսպանսերային հետազոտությունների որակի բարձրացմանը: Դրան կնպաստեն հանրապետության խոշոր քաղաքներում գումարվող մանկաբույժների՝ այդ հարցերին նվիրված գիտագործնական կոնֆերանսները: Այս տարի կհրավիրվի նախադպրոցական հիմնարկությունների երեխաների բուժսպասարկմանը նվիրված գիտագործնական կոնֆերանս. Երևանում տեղի կունենա Հայաստանի մանկաբույժների III համագումարը, ուր կմշակվեն մեր հանրապետության երեխաների բուժսպասարկման հետագա բարելավման ուղիները: Կավարտվի 300 մահճակալանոց հիվանդանոցի կառուցումը Երևանում:

Սակայն այժմ էլ մենք ստիպված ենք ասել, որ աշխարհի շատ երկրներում բազմահազար երեխաներ զրկված են ապրելու տարրական

պայմաններից, մանուկ հասակում մահանում են թերսնման, սովի պատճառով: Երեխաների կրթության ու դաստիարակության գործին մեծապես վնասում է ռասայական խտրականությունը: Աշխարհի առաջադեմ մարդկությանը վշտացնում է այն փաստը, որ դեռևս կան անօթևան, ապագայազուրկ երեխաներ, որ Լատինական Ամերիկայի երկրներում ամեն 30 վայրկյանում ծնունդից մահանում է մեկ երեխա, զարգացող երկրներում միլիոնավոր մանուկներ մահանում են սովից, որ լիբանանցի և պաղեստինցի երեխաները զոհ են դառնում իսրայելական ագրեսորների գնդակոծություններին:

Մենք չենք կարող հանգիստ լինել, երբ տնտեսապես զարգացած կապիտալիստական երկրներում աշխատուժի չորս տոկոսը կազմում են 10—14 տարեկան երեխաները: Մենք չենք կարող աշխարհը գեղեցիկ համարել այն դպրոցահասակ երեխաների համար, որոնք դեռևս հնարավորություն չեն ունեցել նստել դպրոցական սեղանի առջև, երբ 40-ից ավելի երկրներում կրթության պարտադիր լինելու մասին օրենք չկա, երբ ռազմական մրցավազքը իր քուրայում այրում է օրական մեկ միլիարդ դոլարի միջոցներ, որոնք կարող էին ծառայել դպրոցների, հիվանդանոցների, բնակարանների կառուցման, սննդի արտադրության ընդլայնման մարդասիրական նպատակներին:

Մանկան միջազգային տարի անցկացնելու վերաբերյալ ՄԱԿ-ի որոշումը հնարավորություն է ընձեռում մարդկության ուշադրությունը բևեռելու ամբողջ աշխարհում երեխաների վիճակի բարվոքման վրա, կոչ է անում զարգացած երկրներին՝ կամավոր մուծումներ կատարել հօգուտ երեխաների շահերի: ՄԱԿ-ի մասնագիտացված հիմնարկությունների ներկայացուցիչներից կազմված կոնսուլտատիվ խմբի գործունեությունը ևս ծառայում է այդ նպատակին:

Սոցիալիստական երկրներում երեխաների նկատմամբ հոգատարությունը պետական գործ է, ուր ՄԱԿ-ի ընդունած՝ Մանկան իրավունքների դեկլարացիան կենսագործվում է ծրագրված և պլանային կարգով, սիստեմատիկաբար միջոցառումներ են իրականացվում աճող ընտանիքների ու երեխաների պահանջների բավարարման համար:

Սովետական պետությունը գործադրում է բոլոր միջոցները երեխաների ապահով, բարեկեցիկ մանկության ապահովման, ուսուցման առավել լավ կազմակերպման, ստեղծագործական կարողությունների ու տաղանդի զարգացման համար:

Երեխաները մեր ապագան են: Մանկությունը մարդկության վաղվա օրն է: Ահա ինչու Մանկան միջազգային տարին մենք համարում ենք ո՛չ միայն երկրագնդի բոլոր առաջադիմական ուժերի համախմբման տարի՝ ընդդեմ սովի ու զրկանքի, մանկական մահացության, ռասայական և սոցիալական նվաստացման, այլև՝ հանուն խաղաղության, մարդկության լավագույն ապագայի մղվող պայքարի տարի:

**Վ. Ա. ԱՍՏՎԱԾԱՏՐՅԱՆ**
Հայաստանի մանկաբույժների գիտական ընկերության նախագահ, պրոֆեսոր

# ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՊԱԼԱՏԸ ՄԱՆԿԱՆ ՏԱՐՈՒՄ

**ԵՐԵԽԱՆԵՐԻ, ԵՐԻՏԱՍԱՐԴՆԵՐԻ** բոլոր արտոնությունները, դրանք վայելելու պայմանները ու հնարավորությունները նվաճվել են մեր հայրերի ու պապերի պայքարով ու ջանքերով, բոլոր նրանց արյունով, ովքեր զոհվել են հեղափոխական մարտերում, քաղաքացիական կռիվներում, Հայրենական պատերազմի ռազմաճակատներում: Մեր հասարակության այդ արտոնյալ «դասակարգի» ներդաշնակ, համակողմանի դաստիարակության իրականացմանն են կոչված երկրի ուսումնական ու կրթական բազում օջախները, գեղագիտական դաստիարակության, տեխնիկական գիտելիքներ հաղորդելու նպատակով կազմակերպված պիոներական, երիտասարդական ակումբներն ու պալատները, կուլտուրայի տները: Վայրեր են դրանք, ուր դպրոցից դուրս պատանիներն ու աղջիկներն անց են կացնում իրենց հանգստի, ժամանցի պահերը, զբաղվում սիրած ինքնագործունեությամբ: Այդ օջախները ևս իրենց գործունեությունն ի սպաս են դնում պատանեկության, երիտասարդության ձևավորմանը, խթանում նրանց ինքնուրույնության, մտածողության, գեղագիտական ճաշակի զարգացմանը:

Մոտ 60 տարվա պատմություն ունի Երևանի պիոներների պալատը: 1922 թ. մայիսին ընտեղծվեց պատանի կոմունարների տունը, ուր հավաքվում էին մոտ 300—400 պատանի կոմունարներ: Այն ուներ թատերական, սպորտային, գեղանկարչական, պարի խմբակներ. քաղաքի պատանի կոմունարների հպարտությունն էր փողային նվագախումբը: Տունը մի յուրօրինակ հավաքատեղի էր, որտեղ տարբեր խմբակների պարապմունքներին զուգընթաց կազմակերպվում էին նաև դասախոսություններ, զրույցներ, բանավեճեր: Աստիճանաբար ստվարացան պատանի կոմունարների շարքերը: Նրանց տրամադրվեց ավելի հարմարավետ մի շենք: Այն Գ. Ղուկասյանի անվան պատանի պիոներների ու դպրոցականների պալատն է՝ հինգ հազարից ավելի սաներով: Գործում են նոր շատ խմբակներ՝ ավիամոդելիստների, ֆոտոյի, ռադիոսիրողների, նավամոդելիստների, քիմիայի, հմուտ ձեռքերի և այլն:

Պատանիներն ըստ իրենց նախասիրությունների և ունակությունների մասնակցում են պալատի 260 ուսումնական խմբերի և պիոներական ակտիվի ակումբների պարապմունքներին:

Կարևոր նշանակություն է տրվում երեխաներին և անչափահասներին գաղափարական ու քաղաքական վեհ հատկանիշներով, ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների բարեկամության զգացումով օժտելու գործին:

Պալատի ինտերնացիոնալ բարեկամության կաբինետը և նրա «Կարմիր վզկապավորների» ինտերնացիոնալ ակումբը սերտ նամակագրական կապեր են հաստատել Սովետական Միության եղբայրական բոլոր հանրապետությունների, ինչպես և սոցիալիստական երկրների մայրաքաղաքների պիոներական պալատների հետ: Բարեկամության ակումբի երեխաները կազմակերպել են Մանկան տարվա ինտերնացիոնալ կապի փոստային բաժանմունք և բազմաթիվ նամակներ, հուշանվերներ, նկար-բացիկներ, տոն օրերի շնորհավորանքներ են ուղարկում իրենց պատանի բարեկամներին, ընտանում պատասխան նամակներ, փոխադարձ շնորհավորանքներ: Ինտերնացիոնալ բարեկամության կաբինետի և ակումբի նախաձեռնությամբ, փետրվարի 8-ին, պալատի մեծ դահլիճում կազմակերպվեց քաղաքային հավաք՝ նվիրված պատանի հերոսի օրվան: Մայրաքաղաքի պատանի ինտերնացիոնալիստների անունից հավաքը կոչ ուղղեց հանրապետության և մայրաքաղաքի պիոներ-դպրոցականներին՝ Մանկան տարում առավել ծավալելու ինտերնացիոնալ աշխատանքը դպրոցներում և պիոներական դրուժինաներում, շաբաթօրյակների, երկաթի ջարդոնի, թղթի թափոնի հավաքման և հանձնման միջոցով ստեղծելու ֆոնդ Հանոյի պիոներների պալատի կառուցման համար:

Այդ նպատակին է ծառայել նաև պիոներների պալատի գեղարվեստական ինքնագործ խմբերի ուժերով տրված համերգը, որից ստացված 290 ռուբլին ուղարկվել է սոցիալիստական Վիետնամի մայրաքաղաքը: Պալատի գեղարվեստական բաժնի ինքնագործ խմբերի երեխաները պատրաստում են Մանկան տարվան նվիրված ներկայացումներ, համերգներ, որոնցից ստացված գումարները ևս հատկացվում են սոցիալիստական Վիետնամի երեխաներին:

Պալատի գիտատեխնիկական և կինո-ֆոտո ստուդիաները մեծ ոգևորությամբ նախապատրաստվում են մասնակցելու միջազգային, միութենական և հանրապետական՝ «Թող միշտ լինի արևը», «Ես տեսնում եմ աշխարհը», «Երեխաները մեր ապագան են» գեղանկարչական և ֆոտոնկարների ցուցահանդեսներին ու մրցույթին: Նրանք արդեն վերը նշված թեմաներով ցուցահանդեսներ են բացել տիկնիկային թատրոնի նախասրահում՝ լուսանկարչական 160 նկարներով, ճարտարապետների տան ցուցասրահներում՝ գեղանկարչական 140 կտավներով:

Այդ նույն ստուդիաները, պալատի շրջակայքում, ինչպես նաև Պատանի հերոսների անվան այգում ցուցադրեցին իրենց գեղանկարչական ու լուսանկարչական ստեղծագործությունները, իսկ այգու ասֆալտապատ հրապարակներում կազմակերպվեց «Ես տեսնում եմ աշխարհը» նշանաբանով կավճանկարների մրցույթ-ստուգատես: Պատանի գրքասերների ակումբի նախաձեռնությամբ մայիսի 12-ին պալատի մեծ դահլիճում կազմակերպվեց մայրաքաղաքի պատանի գրքասերների հանդիպում-հավաք սովետահայ բանաստեղծների հետ: Հավաքից մի քանի շաբաթ առաջ պատանի գրքասերները հատուկ նամակով դիմեցին սովետահայ բանաստեղծներին՝ խնդրելով այդ հանդիպումը ներկայանալ մեկական ստեղծագործությամբ: Շատ բանաստեղծներ սիրով արձագանքեցին գրքասերներին: Ստացված բանաստեղծությունները հանձնվեցին կոմպոզիտորներին՝ դրանց համար մեղեդի հորինելու նպատակով: Պատանի գրքասերները պատրաստվում են մի նոր հավաքի, որին մասնակցելու են և՛ բանաստեղծները, և՛ կոմպոզիտորները: Այստեղ կհնչեն Մանկան տարվա առթիվ գրված բանաստեղծություններ, երգեր:

Սովետահայ բանաստեղծների ու կոմպոզիտորների ստեղծագործությունները, որ Մանկան տարվա առթիվ ստեղծվել են պատանի գրքասերների խնդրանքով, լույս կտեսնեն առանձին գրքույկով՝ «Մանուկները մեր ապագան են» խորագրով: Հետևելով իրենց ավագ բարեկամներին՝ սովետահայ բանաստեղծներին, պալատի գրական խմբակը, թվով 20—25 պատանի ստեղծագործողներ, որոշել են պատրաստել նույն խորագրով Մանկան տարվան նվիրված ստեղծագործությունների ձեռագիր ալմանախ:

Պիոներների պալատի մեթոդական կաբինետի նախաձեռնությամբ Շահումյանի շրջանի 150 մանկապարտեզներում կազմակերպվեց «Թող միշտ լինի արևը» նշանաբանով մանկան տոն, որին մասնակցում էին ավելի քան 400 երեխաներ:

Պիոներական դրուժինայի խորհրդի նախագահների քաղաքային «Խարույկ» ակումբը, որի ստեղծման 15-ամյակը լրացավ հունվարին, կազմակերպեց յուրօրինակ ռոմանտիկ միջոցառում: Ակումբի այսօրվա սաները նրա վետերանների հետ միասին կազմակերպեցին «Խարույկ»-ի թոռնիկների տոն՝ «Մենք Լենին պապիկի թոռնիկներն ենք» նշանաբանով: Ակումբին կից գործող փափուկ խաղալիքների ֆաբրիկան այդ տոնի առթիվ պատրաստել է զանազան խաղալիքներ: Մանկան տոնն անցավ բովանդակալից և ուսանելի: Այն անջնջելի կմնա տոնի մասնակիցների հիշողության մեջ:

Ինտերնացիոնալ բարեկամության կաբինետը, ինչպես նաև «Խարույկ» ակումբի ու պիոներական ակտիվի մյուս ակումբներն ու ուսումնական խմբերը նախապատրաստական աշխատանք են տանում Մանկան տարվան նվիրված ինտերնացիոնալ բարեկամության հավաք անցկացնելու նաև արտասահմանցի ուսանողների հետ, հանձնելու նրանց մեր երեխաների պատրաստած նվերները՝ իրենց ընտանիքների փոքրիկներին ուղարկելու համար:

Քաղաքային պիոներների պալատի ակումբների նախաձեռնությամբ այս տարի Ծաղկաձորի, Հանքավանի և Սևանի պիոներական ճամբարներում բացվելու են պիոներական ակտիվի դպրոցներ, ուր ավագ պիոներ հրահանգիչները ակտիվին կծանոթացնեն Մանկան տարվա առթիվ ձեռնարկվող միջոցառումներին: Նրանց ղեկավարությամբ, պիոներական ակտիվի մասնակցությամբ բոլոր ճամբարներում անց են կացվելու շքեղ պիոներական խարույկներ՝ «Մանուկները երկրի ապագան են» նշանաբանով:

Հենց վերջերս ավարտված պիոներ դպրոցականների պատանի ավտոմոդելիստների հանրապետական մրցությունում մեր պալատի պատանի ավտոմոդելիստներից (ղեկ.՝ Կ. Հարությունյան) չորս հոգի տարբեր ձևերում դարձան հանրապետության չեմպիոններ և նվաճեցին Մանկան տարվա գավաթը: Պատանի ավիամոդելիստներն ու ծովամոդելիստները, ավտոմատիկայի և տելեմեխանիկայի խմբերը պատրաստվում են Երևանի Կարապի լճի վրա անցկացվելիք ցուցադրական մրցումներին: Այդ առթիվ սահմանված են հատուկ մրցանակ և պատվոգրեր: Ավիամոդելիստական և ծովամոդելիստական խմբերը պատրաստվում են հանրապետական և համամիութենական մրցումներին:

Պիոներների պալատում գործում են կար ու ձևի 14 ուսումնական խմբեր, որոնք ակտիվ պատրաստվում են տարվա համար նախատեսված ստուգատես-մրցույթին, որին կմասնակցեն ավելի քան 120 պատանի կարող-ձևողներ:

Հատուկ աշխատանքներ են տարել և տանում պալատի գեղարվեստական ինքնագործ խմբերը, պարային և երաժշտական անսամբլները, ասմունքի խմբերը, ձեռագործի և քանդակագործական խմբերը, որոնց ուսուցանում և ուղղություն են տալիս հմուտ, բազմավաստակ մանկավարժներ՝ հանրապետության վաստակավոր արտիստուհի Ռոզա Ավագյանը, Հովսեփ Շամամյանը, Հրանուշ Տայանը, Ժենյա Մելքոնյանը և ուրիշներ:

Պալատն ամեն տարի ամփոփում է ուսումնական խմբերի երեխաների ստեղծագործական աշխատանքները և դրանք ցուցադրում մշտական գործող ցուցահանդեսում: Այս տարի ևս այցելուները կարող են ծանոթանալ տարբեր բովանդակությամբ մոտ 1.200 ստեղծագործությունների:

Պիոներական դրուժինաների խորհրդի նախագահների քաղաքային «Խարույկ» ակումբը կազմակերպելու է բարեկամության փառատոն՝ եղբայրական հանրապետությունների պատվիրակների մասնակցությամբ: «Երկու աշխարհ, երկու մանկություն» թեմայով բարեկամության այդ փառատոնը կտևի մեկ շաբաթ:

Կազմակերպվող համամիութենական պիոներական երթին, «Պիոներներն ամբողջ երկրի հավատարիմ են գործին Լենինի» նշանաբանով, կմասնակցի և մեր պալատը. այդ առթիվ նախապատրաստական լայն աշխատանքներ են տարվում մեզ մոտ:

Հանրապետության արտադպրոցական բոլոր հիմնարկությունների հետ մեկտեղ Երևանի քաղաքային պիոներ-դպրոցականների պալատը մեծ ոգևորությամբ, ստեղծագործական նորանոր հաջողություններով ու հետաքրքրական միջոցառումներով կանցկացնի Մանկան տարին: Ինչպես միշտ, այսուհետ ևս պիոներների մեր պալատը մատաղ սերնդին կդաստիարակի ավագ սերնդի հեղափոխական ու աշխատանքային մարտական ավանդույթներով, ջանք չի խնայի կոմունիստական շինարարության ակտիվ մասնակիցներ պատրաստելու համար:

**Ս. Մ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ**

Հայկական ՍՍՀ վաստակավոր ուսուցիչ,
Երևանի Դ. Ղուկասյանի անվան պիոներ-դպրոցականների պալատի դիրեկտոր



# ԵՐՋԱՆԻԿ ՄԱՆԿՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**ՓՈՔՐԻԿԸ ՁԵՌՔԵՐԸ** մեկնել է մեծին... Առաջին քայլերն անելու, կյանքում իր տեղը գտնելու համար նրան պետք են ուժե՛ղ ձեռքեր, մեծի՛ ձեռքեր:

Այս է Մանկան միջազգային տարվա խորհրդանշանը. այն հիշեցնում է ծնողական համերաշխությամբ միավորված մարդկանց, որ պարտք ունեն աշխարհի երեխաների հանդեպ...

աճող սերնդի հանդեպ...

երկրագնդի և մարդկության ապագայի՝ երեխաների հանդեպ:

Մեկ միլիարդ 500 միլիոն երեխա է ապրում աշխարհում: Մոլորակի ազգաբնակչության 36 տոկոսը:

ՄԱԿ-ի մանկական ֆոնդի տվյալներով, ոչ սոցիալիստական գոտում հարյուր միլիոնավոր երեխաներ ապրում են սարսափազդու պայմաններում:

Քառորդ միլիարդ երեխաներ տառապում են քաղցից ու հիվանդություններից:

Աշխարհում այսօր հաշվվում է 200 միլիոն քաղցած երեխա, որից տասը միլիոնը դատապարտված է վաղաժամ մահվան, որովհետև սիստեմատիկ թերսնվում է:

Զարգացող երկրներում ամեն կես րոպեն մեկ ծնվում է 100 երեխա, որից քսանը մեռնում է՝ մեկ տարվա չհասած:

Բժշկական օգնության բացակայությունը Լատինական Ամերիկայում խլեց 7,5 միլիոն երեխայի կյանք...

Մանկական տարիներին է, որ երեխան սկսում է ճանաչել աշխարհը, իր ըմբռնումների պրիզմայով անցկացնել մարդկության հասումները, ընկալել ու յուրացնել քաղաքակրթության նվաճումները, ընդ որում, ո՛չ պասիվ, նաև մասնակից դառնալ առաջընթացին, մի քայլ ևս առաջ մղել այն, ինչի կոչված է սերունդը. այլապես անհնար կլիներ մարդկության առաջընթացը: Սակայն, որքան էլ պարադոքսային թվա, այժմ, երբ գիտության վիթխարի նվաճումների շնորհիվ ստեղծված տեխնիկան գործարկող մարդիկ են հարկավոր, աշխարհում հետզհետե ավելանում է անգրագետների թիվը: 800 միլիոն մարդ աշխարհում գրել-կարդալ չգիտե, իսկ դա կազմում է տնտեսապես ակտիվ ազգաբնակչության 60 տոկոսը: Վա՞ղը... Վաղն այդ թիվն ավելի կմեծանա, որովհետև այսօր արդեն 300 միլիոն դպրոցահասակ փոքրիկներ չեն հաճախում դպրոց: Նրանք ստիպված են իրենց հացը վաստակել պլանտացիաներում ու փողոցներում...

54 միլիոն են նրանք՝ փոքրիկ հողագործները ու սպասարկուները, ժամանակից շուտ ծերացած, տխուր աչքերով այդ «աշխատավորները», միլիոնավոր գործազուրկ ընտանիքների փոքրիկ կերակրողները:

Գործազրկության ահավոր հետևանքներն ուղեկցում են ո՛չ միայն զարգացող երկրների երեխաներին: Արևմտյան Եվրոպայում ու ԱՄՆ-ում 8—15 տարեկան հարյուր հազարավոր երեխաներ օրական բանում են 10—12 ժամ: Եվ դա այն ժամանակ, երբ նրանց հայրերն ու մայրերը տարիներով աշխատանք են որոնում և, չգտնելով, ինքնասպան են լինում, իրենց հետ ոչնչացնելով և փոքրիկներին: Գործատերերին ձեռնտու է մանկական աշխատուժը. այն խնայողաբեր է, նաև ազատում է արհմիությունների, հարկային ու ապահովագրական ընկերությունների հետ գործ ունենալու գլխացավանքից:

Ահռելի չափերի են հասնում բուրժուական աշխարհի բնույթից բխող փոքրիկ հանցագործների ու թմրադեղեր օգտագործողների թիվը:

Կապիտալի աշխարհում մարդու արժեքի չափանիշը ուրիշներին շրջանցելու օրենքն է. «Ոչ ոքի չգիջելու», արմունկներով իր համար տեղ բացելու կանոնները փոքրիկ ճապոնացին սերտում է առաջին իսկ դասարանից:

Աշխարհի երեխաների ներկա վիճակը, տագնապը երեխաների կյանքի ու առողջության, պատասխանատվությունը նրանց ապագայի համար Միավորված ազգերի կազմակերպությանը մղեց 1979 թ. հայտարարել **ՄԱՆԿԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏԱՐԻ**. այս տարի լրանում է և Մանկան իրավունքների դեկլարացիայի 20-ամյակը: Տարվա հռչակումը հետապնդում էր հույժ կարևոր նպատակներ— երկրագնդի հասարակայնության ու կառավարությունների ուշադրությունը հրավիրել ժամանակի սոցիալական սուր պրոբլեմներից ամենասուրի՝ երեխաների դրության բարելավման վրա. ապահովել անհրաժեշտ պայմաններ երեխաների շահերի պրոպագանդման համար, որպեսզի այն մարդիկ, ովքեր պատասխանատու են որոշումներ ընդունելու գործում, ավելի խոր գիտակցեն երեխաների պահանջները. օգնել ընդունելու այն փաստը, որ երեխաների համար կազմվող ծրագրերը պետք է հանդիսանան տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների բաղկացուցիչ մասը, ընդ որում՝ ոչ միայն երկարաժամկետ— ասված է բանաձևում:

Մանուկներին պաշտպանելու կոչը լայն արձագանք գտավ աշխարհում: Գոհունակությամբ ընդունելով այն՝ ՍՍՀՄ Գերագույն սո-

վետի նախագահությունը հատուկ որոշում կայացրեց Մանկան տարվա վերաբերյալ: Այլ կերպ չէր էլ կարող լինել, որովհետև հոգատարությունը երեխաների նկատմամբ մեզ մոտ համարվում է պետական նշանակություն ունեցող գործ:

«Միավորված ազգերի կազմակերպությունը, որը միավորում է աշխարհի գրեթե բոլոր պետություններին, որոշել է 1979 թ. հռչակել Մանկան տարի: Սա շատ լա՛վ, ճիշտ որոշում է: Չէ որ մանուկները մեր ապագան են»:— Նոր տարվա առթիվ շնորհավորելով աշխարհի երեխաներին՝ ասաց ընկ. Լ. Ի. Բրեժնևը:

...Ամեն վայրկյան երեք երեխայի ճիչ է լսվում այս հին ու նոր աշխարհում: Ծնողների ուրախությունն է երեխան, ապագա քաղաքացին իր երկրի, որի բախտով պետք է շահագրգռված լինի ողջ հասարակությունը:

Երեխան պետք է ունենա երջանիկ մանկության իրավունք և ազատություն:

Յուրաքանչյուր երեխա, առանց բացառության, պետք է իրականացնի իր իրավունքը՝ առանց ռասայի, մաշկի գույնի, սեռի... քաղաքական հայացքների... սոցիալական ծագման, սեփականության տարբերության ու խտրության— հռչակում է Դեկլարացիայի տասը սկզբունքներից առաջինը:

Երեխան պետք է օգտվի հատուկ պաշտպանությունից, մտավորապես, ֆիզիկապես ու հոգեպես զարգանալու համար: Այդ նպատակով պետք է ապահովվի ինչպես մանկան, նույնպես և նրա մոր հատուկ պաշտպանությունը:

Մանկանը չի կարելի թույլ տալ աշխատել, մինչև նվազագույն տարիքի հասնելը, որպեսզի չխաթարվի նրա զարգացումը...

Յուրաքանչյուր երեխա պետք է պաշտպանված լինի այն պրակտիկայից, որը խրախուսում է ռասայական խտրականությունը... պահանջում էր Դեկլարացիան, կառավարություններին կոչ անում՝ լարել ջանքերը ազգային և միջազգային մասշտաբով՝ ապահովելու երեխաների կայուն բարեկեցությունը:

...Յուրաքանչյուր երեխա, առանց բացառության:

Խտրականության ամոթալի ռեժիմի պայմաններում Հարավ-Աֆրիկյան հանրապետությունում, Նամիբիայում, Զիմբաբվեում յուրաքանչյուր 300 երեխայից 52-ը մեռնում է՝ չհասած մեկ տարվա. նրանց համար տեղ չկա հիվանդանոցներում: Ռոդեզիայում 13—14 տարեկան սևամորթները հարկադիր աշխատանքի են քշվում սպիտակամորթների ֆիրմաները: Ծանր աշխատանքը, քաղցը, վերակացուների ծեծը կրճատում են նրանց կյանքը: 20 տարի առաջ ԱՄՆ-ում օրենքով վերացվեց ազգային խտրականությունը դպրոցներում, բայց դա չխանգարեց մոլի ռասիստներին՝ թույլ չտալու, որ սև ու սպիտակամորթ երեխաները նստեն նույն նստարանին:

Մարդը ճեղքեց ատոմը, նվաճեց տիեզերքը, ստեղծեց մտածող մեքենաներ, կուլտուրական արժույթներ: Այսօրվա երեխաները ժառանգորդներն են մարդկության ստեղծածի, վաղվա քաղաքացիները: Նրանք պետք է յուրացնեն եղածը, կատարելագործելու համար ըստեղծվածը, նոր թռիչքների հասցնելու մարդկային միտքը: Իսկ այդ հնարավոր է միայն սոցիալական այն կարգի պայմաններում, երբ ամեն ինչ՝ գիտության, տեխնիկայի ու կուլտուրայի նվաճումներն ի սպաս են դրվում աշխատավորական լայն զանգվածներին, տվյալ դեպքում՝ աճող սերնդին, երբ հնարավորություն է ընձեռվում «օրենքով և հնարավոր բոլոր միջոցներով» զարգացնելու նրանց ունակությունները: Այս առումով XX դարի երեխաների ճակատագրում արտացոլվում են դարի բոլոր առանձնահատկությունները՝ թե՛ հակասությունները և թե նվաճումներն ու հաղթանակները:

Երկու աշխա՛րհ, երկու մանկությո՛ւն:

Դա խոստովանում են նաև սոցիալիզմի գաղափարական թշնամիները:

Ասում են՝ «Նրանով, թե երկիրն ինչպես է հոգում երեխաների մասին, կարելի է դատել նրա հասարակական բարեկեցության մակարդակի, պետական կարգի հումանիզմի մասին»:

Սովետական իշխանության հաստատման առաջին իսկ օրերից մոր և մանկան պաշտպանությունը, հոգատարությունը երեխաների նկատմամբ դարձան կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության պետական քաղաքականության սկզբունքներից մեկը:

Հոկտեմբերի հաղթանակի 3-րդ ամսում ըստեղծվեց Մանկության պաշտպանության հանձնաժողով: 1919 թ. փետրվարին Լենինը ստորագրեց Երեխաների պաշտպանության խորհուրդ ստեղծելու դեկրետը: Հոկտեմբերի 7-ին հրապարակվեց նոր որոշում՝ երկրում «Մանկական շաբաթ» անցկացնելու մասին: Ժողովուրդների բարեկամության աննախադեպ դրսևորումն էր այդ, նպատակը՝ օգնել սովետական եղբայրական հանրապետությունների կարիքավոր երեխաներին:

Երկիրը նոր էր սովետականացել, և շատ էին կարոտյալները: Չքավոր երեխաներին տրվում էին ձրի սնունդ, կոշիկ: Ստեղծվեց արտակարգ հանձնաժողով, որն զբաղվում էր անապաստանության լիկվիդացմամբ: Լայն ճակատով պայքար ծավալվեց անգրագիտության դեմ, կառուցվեցին դպրոցներ, բացվեցին ման-



կապարտեզներ, ծննդատներ, կանանց և մանկական կոնսուլտացիաներ:

Դեռևս սովետականացման առաջին տարիներին այնքան բան արվեց երեխաների համար, որքան չէր արել բուրժուական և ո՛չ մի պետություն իր ողջ գոյության ընթացքում: «Ամենայն լավը երեխաներին»— լենինյան պատգամը դարձավ պետական օրենք, սերը երեխաների նկատմամբ՝ սովետական հասարակության բարոյական նորմը:

Իր գոյության վեց տասնամյակների ընթացքում սովետական պետությունը մարդկությանը ցույց տվեց, թե ինչպես կարելի է իրոք հոգալ մայրության և մանկության մասին, ինչպես աճեցնել ներդաշնակ զարգացած, առողջ սերունդ՝ պատրաստ շարունակելու հայրերի սկսած գործը: Դրա վկայությունն են և մեր կուսակցության ու կառավարության վերջին տարիների որոշումները. հղիության և ծննդաբերության համար նպաստ՝ աշխատավարձի լրիվ չափով, անկախ ստաժից, հիվանդ երեխայի համար վճարովի օրերի ավելացում, նպաստներ՝ սակավ ապահովված ընտանիքներին, երեք և ավելի երեխա ունեցողներին՝ ժամանակավոր անաշխատունակության դեպքում 100 տոկոսով աշխատավարձի վճարում...

Մեր երկրում գործում են 120 հազար մսուր-մանկապարտեզ, ուր երեխան ստանում է կոմպլեքս դաստիարակություն: Մանկապարտեզում նա ընտելանում է կոլեկտիվին. այստեղ է դրվում նրա անհատականության ձևավորման հիմքը: Մանկապարտեզից է սկիզբ առնում ապագա քաղաքացին: Մանկապարտեզը մեր 13 միլիոն փոքրիկների համար տանիք չէ սոսկ և սնվելու վայր. այստեղ նրանք սովորում են, կրթվում, նախապատրաստվում դպրոցի:

Հնգամյակի վերջում գործել կսկսեն ևս 2,5 միլիոն տեղով մսուր-մանկապարտեզներ:

Առողջարաններում ու հանգստյան տներում տարեկան բուժվում և հանգստանում են 1,5 միլիոն երեխաներ: Նույնպես ձրի: Գործում են հանգստյան տներ և առողջարաններ՝ ծնողների և երեխաների համար: Հնգամյակի վերջում դրանց թիվը կավելանա ևս 16 հազար տեղով, հասնելով 123 հազարի: Հապա զանազան տիպի պիոներական ճամբարնե՞րը, առողջարանային, տուրիստական բազանե՞րը...

Երեխաների ներդաշնակ զարգացման գործում մեծ է մանկական երաժշտական, նկարչական, պարարվեստի դպրոցների, տիկնիկային թատրոնների դերը: 6.000-ի է հասնում դրանց թիվը: Մեր երկրում և սոցիալիստական մյուս երկրներում պարբերաբար կազմակերպվում են մանկական տոներ՝ մանկական նկարների և գրքի շաբաթներ, կինոյի, երաժշտության, ընթերցանության ցերեկույթներ:

Ներդաշնակ զարգացումն անհնար կլիներ առանց սպորտային, ֆիզկուլտուրային բազաների: 5.956 մանկապատանեկան սպորտդպրոցներ են գործում երկրում: 1980 թ. կբացվեն ևս 270-ը:

«Յուրաքանչյուր մանկան՝ ապահովել երջանիկ մանկություն»— ահա կոմունիստական հասարակարգի կառուցման կարևորագույն խնդիրներից մեկը, գրված է ՍՄԿԿ ծրագրում:

Ըստ էության, մանկության մասին են նաև նոր Սահմանադրության ո՛չ միայն 42, 45, 53, 66 հոդվածները, ուր խոսվում է ընտանիքի մասին, «որ գտնվում է պետության պաշտպանության տակ», երեխայի առողջության պահպանության, ձրի ուսման, մանկան աշխատանքը արգելելու մասին, այլև նրանք, ուր հավաստվում են քաղաքացիների, կնոջ և տղամարդու հավասարության, աշխատանքի, հանգստի իրավունքի, մարդու արժանապատվության, ինտերնացիոնալիզմի սկզբունքները հաստատող հոդվածները:

Մեր երկրում ամենաարտոնյալ դասակարգին՝ երեխաներին, անհրաժեշտ ամեն ինչ արված է, որպեսզի նրանք աճեն առողջ, կարողանան ազատ զարգացնել իրենց ունակությունները:

Դաստիարակության հասարակական սիստեմի կենտրոնը դպրոցն է, ուր երեխան ստանում է ձրի միջնակարգ կրթություն՝ ի հակադրություն կապիտալիստական կրթական սիստեմի: Սովետական դպրոցը ո՛չ միայն իմացության կաճառ է, ուր աշակերտներն ստանում են անհրաժեշտ գիտելիքներ, այլև աշխատասիրությամբ, հումանիզմով, ինտերնացիոնալիզմով ու հայրենասիրությամբ համակելու օջախ:

Իր նորտարյա ողջույնում ընկ. Բրեժնևը ասաց. «Մենք ձգտում ենք երեխաներին սովորեցնել բարություն, սովորեցնել հարգել աշխատանքը և կարողանալ աշխատել ի բարօրություն մարդկանց»:

Դեռահասներին աշխատանքային ունակություններ պատվաստելու, դպրոցից իսկ մասնագիտական ճիշտ կողմնորոշումն իրականացնելու և բանվոր դասակարգին արժանավոր հերթափոխ պատրաստելու համար ստեղծվել է նյութատեխնիկական հզոր բազա: 800 միջդպրոցական ուսումնաարտադրական կոմբինատները, 1.700 ուսումնական արտադրամասերն ու տեղամասերը, հազարավոր ուսումնական կոմբինատներն ու լաբորատորիաներն օգնում են ձեռք բերելու աշխատանքային ունակություններ:

Մեր երկիրը կոչում են երջանիկ մանկու-

թյան երկիր, որի օրինակին հետևում են եղբայրական սոցիալիստական երկրները, շարժելով կապիտալի աշխարհի մարդկանց նախանձն ու զարմանքը: Երկիր, ուր ՄԱԿ-ի Դեկլարացիայի 10 սկզբունքները վաղուց իրականություն են դարձել:

Հասուն սոցիալիզմի երկիրն իր առջև արդեն նոր խնդիրներ է դնում: ՍՍՀՄ-ում ստեղծվել է երեխայի առողջությանը հետևող աշխարհում առաջին գիտական սիստեմը, ուր մանկան մասին հոգում են մինչև նրա ծնվելը: Ընդարձակվում է կանանց և մանկական կոնսուլտացիաների ցանցը, կառուցվում են բազմապրոֆիլ մանկական հիվանդանոցներ, առողջարաններ, դպրոցներ ու մանկապարտեզներ, բացվում են գեղագիտական դաստիարակության կենտրոններ... Գործեր, որ իրականացնել կարող են միայն երեխաներին սիրող, նրանց ապագայով մտահոգվող կուսակցությունն ու կառավարությունը:

Կուսակցության XXV համագումարը տասներորդ հնգամյակի գլխավոր խնդիրը համարեց ժողովրդի կենսամակարդակի բարձրացումը, իսկ այդ նշանակում է ժողովրդական տնտեսության, առողջապահության, կրթության, կուլտուրայի նոր վերելք, որն ապահովում է անձի, այդ թվում՝ աճող սերնդի ներդաշնակ զարգացումը:

Ողջունելով 1979-ը Մանկան տարի հռչակելու ՄԱԿ-ի որոշումը՝ **ՍՄԿԿ** Կենտկոմի գլխավոր քարտուղար, **ՍՍՀՄ** Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. **Լ. Ի.** Բրեժնևը մասնավորապես շեշտեց.

«...Մեր պարտքն է ջանալ, որ բոլոր ժողովուրդների երեխաները պատերազմ չտեսնեն, որ նրանք ունենան անվրդով, ուրախ մանկություն:

Ցավոք, այսօր աշխարհում դեռ շատ տեղերում են որոտում կրակոցները, արյուն է հեղվում և զոհվում են ո՛չ միայն չափահասները, այլև երեխաները...»:

Պատերա՛զմ և երեխանե՛ր: Դժվար է նույնիսկ կողք-կողքի դնել այս երկու բառերը: Կյա՛նք և մա՛հ... Անըմբռնելի, անհամատեղելի համադրություն... Քանի՛-քանի՛ մանկապարտեզներ ու դպրոցներ քանդվեցին հենց միայն վերջերս Վիետնամի վրա չինական ոխտադրուժ հարձակման հետևանքով: Որքա՛ն երեխաներ մնացին ռումբերի տակ, որբացան: 60 հազար երեխաներ Չիլիում զրկվեցին ծնողներից: Մահվան ամենօրյա սարսափ են ապրում պաղեստինյան երեխաները:

Պայքարել երջանիկ մանկության համար՝ նշանակում է պայքարել սպառազինությունների մրցավազքի դեմ, պայմաններ ստեղծել երեխաների նորմալ աճի ու զարգացման համար, նշանակում է պայքար հանուն այն բանի, որ կյանքի ոչնչացմանը հատկացվող բոլոր միջոցները տրամադրվեն մարդկանց, երեխաների համար երջանիկ, անհոգ մանկության ապահովմանը:

Իսկ այդ ծախսերը հսկայական են՝ տարեկան 380 միլիարդ դոլար... Մասնագետները հաշվել են, որ մեկ տարվա համար ծախսվող գումարների չնչին մասն էլ բավական կլիներ 200 միլիոն քաղցած երեխա կերակրելու համար: Մեկ տանկային ստորաբաժանման վարժությունների վրա ծախսվող գումարով կարելի էր գրագիտություն սովորեցնել 16 միլիոն երեխաների...

Մանկան տարին օգտագործել միջազգային հասարակայնությանը մոբիլիզացնելու՝ պայքարելու ընդդեմ սպառազինությունների մրցավազքի. այսպիսի խնդիր են դրել իրենց առջև միջազգային և ռեգիոնալ շատ կազմակերպություններ և ամենից առաջ՝ Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիան՝ Մանկան տարվա նախաձեռնողներից մեկը:

Նույն ֆեդերացիայի առաջարկով որոշվեց 1979 թ. սեպտեմբերին Մոսկվայում հրավիրել երեխաների պրոբլեմներին նվիրված համաշխարհային կոնֆերանս, որին կմասնակցեն երիտասարդական, կանանց, արհմիութենական կազմակերպություններ, ինչպես և **ՄԱԿ**-ը ու նրա մասնագիտացված հիմնարկությունները:

Կատարված գործնական քայլերը վկայում են, թե ինչպիսի նշանակություն են տալիս սոցիալիստական երկրները Մանկան տարվան: Ամենուրեք ստեղծվել են Մանկան տարին անցկացնող կոմիտեներ, որոնք հետաքրքրական ծրագրեր են մշակել՝ նորանոր նվերներով ուրախացնելու մանուկներին:

...Երեխան ձեռքերը մեկնել է մեծին... Ծնողական համերաշխությամբ միավորված միլիոնավոր ազնիվ ձեռքեր կմղվեն դեպի մանուկների աշխարհի՝ պաշտպանելու մարդկության և երկրագնդի ապագան:

**ԱՆԺԵԼԱ ՉԻԼԻՆԳԱՐՅԱՆ**
«Հայաստանի աշխատավորուհի»
ամսագրի գլխավոր խմբագիր



# ՄԱՆԿԱՊԱՐՏԵԶԸ ՆՐԱՆՑ ՏՈՒՆՆ Է

**ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԿՈՆԳՐԵՍՆ ԷՐ** մեծ Պրագայում գեղեցիկ: Պատվիրակների ելույթներից ամենահուզիչը տիկնիկը կրծքին սեղմած վեցամյա աղջնակի ողջույնն էր.

*Ես տիկնիկիս և ինձ համար*
*խաղաղություն եմ ուզում:*

Խաղաղությո՛ւն մանուկներին աշխարհի բոլոր կողմերում: Մեր երկիրը ո՛չ միայն խաղաղություն է ցանկանում, այլև մարտնչում է հանուն խաղաղության: Չէ՛ որ պատերազմի առաջին զոհերը մանուկներն են: Եվ պայքարը խաղաղության համար պայքար է հանուն պայծառ ապագայի, խաղաղ երկնքի տակ երջանիկ մանկության ապահովման: Խաղաղությունն է երջանիկ մանկության գրավականը: Երեխաների լիակատար զարգացումը, ներդաշնակ դաստիարակությունն ու կրթությունը կարող են իրականանալ միայն խաղաղ պայմաններում: Բարու, գեղեցկի, երջանկության սերմերը կարող են ծլարձակել միայն խաղաղ հողում: Խաղաղություն են տենչում բոլոր բարյացակամ մարդիկ և, իհարկե, նաև նրանք, ում մասնագիտության անվանումը բարդվում է մանուկ բառով— մանկաբույժ, մանկավարժ, մանկական գրող, մանկամսուրի, մանկապարտեզի դաստիարակ, դայակ...

Ծնողների գուրգուրող, հոգացող ձեռքերից բացի մեր երկրում մանուկների ապահով կյանքի մասին հոգում են կուսակցության ու պետության մանկասեր ղեկավարները: Այդ հոգածության դրսևորումներից են ամենուրեք գործող մանկամսուրներն ու մանկապարտեզները, դպրոցները, մանկական ամենատարբեր հաստատությունները, ուր ամեն ինչ արվում է, որպեսզի մանուկները մեծանան առողջ, խելացի ու բարեկիրթ, դաստիարակվեն ինչպես հարկն է, մեծանան իբրև մեր երկրի լիիրավ քաղաքացիներ, կոմունիստական գաղափարների արժանավոր կրողներ:

Նոր տարվա իր շնորհավորական ողջույնում **ՍՄԿԿ** Կենտկոմի գլխավոր քարտուղար, **ՍՍՀՄ** Գերագույն սովետի նախագահության նախագահ **Լ. Ի.** Բրեժնևն այսպես բնորոշեց սովետական եեխաների դաստիարակության հիմնական նպատակը. «Մենք ձգտում ենք երեխաներին բարություն սովորեցնել... սովորեցնել հարգել աշխատանքը և կարողանալ աշխատել բոլոր մարդկանց երջանկության համար»: Այս կարևոր, խորապես մարդասիրական գործին են ծառայում մեր երկրի բոլոր մանկամսուրներն ու մանկապարտեզները:

Երևանյան լճի մոտ, աղմուկից հեռու, զով անտառեզրին է գտնվում մեր գիշերօթիկ երկարօրյա մանկամսուր-մանկապարտեզը. երկհարկանի, հարմարավետ մեծ շենք, ընդարձակ, զովաշունչ բակ... Ամեն երկուշաբթի ծնողների հետ մանկապարտեզ են գալիս մեր սաները. բացվում է դուռը, և դաստիարակչուհիներն ու դայակներն ընդունում են նրանց: Հասարակական, մարդկային առաջին կոլեկտիվն է այս, ուր մանուկները ոտք են դնում թոթով լեզվով, երերուն քայլերով: Եվ այնպե՛ս կարևոր է, որ կոլեկտիվ մուտք գործելու առաջին իսկ պահից երեխան զգա՝ երբ ինքը թողնում է սիրելի մայրիկի կամ հայրիկի ձեռքը, այն բռնում են նույնքան հոգատար, գուրգուրող դայակն ու դաստիարակը:

Մանկապարտեզն իրոք մեծ նշանակություն ունի նոր ձևավորվող մարդու դաստիարակության համար: Այստեղ նա սովորում է իր ցանկությունները համարեցնել ընկերների ցանկությանը, նույնիսկ խաղալիք, տնակ կամ կամուրջ կառուցելիս խորհրդակցում է ընկերների հետ, պատրաստում նրանց օգնությամբ. մանկուց իսկ զգում է կոլեկտիվի ուժը, տեսնում, որ իր հետ խաղում, օգնում, իրեն պաշտպանում են սիրող ընկերները, հասակակիցները, և ինքն էլ համակվում է նրանց նկատմամբ սիրով ու վստահությամբ, դառնում նրանց նկատմամբ հոգատար, ուշադիր:

Այսօրվա մանուկը երկրի վաղվա տերն է: Նախադպրոցական երեխայի համար հայրենիքը, թերևս, սկսվում է այն խաղասենյակից, որն այնպես սիրով տրամադրել է նրան երկիրը: Երեխան մանկապարտեզում սովորում է ճանաչել ու սիրել մեր բազմազգ հայրենիքը, ծանոթանում հասարակական կարգուկանոնին, սովորում իր «եսը» ենթարկել «մենք»-ին: Որքան կոփված, դիմացկուն և ամուր լինի ապագա քաղաքացին, այնքան հեշտությամբ նա կհաղթահարի կյանքում հանդիպող դժվարությունները. ուստի և ամեն ինչ արվում է նրա առողջության պահպանման, ֆիզիկական զարգացման ապահովման նպատակով:

Գիշերօթիկ տիպային մեր մանկապարտեզում երեխաներն անցկացնում են շաբաթվա վեց օրը: Խմբասենյակներն ու ննջասենյակները ընդարձակ են, լուսավոր: Բակը կահավորված է խաղասարքերով, այստեղ են անցկացնում երեխաներն օրվա մեծ մասը, իսկ մայիս ամսից նրանք քնում, ճաշում, որոշ պարապմունքներ անցկացնում են բակում: Երեխաների առողջությանը մեծ հոգածությամբ հետևում են բժշկուհի Մարիա Հազարապե-

տովնան ու ավագ բուժքույր Թերմինե Սարգըսյանը: Երեխաների պատշաճ ընդունումն ու հաստատված կարգուկանոնը, բացակայությունների ժամանակին իրազեկ լինելը և հիվանդ երեխայի մեկուսացումը նպաստում են հիվանդությունների տարածման նվազեցմանն ու կանխմանը: Երեխաների առողջության պահպանմանը նպաստում է նաև ֆիզիկական դաստիարակության ճիշտ կազմակերպումը: Ամռանը դրսում, մաքուր օդում, ձմռանը՝ օդափոխված խմբասենյակներում մեր մանուկները, սպորտհագուստով, կատարում են առավոտյան լիցքային վարժությունները: Շոգ օրերին մանկապարտեզի լողավազանում լողանում են, զովանում: Բակով մեկ լսվում են նրանց ճռվողյունը, ուրախ բացականչությունները: Բժշկի խորհրդով լիովին օգտագործվում են մաքուր օդը, արևն ու ջուրը՝ մարդու առողջության պահպանման այդ անհրաժեշտ տարրերը:

Երեխաների դաստիարակության հիմնական միջոցներից է աշխատանքը: Նրանք աշխատում են խմբասենյակում, արհեստանոցում, մանկապարտեզի հողամասում... Որպեսզի աշխատանքը չվանի, հաճելի լինի, այն պետք է համապատասխանի երեխաների կարողություններին: Ուժից վեր գործը կհիասթափեցնի երեխային, կհարուցի անվստահություն իր նըկատմամբ, որը հետագայում կարող է բացասաբար ազդել երեխայի աշխատանքային դաստիարակության վրա: Մեր մանկապարտեզի ավագ և միջին խմբի երեխաներն իրենց հատկացված հողամասերում աճեցնում են այն բույսերն ու ծաղիկները, որոնց պետք է կյանքում ծանոթանան: Այսպիսով, նրանք սովորում են խնամել բույսը, ծաղիկները, պահպանել ու տեսնել իրենց աշխատանքի արդյունքը, իրենց աճեցրած ծաղիկներով զարդարել ճաշասեղանը, ննջասենյակը...

Աշխատանքը մտերմացնում է երեխաներին, որովհետև այն փոխօգնության պահեր է պարունակում, ջերմացնում է մարդու հոգին. չէ՞ որ այլոց համար բարիք ստեղծողը չի կարող բարի չլինել: Ավագ խմբի աղջիկները դաստիարակչուհիներ Աիդա Նասլյանի և Սվետլանա Դավթյանի օգնությամբ սովորում են ասեղնագործել, շյուղերով հյուսել. տղաները՝ աշխատել մուրճով, փոքրիկ բահերով ծաղիկների հողը փխրեցնել... Կառուցողական խաղերը ևս համարվում են աշխատանք, որովհետև այդ խաղերի ընթացքում երեխաներն աշխատանքի ոգևորություն են ապրում. կառուցում են, իրենց շինարար երևակայում և հպարտանում պատրաստած տնակով, կամրջով, խաղահրապարակով...

Մանկապարտեզից սկսած անհրաժեշտ է առավելապես հոգալ այն մասին, որ երեխան գործը չկատարի հլու հնազանդ, սոսկ իբրև պարտականություն, այլ՝ սրտով, զգացմունքով, ցուցաբերի ինքնուրույնություն, ստեղծագործության տարրեր. հարկ է այնպես անել, որ մանուկը չգտնվի այն վիճակում, երբ ոչ ձեռքում գործ կա, ոչ գլխում՝ միտք, քանի որ հենց այդ վիճակում են արմատներ արձակում մտավոր, հոգևոր ու ֆիզիկական անգործությունը, հասարակական մեծագույն չարիքը՝ անտարբերությունը:

Չէ՛ որ բոլոր երեխաները նույնպիսին չեն, նույնչափ չեն ուրախացնում մեզ, կան և չար, քմահաճ մանուկներ. որքա՜ն շատ պետք է սիրել նրանց՝ բոլորի նկատմամբ արդարամիտ լինելու, ճիշտ վերաբերվելու համար: Այնպե՛ս անհրաժեշտ է ժամանակին նկատել երեխաների ամեն մի լավ արարքը, խրախուսել, ոգևորել... Չպետք է վրիպի նաև պարսավելին, սկիզբ առնող անտարբերությունն ու ծուլությունը: Իսկ դրա համար ոչ թե պետք է փոքրերին փոխադրել մեր՝ մեծերիս աշխարհը, այլ հարկ է, որ ինքներս տեղափոխվենք նրանց հոգևոր աշխարհը, հասկանանք նրանց:

Երեխայի համակողմանի դաստիարակության, հոգևոր աշխարհի հարստացման համար անգնահատելի է գեղագիտական դաստիարակության դերը: Էսթետիկան մեզ մոտ ամենուր է— մանկապարտեզի և՛ արտաքին, և՛ ներքին տեսքում. մանկան գեղագիտական ճաշակի զարգացմանը նպաստում են շրջապատի գեղեցիկ բնությունը, զբոսանքները, կինոդիտումները, տիկնիկային թատրոնը... Մեծ ուշադրություն է նվիրվում երեխաների արտաքին տեսքին, կուլտուրական վարվեցողությանը, փոխհարաբերությունների մշակմանը: Երեխաների գեղագիտական դաստիարակության գործը մեզ մոտ հաջողությամբ է կազմակերպում ու ղեկավարում դաշնակահար Հասմիկ Բաբլոյանը: Կերպարվեստի, մայրենի լեզվի պարապմունքները ևս նպաստում են մանուկների գեղագիտական դաստիարակությանը: Հապա պա՜րը: Բոլոր երեխաները սիրում են պարել. պարին նվիրված ժամերը տոնի են նըման, ամենաուրախալի պահն է այդ, ու բոլորը ժպտում են. գեղեցկության, ուրախության անմիջական պոռթկման այդ պահերը ներգործում են ձևավորվող մարդու՝ երեխայի հոգու, մտքերի, արարքների վրա, հղկում, ներբացնում նրանց շարժումները:

Մանկան գեղագիտական դաստիարակությանն օգնում են նաև խաղալիքները: Բացի պատրաստի խաղալիքներից, մեր մանկապարտեզը հարուստ է նաև ինքնաշեն խաղալիքներով: Մեր շնորհալի դաստիարակներ Հազարավարդ Հակոբյանը, Աիդա Նասրյանը, Սվետլանա Դավթյանը, Աստղիկ Հակոբյանը, Աստղիկ Ավետիսյանը և Էմմա Մինասյանը սովորեցնում են երեխաներին պատրաստել գեղեցիկ, հետաքրքրական, խելացի խաղալիքներ: Ե՛վ պատրաստելու պրոցեսը, և՛ խաղալիքներն իրենք խթանում են երեխաների ինքնուրույն մտածողության զարգացմանը: Նպատակային են կազմակերպվող զբոսանքները, որոնց ժամանակ դաստիարակները հանձնարարում են երեխաներին բնական նյութեր հավաքել խաղալիքներ պատրաստելու համար. երեխաները հաճույքով են կատարում այդ հանձնարարությունները, ասես, կանխավ վայելելով պատրաստվելիք խաղալիքների պատճառելիք հաճույքը:

Մեր գիշերօթիկ մանկապարտեզում երեխաների դաստիարակության հոգսն այստեղ լիովին դրված է մանկապարտեզի վրա: Կարող ենք հավատացնել, որ մանկապարտեզի աշխատողներն ամենայն խորությամբ գիտակցում են իրենց դժվարին գործի պատասխանատվությունն ու կարևորությունը: Նրանք գիտեն, որ զօր ու գիշեր իրենց խնամքին հանձնված երեխաները կրկնակի հոգատարության, քնքշության կարիք ունեն: Հենց այդպես էլ վարվում են նրանք՝ սկսած խոհարարից ու պահակից մինչև դաշնակահարն ու բժշկուհին: Իսկ մեր խոհարարուհին՝ ամենքի Շուրա մորաքույրը լավ գիտե, որ երեխաներին պակասում է մոր ձեռքով պատրաստած ուտելիքը. բայց չէ որ ինքը ևս մայր է... և պատրաստում է այնպես, ինչպես իր երեխաների համար:

Մեզ մոտ երբեք չի ասվում «ուրիշի երեխա»: Ասում ենք՝ մեր երեխաները: Որքա՜ն հուզիչ քնքշություն կա դրանում: Մենք լավ գիտենք, որ մանկան հոգին միայն սիրով կարելի է նվաճել: Մեր հաջողության առաջին նախապայմանն այն է, որ մանկապարտեզում ապրող երեխան հասկանա մեզ՝ մեր մեջ գտնելով սիրող մայր, սիրող ընկեր, որը կարողանա նրանց ներել մոր պես, սիրել բարի մարդու պես և ընկերոջ պես հաղորդել միմյանց իրենց ցանկությունները: Մեր դայակներ Խաթուն Էդուրյանն ու Ազնիվ Ներսիսյանը լավ գիտեն, թե որքան կարևոր են իրենց հոգածո ձեռքերն ու բարեգութ ժպիտը երեխաներին իրենց հետ կապելու, հարազատից չտարբերելու համար:

Մանկապարտեզը, դաստիարակության օջախ լինելուց բացի, ունի և մի այլ կարևոր նշանակություն: Այն օգնում է մորը հասարակության հավասար անդամ զգալու իրեն և ուժերն ու կարողությունները նվիրաբերելու հանրօգուտ աշխատանքին: Որքան մեծ է երեխայի նկատմամբ հոգատարությունը մանկապարտեզում, որքան քիչ է հիվանդանում երեխան, այնքան մեծ է մոր աշխատանքի օգտակար գործողության գործակիցը: Մեր աշխատանքը մենք նաև այս չափանիշով ենք գնահատում:

Թերևս ոչ մի զգացմունք մարդուն այնպես շատ չի մարդկայնացնում, տարբեր մարդկանց այնպես չի միավորում ու համախմբում, ինչպես սերը ջինջ, անմեղ աչուկներով, իրենց լիովին ձեզ վստահած մանուկների նկատմամբ: Ահա այս անկաշառ սիրով զոդված մի համերաշխ ընտանիք է մեր աշխատանքային կոլեկտիվը, որի բարոյական մեծագույն վարձատրությունն ու փոխհատույցը մեր մանուկների փոխադարձ սերն է:

**ՀԱՍՄԻԿ ՂԱԶԱՐՅԱՆ**
№ 179 գիշերօթիկ երկարօրյա
մսուր-մանկապարտեզի վարիչ

Գաղափարախոսական պայքարի

ճակատներում

# ՍԻՈՆԻԶՄԻ ՌԵԱԿՑԻՈՆ ԷՈՒԹՅՈՒՆԸ

Գ. Հ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

Սիոնիզմը որպես գաղափարախոսություն ու քաղաքական հոսանք առաջացել է կապիտալիզմից իմպերիալիզմին անցման ժամանակաշրջանում, երբ սրվել էր ֆինանսական խմբավորումների և իմպերիալիստական կոալիցիաների պայքարը աշխարհի բաժանման համար. այն սկզբից ևեթ որպես ծրագիր հռչակեց օտար տերիտորիաների զավթումը: «Հող առանց մարդկանց», այն է՝ Պաղեստինը հրեաներին տալու սիոնիստների խոստումը մեծ կեղծիք էր: Նրանց պլաններն անհնար էր իրականացնել այլ կերպ, քան Պաղեստինից դուրս քշելով բազում դարեր այնտեղ ապրած արաբներին:

Սիոնիզմը տեսականորեն ձևավորվեց 1895 թվականին վիեննացի ժուռնալիստ Թեոդոր Հերցլի Հրեական պետություն գիրքը հրատարակելուց հետո: Այն հիմք դրեց կրոնաքաղաքական այն տեսությանը, որը կոչ էր անում բոլոր հրեաներին վերադարձնել իրենց «բիբլիական նախահայրենիքը»: Այն հռչակում էր այլ ժողովուրդների նկատմամբ հրեաների ռասայական և կուլտուրական գերազանցության լոզունգներ: Ծնունդ առնելով Արևմտյան Եվրոպայում գաղութատիրության ծաղկման տարիներին, այդ ռեակցիոն տեսությունն ուներ նաև գաղութատիրական որոշակի միտում: «Եվրոպայի համար,— գրում էր Հերցլը,— մենք այնտեղ (Պաղեստինում) կստեղծենք ավանպոստ ընդդեմ Ասիայի, մենք կլինենք քաղաքակիրթ աշխարհի ավանգարդն ընդդեմ բարբարոսության»:

Այս գաղափարներով յուրովի էին շահագրգռված եվրոպական տերությունները, որոնք և շտապեցին աջակցել դրանց իրականացմանը: Շատ երկրների կառավարող շրջանների լիակատար բարյացակամության մթնոլորտում 1897 թվականին Բազելում ստեղծվեց Համաշխարհային սիոնիստական կազմակերպությունը:

Սիոնիզմն առաջացավ որպես Հրեական գաղութային տրեստում և Համաշխարհային սիոնիստական կազմակերպությունում պրոիմպերիալիստական հրեական բուրժուազիայի փոքրի խտացում, որի նպատակն էր վերականգնել հրեական համայնքի վերնախավի կորցրած վերահսկողությունը հրեական բնակչության նկատմամբ, կասեցնել նրա ասիմիլյացիան:

Սիոնիզմը կազմակերպված է ըստ ռասայական հատկանիշի: Համաշխարհային սիոնիստական կազմակերպությունը, որ ներկայումս սիոնիզմի կազմակերպական ու գաղափարախոսական հիմնական կենտրոնն է, բացահայտորեն գործում է աշխարհի 60 երկրներում (դրա խնդիրների ընդգրկման ոլորտը լայն է՝ կրոնից մինչև հետախուզություն): Կազմակերպության բարձրագույն մարմինն անվանապես Համաշխարհային սիոնիստական կոնգրեսն է, գործադիր մարմինը՝ Հրեական գործակալությունը, որն ունի երկու բաժին՝ Նյու Յորքում և Երուսաղեմում: Սիոնիստներն աշխարհի շատ երկրներում ունեն իրենց լրա-



գրերն ու ամսագրերը, թողարկում են 1.036 անուն պարբերական, որից ԱՄՆ-ում՝ 254, Եվրոպայում՝ 158, Հարավային Ամերիկայում՝ 125 և այլն:

Սիոնիստական գաղափարախոսությունը հիմնված է հրեական հարցի նկատմամբ բուրժուանացիոնալիստական մոտեցման վրա, ըստ որի հակասեմիտիզմի պատճառը, իբր, հրեաների նկատմամբ եղած թշնամանքն է, և հակասեմիտիզմը տվյալ հասարակարգում երբեք էլ կապված չէ դասակարգային, սոցիալական ու քաղաքական պայքարի հետ: Քանի որ սիոնիզմը հրեական հարցն անջատում է դասակարգային հիմքից, ապա հանգում է այն եզրակացության, թե, իբր, հակասեմիտիզմը կգոյատևի այնքան, քանի դեռ հրեաներն ապրում են այլ ազգությունների մեջ: Ելնելով «հակասեմիտիզմի հավերժության» այս կեղծ եզրակացությունից, սիոնիստական գաղափարախոսությունը զարգացրեց այն «տեսությունը», թե իրենց ապրած երկրներում հրեաները չպետք է մասնակցեն դեմոկրատիայի, սոցիալական առաջընթացի համար կապիտալիստական մոնոպոլիաների դեմ մղվող հասարակական դասակարգային պայքարին, որ նրանք պետք է ունենան իրենց սեփական մեկուսացած կազմակերպությունները: Ըստ սիոնիստական աշխարհայացքի, շատ ավելի ընդհանուր բան կա հրեական բանվորի և բուրժուայի, քան հրեական ու ամերիկյան կամ ռուս բանվորի միջև: Մի խոսքով, սիոնիզմը հանդես է գալիս շահագործողների և շահագործվողների, հրեական միլիոնատերերի և չքավորների ու գործազուրկների «դասակարգային հաշտության» դրոշի ներքո, ի հակակշիռ մեծ, պատմականորեն փորձված և անհաղթ «Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք» լոզունգի:

Եթե կոմունիստներն ու մյուս պրոգրեսիվ ուժերը վճռականորեն դատապարտում և մերժում են հեղափոխական պայքարը խարխլող հակասեմիտիզմը որպես ռեակցիոն երևույթ, ապա սիոնիզմը ճգնում է հակասեմիտիզմն օգտագործել հօգուտ իր շահերի: Սիոնիստական ղեկավարները բազմիցս հայտարարել են, որ հակասեմիտական ճնշումը հանգեցնում է դեպի Իսրայել հրեաների արտագաղթին, ուստի և եզրակացնում են, որ հակասեմիտիզմը նպաստում է «ազգային օջախի ստեղծմանը»:

Մարքսիզմը միշտ էլ մերժել է ռեակցիոն, իրականության հետ ընդհանուր ոչինչ չունեցող սիոնիստական այն տեսությունը, թե իբր գոյություն ունի «համաշխարհային հրեական ազգ», որն ապրում է տարբեր երկրներում և տարբեր վարչակարգերի պայմաններում ներկայացնում է մի միասնական ազգ, թեև չունի տնտեսական հանրություն, ընդհանուր տերիտորիա, կուլտուրա, ընդհանուր լեզու և սովորույթներ: Մարքսը և Էնգելսը հրեաների վիճակը գնահատելիս միշտ էլ հանդես են բերել դասակարգային պրոլետարական մոտեցում: Մարքսը հատկապես շեշտել է, որ գոյություն չունի ինչ-որ հավիտենական, բացարձակ հրեական հարց, քանի որ այն «տարբեր ձևակերպում է ստանում նայած այն բանին, թե որ պետության մեջ է ապրում հրեան» (К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. I, стр. 386):

1844 թվականին «Հրեական հարցի շուրջը» հոդվածում Մարքսը քննադատել է հրեաների «ազատագրության» պրոբլեմին վերաբերող Բ. Բաուերի աշխատությունները, որոնցում Բաուերը պրոբլեմը դիտում էր ապդասակարգային, նացիոնալիստական դիրքերից: Մարքսը հարցին մոտենում էր այլ կերպ, դրա լուծման հիմք ընդունելով դասակարգային սկզբունքը՝ աշխատավորների ազատագրումը սոցիալական ու քաղաքական ճնշումից: Մարքսն այն կարծիքին էր, թե հրեական հարցը կարող է վերջնականապես լուծել միայն սոցիալիստական հեղափոխությունը, որը բոլոր չունևորներին կազատագրի աղքատությունից և կապիտալիստական շահագործումից:

Գիտական կոմունիզմի հիմնադիրները, պայքարելով ամեն կարգի ազգային ճնշում վերացնելու համար, վճռականորեն հանդես էին գալիս հրեաների հետապնդման դեմ: Ֆ. Էնգելսը ցույց է տվել, որ հակասեմիտիզմն ունի տնտեսական հիմք, քանի որ «դրանում ուղղակիորեն շահագրգռված են նստակյաց քրիստոնյա բյուրգերները, որոնց գործերին վնաս են հասցնում թափառաշրջիկ վաճառականները» (Նույն տեղը, հ. 4, էջ 468): Էնգելսը հակասեմիտիզմը համարում էր «ոչ այլ ինչ, քան միջնադարյան մեռնող հասարակական

խավերի ռեակցիա ընդդեմ ժամանակակից հասարակության, որը հիմնականում բաղկացած է կապիտալիստներից և վարձու բանվորներից. այդ պատճառով էլ այն ծառայում է լոկ ռեակցիոն նպատակների» (Նույն տեղը, հ. 22, էջ 54)։

Արդի ժամանակաշրջանի համար կարևոր նշանակություն ունեն Էնգելսի՝ եբրայական կրոնը քննադատող աշխատությունները։ «Հրեական այսպես կոչված սուրբ գիրքը,— գրել է Ֆ. Էնգելսը Կ. Մարքսին,— ոչ այլ ինչ է, քան հին արաբական կրոնական ու ցեղային ավանդույթների հիշատակություն, ավանդույթներ, որոնք կերպարանափոխվել են ցեղակից, բայց քոչվոր մնացած հարևաններից հրեաների վաղ անջատման հետևանքով» (Նույն տեղը, հ. 28, էջ 210)։

Մեկ այլ տեղ Էնգելսը նշել է, որ ոչ հրեաների և կիսահրեաների հետ հրեաների խառնվելու ու շփվելու հետևանքով ծնունդ առած եբրայական կրոնը «հանգեց ընդհուպ ծիսակատարությունների արհամարհմանը, նախկինում բացառապես հրեական ազգային Յահվե աստծուն միակ ճշմարիտ աստված, երկնքի և երկրի արարիչ հռչակմանը ու եբրայական կրոնին նախապես խորթ հոգու անմահության ընդունմանը»։ Եբրայական կրոնի ծագման և առանձնահատկությունների պատճառների այս մատերիալիստական բացատրությունը խորտակիչ հարված է հասցրել և հասցնում Հին կտակարանի և բիբլիական առասպելների աստվածային ծագումը պնդող կրոնական խավարամոլների կեղծ տեսություններին։

Վ. Ի. Լենինը հետևողական պրոլետարական դիրքերից բացահայտեց սիոնիստական դոգմաների արատավորությունը, դոգմաներ, որոնք հրեաներին հակադրում են մնացած ողջ բնակչությանը։ Նա ցույց տվեց, որ հրեական ազգի բացառիկության գաղափարը հակասում է հրեա պրոլետարիատի շահերին, ուղղակի կամ անուղղակի կերպով նրա ներսում ստեղծելով «գետտոյի» տրամադրություն։

Ժամանակակից սիոնիզմի գաղափարախոսությունը և քաղաքական պրակտիկան լիովին հաստատում են լենինյան այն գնահատականը, թե դա նացիոնալիստական, պրոիմպերիալիստական, աշխատավորության շահերին թշնամական գաղափարախոսություն է, որն իր գոյության սկզբից ծառայում է իմպերիալիզմին։ Վ. Ի. Լենինը, պայքարելով բանվորական շարժման մեջ եղած օպորտունիզմի և ռևիզիոնիզմի դեմ, մերկացրել է սիոնիզմը որպես հրեական խոշոր և մոնոպոլիստական բուրժուազիայի աշխարհայացք, դասակարգային դիրքերից բացահայտել դրա գաղափարախոսական ու քաղաքական արմատները։

Վ. Ի. Լենինը և բոլշևիկները վճռական պայքար էին մղում սիոնիստական դիրքորոշում ունեցող Բունդի դեմ։ Բունդը, որ իրեն համարում էր սոցիալ-դեմոկրատական կուսակցություն, առաջադրում էր հրեաների համար «կուլտուր-ազգային ավտոնոմիայի» ծրագիրը, որի նպատակն էր պառակտել ռուսական պրոլետարիատը։ Հանդես գալով Բունդի նկրտումների դեմ, Վ. Ի. Լենինը բազմիցս շեշտել է, որ սիոնիստական գաղափարը «բոլորովին կեղծ և ռեակցիոն է իր էությամբ» (ԵԼԺ, հ. 8, էջ 87)։

Հրեական պրոլետարիատին ցույց տալով լավագույն ապագայի միակ ճիշտ ուղին՝ Ռուսաստանի ողջ աշխատավորական մասսաների համատեղ պայքարն ընդդեմ շահագործողների, Վ. Ի. Լենինը «հրեաների ջարդարարական հալածանքի» հետևողական ու անհաշտ հակառակորդ էր, վճռականորեն պայքարում էր հակասեմիտիզմի ամեն կարգի դրսևորումների դեմ։

Սիոնիզմի փիլիսոփայական կոնցեպցիաների հիմքն է կազմում եբրայական կրոնի ըստ էության հակագիտական նացիոնալիստական դոգման՝ աստծո հետ հրեաների դաշինքի առասպելը և հրեաների բացառիկության («ընտրյալության») քարոզը։ Միստիկական մեսիականություն և ռասայականություն՝ ահա փոխադարձաբար կապված և միմյանց լրացնող երկու գործոն, որոնք և կազմում են սիոնիզմի ռեակցիոն էությունը։

Սիոնիզմի գաղափարախոսներից մեկը՝ Մ. Նորդաուն գրում է, որ «մեսիականությունը և սիոնիզմը գրեթե երկու հազար տարի նույնական հասկա-



ցություններ էին»։ Ներկայումս Իսրայելում եբրայական կրոնը դարձել է պետական կրոնի անբաժանելի մասը և աշխարհիկ օրենսդրության հիմքը։ Սիոնիստական պարագլուխների նպատակն է հասնել այն բանին, որ Իսրայելի բնակչությունը կրոնը և օրենքն ընկալի որպես հոմանիշներ, իսկ Իսրայելի սահմաններից դուրս ապրող հրեաները սիոնիզմին հաղորդակից լինեն եբրայական կրոնի պոստուլատներին համադրելով հրեական խոշոր բուրժուազիայի քաղաքական «գաղափարները»։ Դրանով իսկ նրանք ձգտում են «սրբության» լուսապսակով պարուրել Իսրայելը՝ այն ներկայացնելով որպես ավանդական արքաներ Դավթի և Սողոմոնի քաղաքականության շարունակողի։

Սիոնիստական պատմաբանները պնդում են, թե, «որպես գաղափար, «սիոնիզմը» պատմության մեջ գոյատևում է ճիշտ այնքան դարեր, որքան բուն հրեությունը», և որ «հրեական պատմության մեջ Աբրահամից սկսած հրեաների բոլոր սերունդներին մի անքակտելի շղթա է կապում», այնպես, ինչպես և «հրեական բոլոր ուսուցիչներին... սկսած Մովսեսից մինչև Մաղաքիա մարգարեն»։ Այժմ, ինչպես պնդում է իսրայելցի հեղինակ Ն. Բենտևիչը, «սիոնիզմի շատ հետևորդներ իրենց ուսմունքը հավասարեցնում են եբրայական կրոնին՝ այն դարձնելով ազգային կրոն»։

Այսպիսով, մարտնչող սիոնիզմը, մերձենալով եբրայական կրոնին և այն օգտագործելով որպես քողարկման ու գաղափարախոսական հիմնավորման միջոց, կրոնը բացահայտորեն վեր է ածում քաղաքականության։ Սիոնիստները ձգտում են հրեաներին հավաքագրել՝ Իսրայելի պետության քաղաքական շահերին ծառայեցնելու նպատակով։

Սիոնիզմը գոյության սկզբից ևեթ իր զինանոցում օգտագործում է պատմական փաստերի խեղաթյուրման մեթոդը, ձգտելով իր շահադիտական նպատակներին ծառայեցնել վաղուց անցած-գնացած իրադարձությունները։ Իրենց պաշտոնական փաստաթղթերում և պրոպագանդիստական գործունեության մեջ սիոնիստները մշտապես ճգնում են ապացուցել հրեաների «իրավունքը» Պաղեստինի նկատմամբ՝ որպես իրենց «պատմական հայրենիքի», որտեղից, իբր, նրանք բռնությամբ դուրս են քշվել, դարեր շարունակ թափառել օտարության մեջ, բայց միշտ էլ, չնայած դաժան հալածանքներին, երազել են վերադառնալ այնտեղ։ Իրականում Արաբական անապատից հրեական քոչվոր ցեղերի Պաղեստին գալու պահին այստեղ բնակվում էին ծաղկուն քաղաքակրթություն ստեղծած մի քանի նստակյաց ժողովուրդներ։

Նվաճողների քաղաքականությունը փաստորեն հետապնդում էր տեղական բնակչության լիակատար բնաջնջում։ Սակայն Պաղեստինը նվաճելուց հետո էլ հրեաները երբեք այնտեղ մեծամասնություն չեն կազմել։ Այսպիսով, պատմությունը վկայում է, որ Պաղեստինն ամենևին հրեաների վաղնջական հայրենիքը չի եղել։

1885 թվականին սինագոգի ներկայացուցիչները միաբերան հայտարարեցին. «Մեր ձգտումը Պաղեստին վերադառնալը չէ... Մեր Սիոնը Ամերիկան է»։ Ավելի վաղ, 1818 թվականին Համբուրգում ռաբբի Իսրայել Յակոբսոնը կարգադրեց սինագոգում տեղադրել երգեհոններ, իսկ հիմները երգել գերմաներեն։ Մինչ այդ բոլոր աղոթքներից հանել էին Սիոնի մասին հիշատակությունները։ «Շտուտգարտ՝ ահա մեր Երուսաղեմը»,— Գերմանիայում հռչակում էր եբրայական կրոնի առաջնորդներից մեկը։

Իրենց նպատակների իրականացման համար սիոնիստները հերթով փորձում են հենարան գտնել մերթ այս, մերթ այն իմպերիալիստական երկրում։ Մեկ անգամ չէ, որ փոխվել են սիոնիստների տերերը. մինչև առաջին համաշխարհային պատերազմը նրանք հենվում էին կայզերական Գերմանիայի, այնուհետև՝ Անգլիայի, ի վերջո՝ ԱՄՆ-ի վրա։

Ցարիզմի դեմ մղված հեղափոխական պայքարին, իսկ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո՝ սոցիալիստական հասարակության կառուցմանը սիոնիզմի գործուն հակադրությունը բացահայտեց նրա՝ որպես ռեակցիոն, հակաժողովրդական, բուրժուանացիոնալիստական գաղափարախոսության իսկական դեմքը։

Հրեական ծագում ունեցող մոնոպոլիստական բուրժուազիան իր միջազ-

գային սիոնիստական կազմակերպության միջոցով ամեն կերպ հակասովետիզմ է բորբոքում, փորձելով իր զրպարտչական պրոպագանդայով թունավորել քաղաքականապես ոչ հասուն, դյուրահավատ մարդկանց։ Այս հակասովետիզմի աղբյուրը, իհարկե, աշխարհում սոցիալիստական պետության նկատմամբ եղած դասակարգային ատելությունն է և այն, որ Սովետական Միությունը պատմականորեն ապացուցեց, թե հրեական հարցը կարելի է արմատապես լուծել միայն հաղթանակած սոցիալիզմի շնորհիվ։

Իսրայելի պետությունն ստեղծվել է ՄԱԿ-ի որոշմամբ 1948 թվականին, խիստ որոշակի սահմաններով։ Սակայն հրեական հարցը, որի մասին այնտեղ այնքան շատ խոսվեց, դեռ հեռու էր լուծումից։ Բոլոր հրեաներին «հայրերի հայրենիք» վերաբնակեցնելուց, ըստ էության, ոչինչ չստացվեց։ Իսրայելի գոյության սկզբնական շրջանում տեղի ունեցավ բնակչության որոշ աճ հրեաների ներգաղթի շնորհիվ։ Բայց հետո այդ հոսքը խիստ կրճատվեց։ Պատճառները հասկանալի են. «ավետյաց երկրում» սիոնիստական պրոպագանդիստների խոստացած դրախտի փոխարեն ստեղծվեց կապիտալիստական դժոխքի դաժան ու մռայլ իրականություն։

Թեոդոր Հերցլի ստեղծած Համաշխարհային սիոնիստական կազմակերպությունը, չնայած աշխարհի տասնյակ պետություններում ուներ իր ճյուղավորումները, գործնականում հրեական լայն մասսաներից ոչ մի աջակցություն չէր ստանում։ Հետաքրքրական է հետևյալ փաստը. 1901-ից մինչև 1925 թվականը, չնայած սիոնիստների բոլոր կոչերին, Պաղեստին է ներգաղթել ընդամենը 76 հազար հրեա։ Համեմատության կարգով ասենք, որ այդ նույն ժամանակամիջոցում ԱՄՆ է մեկնել 1.703 հազար հրեա։ Եվ նրանք, հասկանալի է, առաջնորդվել են ոչ թե սիոնիզմի գաղափարներով, այլ սոցիալ-տնտեսական նկատառումներով։ Եվ զարմանալի չէ, որ չնայած ԱՄՆ-ի սիոնիստական շրջանների պրոպագանդիստական կատաղի կամպանիային, հրեական ծագում ունեցող ամերիկյան քաղաքացիների լոկ աննշան մասը տեղափոխվեց Իսրայել (1961—1968 թթ.՝ ընդամենը 25 հազար մարդ)։ Եվ սա լրջորեն անհանգստացնում է իսրայելական կառավարողներին ու նրանց հովանավորներին։

Սիոնիզմի ղեկավար դերը Իսրայելում հաստատվեց ԱՄՆ-ի օգնությամբ և ուղղակի մասնակցությամբ։ Դրանով իսկ կանխորոշվեց Իսրայելի արտաքին ու ներքին քաղաքականությունը։

ԱՄՆ-ի սիոնիստական կազմակերպությունները ֆինանսական խոշոր միջոցներ ունեն, սերտ կապեր են հաստատել կառավարության, կոնգրեսի, ֆինանսաարդյունաբերական շրջանների հետ։ Նրանց դիրքերը շատ ամուր են ԱՄՆ-ի մամուլում, ռադիոյում և հեռուստատեսությունում։ Մերձավոր Արևելքում Իսրայելի ագրեսիվ քաղաքականությանը Միացյալ Նահանգների աջակցությունը բացատրվում է ո՛չ միայն սիոնիզմի անդրօվկիանոսյան մեծ ազդեցությամբ։ Ամերիկյան իմպերիալիզմը տնտեսական ու ստրատեգիական ուղղակի շահեր ունի Մերձավոր Արևելքում։ Ամերիկյան մոնոպոլիաներն ամեն տարի Մերձավոր Արևելքի երկրներից կորզում են շուրջ երկուսուկես միլիարդ դոլար։ Պարզ է, իհարկե, որ «Մեծ Իսրայելի» զավթողական գաղափարն արաբական ժողովուրդների հաշվին իրականացնել փորձող Իսրայելի սիոնիստական առաջնորդների և ամերիկյան մոնոպոլիստների ու ռազմամոլների շահերը լիովին համընկնում են։

Հայտնի է, որ սիոնիզմի առաջնորդները հույս ունեին, թե հիտլերյան Գերմանիայում հրեաների նկատմամբ իրականացվող ամենադաժան հալածանքի քաղաքականությունը կավելացներ ներգաղթը դեպի Պաղեստին, կնպաստեր «հրեական ազգային պետություն» ստեղծելու պլանների իրականացմանը։ Նրանք սիստեմատիկ կապ էին պահպանում հիտլերյան Գերմանիայի խոշոր ներկայացուցիչների հետ։ Մասնավորապես, Պաղեստինի հրեական գործակալության և ֆաշիստական իշխանությունների միջև համաձայնագիր էր կնքվել, ըստ որի նացիստները պարտավորվում էին օժանդակել հրեաների անլեգալ արտագաղթին դեպի Պաղեստին, որի կարիքն այնքան զգում էին սիոնիստները։

Սիոնիստները չեն թաքցնում, որ միջազգային սիոնիստական կոնցեռնի ձգտումների և քայքայիչ գործունեության գլխավոր օբյեկտը եղել և մնում են



Սովետական Միությունը, բոլոր սոցիալիստական երկրները, միջազգային կոմունիստական, բանվորական և ազգային-ազատագրական շարժումները։ Սոցիալիստական համագործակցության և հատկապես Սովետական Միության դեմ արշավանքն անց է կացվում «հրեաների պաշտպանության» ծամծմված լոզունգի ներքո։

«Ամերիկայի ձայն» և «Իսրայելի ձայն» ռադիոկայանների ծրագրերը, սիոնիստական գրականության անլեգալ տարածումը, սիոնիստական ոչ պարբերական հրատարակությունների, ինչպես նաև մացայի բազմաքանակ ծանրոցների առաքումը սովետական բազմաթիվ քաղաքացիներին (նրանց կամքին հակառակ), որոնց հասցեները ինչ-որ ձևով հայտնի են դարձել Իսրայելում — այս ամենը միջազգային սիոնիստական կենտրոնի «տոտալ պատերազմի» մշված տրաֆարետային միջոցներ են։

Սիոնիստական լիդերներն առանձնապես կարևոր նշանակություն են տալիս մարքս-լենինյան գաղափարների ռևիզիային, նենգափոխմանը, սովետական պետության պատմության կեղծմանը, ամբողջությամբ վերցրած՝ կոմունիզմի քննադատությանը։ Սիոնիզմին ամենից առաջ դուր չի գալիս մարքս-լենինյան ուսմունքը, որը ժխտում է «համաշխարհային հրեական ազգի» կոնցեպցիան, «հրեական հավիտենական հարցը»։

Սիոնիստական պրոպագանդան ամենուրեք շարունակում է շիկացնել ատելության մթնոլորտը Իսրայելի կոմունիստական կուսակցության շուրջը, հիստերիկ կոչեր են լսվում կոմունիստական կուսակցությունն արգելելու, առաջարկություններ են արվում Իսրայելում ընտրական նոր սիստեմ մտցնելու մասին, որի միակ նպատակն է Իսրայելի կոմունիստական կուսակցությանը զրկել պառլամենտում ներկայացուցիչներ ունենալու հնարավորությունից։

Հայտնի է, որ սիոնիստների ձեռքում կենտրոնացված են միլիարդավոր դոլարներ, նրանք վերահսկում են ամերիկյան ու միջազգային այն գործակալությունների 30 տոկոսին, որոնց ծառայություններից օգտվում են կապիտալիստական գրեթե բոլոր երկրների լրագրերն ու ամսագրերը։ Անգլիական սիոնիստների օրգան «Ջուիշ քրոնիկլ»-ի ինքնագոհ խոստովանությամբ՝ սիոնիստները վերահսկում են ԱՄՆ-ում լույս տեսնող բոլոր ամսագրերի, ռադիոկայանների կեսը, ամերիկյան թերթերի ու ամսագրերի արտասահմանյան թղթակցական կետերի և մամուլի գործակալությունների երեք քառորդը։

Սիոնիստական և հակակոմունիստական պրոպագանդայով առավել ակտիվորեն է զբաղվում, այսպես կոչված, հրեական հեռագրական գործակալությունը՝ Համաշխարհային սիոնիստական կազմակերպության ձայնափողը։ Ամերիկյան «Ֆորչուն» ամսագրի տվյալներով, սիոնիստների ֆոնդերն ամեն տարի ստանում են 700—800 միլիոն դոլար, որի առյուծի բաժինը ծախսվում է հակակոմունիստական քայքայիչ գործունեությունն ուժեղացնելու, հակասովետական պրովոկացիաներ կազմակերպելու և հակակոմունիստական բազմաթիվ կազմակերպությունների, հիմնարկությունների, ինստիտուտների գործունեությունը ֆինանսավորելու նպատակով։

Իսրայելի պատմությունը պերճախոս վկայում է նրա արտաքին քաղաքական կուրսի ագրեսիվ, զավթողական բնույթը։ ԱՄՆ-ի հովանավորության ներքո կայացած եգիպտաիսրայելական բանակցությունները վերջերս ավարտվեցին «Հաշտության պայմանագրի» կնքմամբ, ըստ որի Իսրայելը և Եգիպտոսը պարտավորվում են ամերիկյան ֆինանսական ու ռազմական որոշակի օգնության դիմաց Մերձավոր Արևելքում ապահովել ԱՄՆ-ի շահերը։

Ամերիկյան կոպիտ միջամտությունը Մերձավոր Արևելքի ժողովուրդների գործերին, այդ շրջանի իրադարձություններն իր շահերին ենթարկելու ձգտումը, «խաղաղ կարգավորման» կեղծ ցուցանակով քողարկվելը հանդիպում են արաբական ժողովուրդների հարաճուն դիմադրությանը։

Սովետական Միությունը հանդես է գալիս հանուն Մերձավոր Արևելքի հարցի իսկական և արդարացի խաղաղ կարգավորման, հանուն 1967 թվականին զավթված արաբական հողերի ազատագրման։ Հարկավոր է Պաղեստինի ժողովրդի համար ապահովել անհրաժեշտ պայմաններ, որպեսզի նա կարողանա իրագործել սեփական պետություն ստեղծելու իր իրավունքը։

Ձգտելով թաքցնել իր դասակարգային բուրժուական էությունը, իր ազդեցությանը ենթարկել հրեաների սոցիալական տարբեր խմբերի, սիոնիզմն այժմ ճգնում է միջազգային ասպարեզում ներկայանալ իբրև «համաշխարհային հրեական ազգի ազգային-ազատագրական շարժում»: Բնավ պատահական չէ, որ արդի սիոնիզմը աչքի է ընկնում իր բազմադիմությամբ: Մշակվել և պրոպագանդիստական շրջանառության մեջ են դրվել սիոնիստական գաղափարախոսության բիբլիական, ռեֆորմիստական, ռացիոնալիստական, բացահայտ ֆաշիստական, լիբերալ և «սոցիալիստական» տարբերակները:

Արդի սիոնիզմը միավորում է, օրինակ, իսրայելական «Հերութ» կուսակցության էքստրեմիստներին, ամերիկյան «Հրեաների պաշտպանության լիգայի» բացահայտ ֆաշիստներին, «սովետական հրեաների գործերի կոնֆերանս» հակասովետական քայքայիչ կազմակերպությունը, միջազգային պրոսիոնիստական «կրոնաբարեգործական», Բնայթ-Բրիթ կազմակերպությունը, «Հրեական բանվորների միջազգային միությունը» («Բունդ»), Իսրայելի աշխատանքի կուսակցությունը և նույնիսկ սոցիալիստ սիոնիստների համաշխարհային միությունը, որը հանդես է գալիս իբր թե սիոնիզմի և սոցիալիզմի միացման օգտին:

«Միասնական հրեական ազգի» սիոնիստական տեսությունը հակակոմունիզմն այսօր լայնորեն օգտագործում է իմպերիալիզմի օրոք ազգային կեղեքման սոցիալ-տնտեսական արմատները քողարկելու նպատակով, նացիոնալիզմը, ազգային հակամարտությունը հասարակական կյանքի «բնական» օրենքների աստիճանի բարձրացնելու միջոցով ինտերնացիոնալիզմի քաղաքականության ու գաղափարախոսության, համաշխարհային սոցիալիստական սիստեմի, միջազգային կոմունիստական ու ազգային-ազատագրական շարժման դեմ պայքարելու համար:

«Սիոնիստական շարժումը ռեակցիոն է,— հայտարարեցին Իսրայելի կոմունիստներն իրենց XVII համագումարում,— որովհետև, Հոկտեմբերյան հեղափոխության ժամանակներից ի վեր, դավեր է նյութում սոցիալիստական կարգի դեմ, ձգտելով խորթացնել հրեա և սոցիալիստական երկրների ժողովուրդների աշխատավորներին: ՍՍՀՄ-ի դեմ իմպերիալիզմի սանձազերծած գաղափարախոսական պայքարում սիոնիստական պրոպագանդան շարունակվում է հակասոցիալիստական և հակակոմունիստական դիրքերից: Լարվածության թուլացման պայմաններում սիոնիզմն ավելի քողարկված ձևով պրոպագանդում է նաև «մեծ Իսրայելի» էքստրեմիստական գաղափարները»: Սոցիալիստական կարգերը, ՍՄԿԿ ազգային քաղաքականությունը վարկաբեկելու, սոցիալիստական դեմոկրատիայի էությունը նենգափոխելու փորձերի հետ մեկտեղ, միջազգային սիոնիզմը և նրա պրոպագանդան ակտիվորեն հանդես են գալիս ՍՍՀՄ արտաքին քաղաքական գործունեության, լարվածության թուլացման քաղաքականության և սոցիալական տարբեր կարգ ունեցող երկրների գործարար համագործակցության դեմ:

Միջազգային սիոնիզմը և ԱՄՆ-ի սիոնիստական շրջանները ձգտում են ճգնաժամ հարուցել սովետաամերիկյան հարաբերություններում, պրոպագանդայի, դիվերսիաների և պրովոկացիաների օգնությամբ ստեղծել անբարենպաստ մթնոլորտ լարվածության թուլացման, բարձր մակարդակով սովետաամերիկյան հանդիպումների անցկացման գործում:

1975 թվականի նոյեմբերի 10-ին ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեան դատապարտեց սիոնիզմը որպես ռասիզմի և ռասայական խտրականության ձև:

Արդի պայմաններում, ինչպես այդ մասին որոշակիորեն ասված է Իսրայելի կոմկուսի XVII համագումարի բանաձևում, հատկապես կարևոր է մերկացնել սիոնիզմը և, ելնելով Իսրայելի ժողովրդի ու պրոգրեսիվ բոլոր ուժերի շահերից, հետևողականորեն պայքարել դրա գաղափարախոսության ու պրակտիկայի ռեակցիոն էության դեմ:

---



# ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ԽՈՍՔԻ ՎԱՐՊԵՏԸ

## (Ա. ԲԱԿՈՒՆՑԻ ԾՆՆԴՅԱՆ 80-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

«ԼՍԵ՞Լ ԵՔ ԴՈՒՔ այն արթուն խոսքը, որ հոսում է, ինչպես իմաստուն զրույցը, երբ առաջին վայրկյանից խոսողը իրեն է բևեռում բոլորի ուշադրությունը... երբ խոսքի մեջ կա անխորտակելի ճշմարտություն, որ հարթում է իր ճանապարհը ուրիշների սրտում և ուղեղների մեջ, երբեմն փայլում բարձր մտքերով և երբեմն զարմացնում իրերի ու մարդկանց ճշգրիտ ճանաչողությամբ»,— գրել է Բակունցը մոտ հինգ տասնամյակ առաջ իր դրական հերոսներից մեկի զրույցի մասին:

Այդպիսին է հենց իր՝ տաղանդավոր արձակագրի գեղարվեստական խոսքը, որ իսկապես «փայլում է բարձր մտքերով» և «զարմացնում իրերի ու մարդկանց ճշգրիտ ճանաչողությամբ»: Ինչի մասին էլ գրել է նա՝ գյուղի թե քաղաքի, արհեստավորի թե մտավորականի, ժամանակակից կյանքի թե՛ հեռավոր անցյալի, միևնույն է, բոլոր դեպքերում էլ բակունցյան խոսքը «հոսում է, ինչպես իմաստուն զրույցը» և հմայում ընթերցողին:

Ինչո՞վ բացատրել այդ, ո՞րն է ակսելյան գրելակերպի յուրահատկությունը:

Բակունցի գեղարվեստական խոսքի ներգործուն ուժը պայմանավորված է ամենից առաջ ասելիքի կոնկրետությամբ ու ճշմարտացիությամբ: Գրողը կատարելապես տիրապետում է նյութին, ապրում դրանով և ապրեցնում ընթերցողին: Ընդ որում, նա ունի իր սրտամերձ թեմաները, որոնց առանցքը մարդն է ու մարդկայնությունը: Այդ տեսանկյունից է Բակունցը մոտենում կենսական երևույթներին և գեղարվեստորեն իմաստավորում դրանք: Իրականության ընկալման ու արտացոլման հումանիստական դիտակետը հնարավորություն է ընձեռել նրան՝ թափանցելու ժողովրդի կեցության ու հոգեբանության խորքերը, երևան բերելու նրա աշխարհզգացողությունն ու կենսահայեցողությունը: Այդ է վկայում Բակունցի կերտած ժողովրդական խառնվածք ունեցող կերպարների պատկերասրահը, որն ունի ճանաչողական ու գեղարվեստական մեծ արժեք:



Բակունցի՝ որպես ստեղծագործող անհատի, հմայիչ գծերից մեկն էլ այն է, որ նա կարողանում է գտնել ո՛չ միայն իր սիրած նյութն ու կերպարը, այլև դրանք մատուցելու համապատշաճ ձև ու ժանր: Այս դեպքում ևս նա ընտրել է իր ստեղծագործական խառնվածքին մոտ և հարազատ այնպիսի գրական ժանրեր, ինչպիսիք են նովելն ու պատմվածքը: Ճիշտ է, իր ստեղծագործական կյանքի համեմատաբար հասուն շրջանում նա ձեռք է զարկել նաև վիպակի ու վեպի, բայց, սխալված չենք լինի, եթե ասենք, որ Բակունցի ուժը, այսպես կոչված՝ «փոքր էպիկական ձևի» մեջ է, ուր նա հասել է խոշոր նվաճումների, մի քայլ առաջ անցնելով իր նախորդներից: Փոքր ձևի մեջ արտահայտել մեծ բովանդակություն,— ահա այն նշանաբանը, որով ընթացել է Բակունցի ստեղծագործական կյանքը: Երբեմն աննշան մի հուշ կամ առօրեական դեպք նրա գրչի տակ ստացել է փիլիսոփայական խոր ընդ-

հանրացում, որի շնորհիվ կենսական փաստը դարձել է գեղարվեստական ճշմարտություն:

Եվ եթե դրան ավելացնենք նրա պատմողական արվեստն ու հոգեթափանցությունը, ապա միանգամայն հասկանալի կդառնա ակնելյան խոսքի հմայքը, որ հասնում է դասական ուժի: Հակառակորդ լինելով ճոռոմ ֆրազների, փքուն պաճուճանքների, որոնցով հաճախ ստվերարկվում են ճշմարիտ միտքն ու հույզը, նրբաճաշակ գրողը հետևում էր ժողովրդական պատումի ոգուն: Բնականություն, կենդանի խոսք ու դինամիզմ, աշխույժ երկխոսություն ու նկարագրական սեղմություն, քնարական շունչ ու հյութեղ երգիծանք— այս և այլ հնարանքներ վարպետորեն օգտագործել է Բակունցը՝ դրսևորելով իր ներկապնակի բազմերանգությունը:

Գրողը տիրապետում էր խոսքի արվեստին և հենց դրա շնորհիվ թափանցում էր իր հերոսների ներաշխարհը, պատկերում նրանց խոհերի ու ապրումների ընթացքը: Այն էլ նկատենք, որ Բակունցի հոգեթափանցությունը զուգորդված է գործողության պատկերման ու պատմելակերպի հստակության հետ: Թեև արտաքուստ գործողությամբ հարուստ չեն նրա երկերը, բայց ներքուստ լի են դրամատիզմով, մտքի ու զգացմունքի հուզիչ ծփանքով: Բակունցը երբեմն որսում է այնպիսի նրբերանգներ, որոնք միանգամայն աննշմարելի են սովորական դիտարկումների ժամանակ: Բայց հենց այդ նրբերանգների մեջ է ընթերցողը գտնում իրեն ծանոթ ու սիրելի ինչ-որ բան, որը և հարազատություն է ստեղծում, լարում նրա հետաքրքրությունը, պատճառում էսթետիկական մեծ հաճույք:

Այդ իմաստով Բակունցի ստեղծագործությունն առաջնակարգ տեղ է գրավում մեր գրականության մեջ, իսկ հեղինակն իրավամբ համարվում է հայ արձակի բանաստեղծ: Նրա այնպիսի գործերը, ինչպիսիք են՝ Միրհավը, Խոնարհ աղջիկը, Բրուտի տղան, Ալպիական մանուշակը և շատ այլ ստեղծագործություններ, աչքի են ընկնում շեշտված բանաստեղծականությամբ: Դրան նպաստում է հեղինակի ո՛չ միայն լեզվաոճական արվեստը, այլև՝ քնարական շունչն ու հուզական ոգին: Հուզականությունը, թերևս, Բակունցի անհատականության ամենաբնորոշ հատկանիշն է, որ արտահայտվել է տարբեր ձևերով: Միշտ և ամենուրեք զգացվում է հեղինակի ներկայությունը ինչպես նյութի ընկալման, նույնպես և գործող անձերի գեղարվեստական բնութագրման մեջ: Նա միջամտում է դեպքերին, դրսևորում իր վերաբերմունքը, կողմնորոշում ընթերցողին:

Այստեղից պարզ է, թե ինչու Բակունցի երկերը ներթափանցված են ինքնակենսագրական տարրերով: Նրա կյանքի այլևայլ կողմեր այս ու այն չափով արձագանք են գտել մի շարք ակնարկներում ու պատմվածքներում, որոնցում հեղինակը մերթ հանդես է գալիս որպես պատմող, մերթ՝ իբրև գործող անձ, մերթ էլ դառնում դեպքերի վկա կամ ականատես: Բոլոր դեպքերում, սակայն, իրականն ու հորինվածը այնպես են միահյուսված, որ դժվար է լինում որոշել դրանց սահմանները: Այդ նշանակում է, որ փաստական նյութը սոսկ ատաղձ է հեղինակի գեղարվեստական մտահղացման համար: Այնպես են նկարագրված իրական դեպքերն ու դեմքերը, ծանոթ վայրերը, որ, հարազատ լինելով հանդերձ, նոր են ու հմայիչ: Այդ վերաբերում է մանավանդ ակնելյան բնապատկերներին, որոնցով այնպես հարուստ է նրա ստեղծագործությունը: Մեր արձակագիրներից քչերի մոտ կարելի է գտնել բնության այն անմիջական ընկալումը, որ հատուկ է Բակունցին: Նա անսահմանորեն սիրում է բնությունը և խորապես վերապրում նրա կանչն ու հունչը: Բնանկարը հեղինակի մոտ ո՛չ միայն արտաքին ֆոն է, այլև, որոշ իմաստով, գործողության մասնակից և ակտիվ դեր է կատարում հերոսների ներքնաշխարհի բացահայտման ու սյուժեի զարգացման մեջ:

ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ մեջ հազվադեպ երևույթ է, երբ արձակագիրն իր առաջին գրքով գրավում է ընթերցող հասարակայնության ուշադրությունը, միանգամից նվաճում նրա սերը:

Այդպիսի հեղինակներից է Ա. Բակունցը, որն իր պատմվածքների անդրանիկ ժողովածուով (Մթնաձոր) մեկեն ճանաչվեց որպես կազմակերպված ու հասուն գրող և հավասարի իրավունքով կանգնեց իր ավագ ժամանակակիցների կողքին: Նրա անվան շուրջն ստեղծվեց համակրանքի ու սիրո ջերմ մթնոլորտ, և արագ տարածվեց հեղինակի համբավը:

Եվ դա հասկանալի է. իր առաջին գրքով Բակունցը գրականություն բերեց մինչ այդ անհայտ մի աշխարհ, որի ճակատին դրոշմեց Մթնաձոր անունը: Դժվար է գտնել ավելի խոսուն վերնագիր, քան այն, ինչ տվել է Բակունցը: Նրա պատկերած գյուղաշխարհը, հիրավի, մթնաձոր է. «Մի ուրույն աշխարհ է Մթնաձորը,— կարդում ենք համանուն վերնագիրը կրող պատմվածքում,— քիչ է ասել կուսական ու վայրի: Թվում է, թե այդ մոռացված մի անկյուն է այն օրերից, երբ դեռ մարդը չկար, և բրածո դինոզավրը նույնքան ազատ էր զգում իրեն, ինչպես արջը մեր օրերում»:

Մթնաձորի այս նկարագրությամբ Բակունցն ընթերցողի առաջ բացում է նախասովետական հայ գյուղի հազարամյա գիրքը, որը լի է ողբերգական անցքերով: Նրա «յուրաքանչյուր էջը տգիտության մի զոհի մարտիրոսագիր է,



սկեսրոջ ահի տակ, բռնակալ ամուսնու կրնկի տակ ընկած կնոջ տանջանքի նկարագիր կամ ծածուկ խեղդամահ արած մանուկների պատմություն»:

Ճշմարիտ արվեստագետի հմուտ գրչով հեղինակը վերարտադրում է անցյալի հայ գյուղի տխրաթախիծ իրականությունը, որտեղ տիրապետում են անտառապահի դագանակն ու ստրաժնիկի մտրակը: Խավարի ու հետամնացության մեջ իր մռայլ գոյությունը քարշ տվող աշխատավոր գյուղացին դարձել է ամեն տեսակ կամայականությունների զոհ: Նրան ճնշում ու հարստահարում են տանուտերն ու վաշխառուն, քյոխվան ու գրագիրը, ցարական չինովնիկները, որոնք ղեկավարվելով մերկ շահի սկզբունքով՝ թալանում են գյուղացու ունեցվածքը, ոտնահարում նրա արժանապատվությունը: Մարդը մարդու համար դարձել է գայլ, նա զրկում է իր նմանին վայելքից, խոչընդոտում ամեն քայլափոխում: Ավելին, հարստահարիչները նույնքան վտանգավոր են, որքան Մթնաձորի վայրի գազանները:

Այդ տեսակետից հատկանշական է ժողովածուի հենց առաջին պատմվածքը (Մթնաձոր), ուր ներկայացված է մարդկային մի ահավոր ողբերգություն: Անտառապահ Պանինը մի շալակ ցախ տեսնելով որսորդ Ավու ուսին՝ պահանջում է կամ քսան ռուբլի տուգանք տալ կամ էլ մի արջ սպանել: Անկարող լինելով տալ պահանջած գումարը՝ որսորդը փորձում է սպանել մի արջ, որը, սակայն, թաթի հարվածով նրա ծոծրակի փափուկ մսի մեջ է խրում սուր ճանկերը և ողջ կատաղությամբ իրեն քաշում գանգի մորթին, «մորթու հետ էլ գլխի մազերը, ունքերը, աչքերն ու քիթը»: Այնպես է այլակերպվում հին որսորդը, որին միայն «զարհուրանքով կարելի է նայել»,— խոր կսկիծով ավարտում է իր խոսքը հեղինակը:

Մթնաձորի ու նրա բնակիչների չարքաշ կյանքի սույն նկարագրությունը յուրահատուկ նախերգանք-ֆոն է ամբողջ շարքի համար: Դրանով հեղինակը, ասես, բացում է վարագույրն այն մռայլ իրականության, որտեղ կաշկանդված է աշխատավոր մարդու գործունեությունը և շղթայված նրա հոգու թռիչքը: Նախնադարյան անձուկ կյանքով ապրող գեղջուկն ու գեղջկուհին շնչահեղձ են լինում խավարի թագավորության մեջ: Անասելի ծանր է նրանց կացությունը, հետամնաց ու դաժան՝ միջավայրը, որի տիպական ընդհանրացումներն են Աքարը, Դրմբոն, Մրոցը: Կյանքը դարձել է մի ծանր բեռ, բարձր լեռներով ու մթին անտառներով շրջապատված այդ գյուղերում ապրող աշխատավորի համար, կորացել է նրա մեջքը, խախտվել հավատը, և նա դարձել է գերի քարացած նախապաշարումներին: Ինչպես հեղինակն է ասում՝ լռակյաց ու անքնին այդ մարդիկ ապրում են «քարանձավներում և բարձրանում են քարե սանդուղքներով»: Զրկված լինելով բժշկական օգնությունից՝ մարդիկ ստիպված դիմում են այնպիսի մի հրեշավոր միջոցի, ինչպիսին է «խաղլացավը», որ գյուղացիք անվանում են «հայվանի ադաթ»: Հիվանդին երկու օր անընդհատ պար ածելով լույկան կանանց և զուռնա-դհոլի նվագակցությամբ՝ վերջում երկու ուժեղ տղամարդիկ ֆիզիկապես տանջում են նրան, աքացի տալիս, թևերը ջարդում՝ իբր թե «փախցնում» ցավը... (Խաղլացավ): Թումանյանի Նեսոյի քարաբաղնիսը հիշեցնող այս «բժշկությունը», որ հավասար է սպանության, հեղինակը նկարագրում է խոր կարեկցանքով ու վշտակցությամբ, երբեմն էլ՝ թեթև հումորով:

Բակունցի նկարագրած կյանքի այլանդակ կողմերից է անչափահաս ամուսնությունը: Իր պատմվածքներից մեկում (Աքար) նա պատմում է, թե ինչպես իր ծանր բեռը թեթևացնելու համար որբևայրի Ծահանը ստիպված համաձայնում է, որ մանկամարդ աղջիկը՝ Սանդուխտը, ամուսնանա Ղազախի Օհանի որդու հետ: Եվ այդ այն դեպքում, երբ գիտե, որ Օհանը աղջկա հետ պահանջում է նաև կալն ու մարագը: Ինչևէ, խեղճուկրակ մայրն ընդառաջում է այդ գործարքին և ակամա դառնում հարազատ դստեր կործանման պատճառը:

Նույնքան ցնցող ու ողբերգական է նաև Տիգրանուհին պատմվածքը, ուր հեղինակը սեղմ ու դիպուկ տողերով պատկերել է մի դժբախտ գեղջկուհու կերպար: Հին երազահանի լուսանցքների վրա գյուղացի Վասիլը գրի է առնում «շաբաթվա կարևոր դեպքերը»: Այդ գրառումներից պարզվում է, որ նրա քույրը՝ տասնվեցամյա Տիգրանուհին, եղբոր «պարտքի դիմաց» անընդհատ աշխատում է, քաղհան է անում, խուրձ կապում, բուրդ լվանում, կալ կալսում, լոբի է քաղում և այլն: Մի օր էլ խեղճ աղջկա ոտքին վերք է առաջանում, որը և, ըստ երևույթին, դառնում է նրա մահվան պատճառը: Ու թեև հեղինակը ոչինչ չի ասում դեռատի աղջկա ներաշխարհի մասին, բայց լուսանցքային կարճ ու հուզիչ նշումներն իսկ ցույց են տալիս նրա մաքուր խիղճն ու խոնարհությունը: Տիգրանուհին զոհ է դառնում հոգսի ծանրությունից կոպտացած, գռեհիկ ու դաժան շրջապատին:

Տիրող անարդարության մի ցայտուն պատկեր է Օրանջիա պատմվածքը, որ հնչում է որպես ահեղ մեղադրական հին աշխարհի դեմ: Գյուղացի Մանասը որոշում է տուն կառուցել Օրանջիայի գեղատեսիլ ձորակում, որին աչք է դրել նաև Դավոյենց Առաքելը: Վերջինս, որ «ջանդարմի հետ կապ ունի, գյուղում լրտեսու-

թյուն է անում, մեծամեծ չինովնիկների աջ ձեռքն է», ոչ մի կերպ չի հաշտվում դրա հետ: Մի առավոտ նա նույնիսկ սպառնում է Մանասին, դագանակով խփում նրա գլխին: Բայց, չնայած դրան, օրեցօր բարձրանում են Մանասի տան պատերը, որոնք փշի նման ծակում են Առաքելի աչքը: Սա ավելի է կատաղում և յուղ ու մեղրով գնում է ծանոթ պրիստավի մոտ, նրա օգնությամբ դառնում տանուտեր: Կարճ ժամանակ անց, Առաքելը նույն պրիստավից պահանջում է կազակներ՝ գյուղում երևան եկած «խառնակիչ մարդկանց» պատժելու համար: Սյուժեի հետագա զարգացումն առավել բացահայտ է դարձնում գյուղական հարստահարիչի և աշխատավոր Մանասի հակադրությունը: Առաքելը խմեցնում է կանչված կազակներից մեկին և նրան ցույց տալիս Մանասի կնոջը, որ լվացք էր փռում: Ապա, օգտըվելով Մանասի բացակայությունից (նա անտառ էր գնացել), հարբած կազակին ուղարկում է նրա տուն, որը և նույն գիշեր դառնում է հրդեհի ճարակ. «Օրանջիայի ձորակը վառվում է, ալավը երկինք էր հասնում... երբ լուսը դեմ կրակը հանդարտեց, խանձված ընկած էին Մանասի կինը, երեխան, կազակը»: Դժվար չէ հասկանալ, որ հրդեհը տանուտերի գործն է, բայց նա անամոթաբար Մանասին է մեղադրում կազակի սպանության մեջ և անմեղ մարդուն աքսորել տալիս «հեռավոր տունդրաները». «Գնաց, էլ ի՞նչ եղավ, տեղեկություն չկա...»,— ավարտում է պատումը հեղինակը:

Ինչպես նշված, նույնպես և այլ պատմվածքներից երևում է, որ Բակունցը բուռն հետաքըրքրություն է ցուցաբերում ժողովրդի կյանքի հանդեպ, քարից հաց քամող, աշխատող ու ժրաջան մարդու հանդեպ, որը լի է ապրելու և ստեղծագործելու ձգտումով և որի երազանքը, ավա՜ղ, հաճախ փշրվում է՝ կոպիտ ուժերին բախվելով: Պատահական չէ, որ նրա վաղ շրջանի երկերում որպես գլխավոր հերոսներ հանդես են գալիս հայրենի հողի հետ կապված աշխատավոր մարդիկ՝ երկրագործներ, անասնապահներ, այգեգործներ, որսորդներ, բրուտներ, անտառապահներ, որոնցից յուրաքանչյուրն իր մեջ կրում է ժողովրդական խառնըվածքի ու հոգեբանության բնորոշ գծերը:

Այդպիսին է, օրինակ, Արթին պապը (Նամակ ռուսաց թագավորին), որի կերպարը քանդակված է ճշմարիտ արվեստի ուժով: Ազնիվ, հյուրասեր ու արդարամիտ նահապետական այդ ծերունին մարմնավորում է մարդկային հոգու վեհությունն ու համբերատարությունը: Չնայած կրած ցավերին, պրիստավի մոտ արյունլվիկ լինելուն, նա չի կորցնում իր հավատը և մինչև մահ փայփայում է արդարության հասնելու հույսը:

Նույն այդ «ռամիկ հավատով» է ապրում ու շնչում նաև Մուքել ամին (Սպիտակ ձին), որը տրտնջալով առաջին համաշխարհային պատերազմի ծանր հարվածներից կքած աշխատավոր գյուղացիության դառը վիճակի համար, բարեմաղթում է. «բարի լույս բացվի մեզ վրա և մեզ նման չարքաշ մշակների վրա... բարով տեսնենք մեր զավակների ազատությունը սրի բերանից: Ողջություն լինի և արդար լիություն...»:

Ժողովրդի բազմափորձ կյանքից բխող այդ երազանքը իրականացրին նրա ընդերքից ելած առաջավոր մարդիկ, որոնց գեղարվեստական կերպարների կերտման գործում ևս ակընբախ հաջողությունների է հասել Բակունցը:

ՀԱՐԿ Է ՆՇԵԼ, որ նոր կյանքի համար մըղված պայքարը և ընդհանրապես հեղափոխության ու քաղաքացիական կռիվների հերոսապատումը կարևոր տեղ են գրավում Բակունցի ստեղծագործություններում: Ինչպես իր առաջին գրքում, հաջորդ ժողովածուներում ևս (Սև ցելերի սերմնացանը, Անձրևը) նա հաճախ է անդրադարձել այդ թեմային և գեղարվեստորեն ցուցադրել աշխարհի հեղափոխական վերափոխման գաղափարների ներթափանցումը հայոց մթնաձոր, դրանց ազդեցությամբ հայ գյուղացիության մտայնության մեջ կատարված խոր բեկումը:

Այդ կապակցությամբ հիշարժան են Վանդոնց Բաղին, Բրուտի տղան, Սև ցելերի սերմնացանը և այլ գործեր, որոնք տոգորված են կենսահաստատ պաթոսով: Այդ երկերում հեղինակը հասունացող իրադարձությունների համայնապատկերի վրա ցույց է տվել գյուղացիական մասսաների գիտակցականության աճը, նրանց պայքարը սոցիալական անարդարության ու ճնշման դեմ: Նա ցույց է տվել, թե ինչպես, այլևս չհանդուրժելով բռնության լուծը՝ աշխատավորությունն իր միջից ծնում է ըմբոստ հոգիներ, որոնք դառնում են նոր կյանքի համար ակտիվ մարտնչողներ:

Այդպիսիներից է Հաքուդը, որը վաղ հասակից ճաշակել է կյանքի դառնությունը և զգացել սոցիալական անհավասարությունն ու անարդարությունը: Տեսնելով տավարած հոր չարքաշ կյանքը, նրա արժանապատվության ստորացումը՝ աչքաբաց պատանին զայրույթով է լըցվում շրջապատի դեմ: Նրա զայրույթը փոխվում է ցասման, երբ հոր փոխարեն «ինքն է ընկնում դռնեդուռ և հաց կամ դրամ հավաքում»: Պատանին աստիճանաբար հասկանում է աշխարհի «չարն ու բարին» և համաձայնում ծնողների առաջարկին՝ գնալ Բաքու, արհեստ սովորել... Բայց այդ երազանքը մնում է անկատար, որովհետև պայթում է պատերազմը, և ջատերի հետ բանակ է կանչվում նաև Հաքուդը:

Բակունցը գիտակցաբար չի նկարագրում իր հերոսի կյանքը պատերազմի դաշտում, բայց վերջինիս ճակատային նամակներից պարզվում է զինվորի գիտակցականության հասունացումը, երևույթների նկատմամբ հեղափոխական դիրքորոշման ձևավորումը: Այսպես, օրինակ, նա ծնողներին հայտնում է, որ «թագավոր է՛լ չկա», բայց դա «քիչ է, պիտի այնպես անել, որ ամեն մարդ իր հալալ քրտինքն ուտի»: Այնուհետև գրում է, որ ինքը «մի պոլկի կոմիտե է դառել, որ իրենց պոլկն էլ կռիվ չի ուզում»:

Ակներև է, որ Հաքուդը բանակում դարձել է բոլշևիկ և իր նամակներով հեղափոխական գաղափարներ է տարածում: Այդ առավել պարզորոշ երևաց, երբ նա վերադարձավ գյուղ և հետևյալ օրն իսկ գյուղական ժողովում ընդհարվեց վարժապետ Մինասի և մեծահարուստ Իսանանց մեծ տղի հետ, որոնք միապետական կարգերի տապալումից հետո տեր ու տնօրինություն էին անում գյուղում: Դրանից հետո Հաքուդը գնում է քաղաք, ուր և մասնակցում է տիրող կարգերի դեմ ծավալված հեղափոխական պայքարին: Շուտով ապստամբ բոլշևիկների հետ ձերբակալվում է նաև Հաքուդը և մի քանի օր անց գնդակահարվում:

Հաքուդի հոգևոր աճն ու գաղափարական հասունացումը ներկայացված են ճշմարտացի, ուստի և նրա կերպարը համոզիչ է, ոգեշնչող:

Հաքուդից շատ բանով չի տարբերվում Անդոն (Բրուտի տղան), որն իր մանկությունն անց է կացրել բրուտների միջավայրում: Տպավորիչ է նրա մանկապատանեկան տարիների նկարագրությունը, որից աստիճանաբար հառնում է ինքնասեր և արժանապատվություն ունեցող պատանու հմայիչ դեմքը: Նրա համակրանքը «վիզը բարակ, դեղնած աղջկա»՝ Նուշիկի նկատմամբ, վերջինիս մահը և թողած տպավորությունը դրոշմված են խոսքի մեծ վարպետությամբ: Թողնելով դպրոցը՝ Անդոն դառնում է հորթարած, ապա՝ մշակ, քար ջարդող, հետո աշխատանքի է ընդունվում գյուղում կառուցվող հիդրոկայանում, ուր արդեն դառնում է մոնտյոր: Այստեղ էլ նա համակվում է հեղափոխական տրամադրությամբ, կապ է հաստատում ընդհատակյա բոլշևիկյան կազմակերպության հետ, կատարում նրա հրահանգները: Եվ երբ հասնում է վճռական ժամը, ու աշխատավոր մասսաները գրոհի են ելնում դաշնակների վայրագ տիրապետության դեմ, Անդոն կանգնում է կրակի առաջին գծում: Նա է առաջնորդում ձիավորներին դեպի քաղաք և շտապում դեպի կամուրջը, որտեղից պիտի գար կարմիր հեծելազորը: Հենց այստեղ էլ, նոր կյանքի լուսաբացին հերոսի մահով ընկնում է Անդոն, նրա արյան գնով ձեռք բերված հաղթանակը նշանավորում է հայ ժողովրդի նոր կյանքի արշալույսը:

Այդ նույն գաղափարն է արտահայտված Սև ցելերի սերմնացանը պատմվածքում, որտեղ հեղինակը պատկերել է ժողովրդի ազատագրության համար պայքարի ելած, հողի աշխատավորի կերպարը: Նկարագրելով սովետական կարգերի հաստատման համար Սեթի մղած պայքարը, ապա և՝ հերոսական մահը, Բակունցը ցույց է տալիս, որ նոր կյանքի համար զոհված մարտիկները անմահ են: Այդ է վկայում նաև գյուղական ակումբի վարագույրը, որի վրա ողջ հասակով նկարված է մի հսկա սերմնացան, որ ցանում է ոսկեհատ ցորենը սև ցելերում: Ու թեև նկարի տակ ոչինչ չի գրված, բայց ամենքին թվում է, թե դա հենց Սեթն է: Դրան ամենից ավելի հավատում է մայրը՝ պառավ Երանը. նա ամեն օր սրբում է վարագույրի փոշին, և երբ ոչ ոք չի լինում ներսը, հանդարտ զրուցում է նկարի հետ:

ԲԱԿՈՒՆՑԻ ՀԱՄԱՐ ԿԱՐԵՎՈՐ Է ո՛չ այնքան փաստը, որքան դրա գեղարվեստական ընկալումը, բանաստեղծական արտացոլումը: Առօրյա դեպքերի վերարտադրությամբ նա կարողանում է բացահայտել տվյալ իրականության բնորոշ կողմերը, ցուցադրել դրա ստվերներն ու լույսերը: Խուսափելով էմպիրիկ փաստագրությունից՝ նա ստեղծել է մի շարք տիպական կերպարներ, որոնք դրսևորում են սովետական իրականության վերափոխիչ ուժը, նոր կյանքի գեղեցկությունը:

Այդ առումով ուշագրավ է Լառ-Մարգարը՝ համանուն պատմվածքի հերոսը, որն իր կենսապատմական տվյալներով խտացնում է մեր ժողովրդի մի ամբողջ հատվածի պատմական ճակատագիրը:

Բակունցն առաջիններից էր, որ վարպետորեն պատկերեց հայրենադարձի կյանքը, նրա երեկն ու այսօրը: Ինչե՛ր ասես չի տեսել Լառ-Մարգարը. կոտորած, գաղթ, ապա՝ կիզիչ անապատներ, ուր ճաշակել է տարագիր մարդուն վիճակված դառնությունները: Կորցրած հարազատներին, իր թոռնիկի՝ Թորոսիկի, ձեռքից բռնած նա թափառել է օտար երկրի տակ, «հեղեղի բերանն ընկած մրջյունի պես վեր ու վար արել...»: Վերջապես հասել է բերկրալի օրը. Լառ-Մարգարը ևս հանգրվան է գտել Սովետական Հայաստանի գյուղերից մեկում: Զրվոր է նա, սիրում է աշխատանքն ու աշխատավորին և վերին աստիճանի արդարամիտ է: Փորձառու ծերունին փայփայում է երկու միտք՝ մեծացնել Թորոսիկին, որի մեջ տեսնում է «անհետ կորած որդու պատկերը» և «մի ապահով հողում պահ տալ» ծննդավայրից բերած ծիրանի կորիզները:

Նորոգ հայրենիքում կատարվում են նրա նվիրական իղձերը. մեծանում է թոռնիկը, դպրոց գնում, իսկ ծիրանի կորիզները դառնում են տունկեր և «ձգվում արևի տակ»: Եվ եթե մեկին լավություն է ուզում անել Լառ-Մարգարը, ժպտալով ասում է. «կեցի՛ր, ծիրաններս բոյովնան, քեզի մեկ հատ պիտի տամ: Նայե, ինտո՞ր համեղ են»:

Բակունցի գրչի տակ ծիրանի կորիզները դարձել են մեր ժողովրդի կենսատոկունության խորհրդանիշ, իսկ Լառ Մարգարի կերպարը ձեռք է բերել հավաքական իմաստ ու նշանակություն: Նրա մեջ մարմնավորված են ժողովրդական խառնվածքի լավագույն գծերը՝ կենսասիրություն, աշխատասիրություն, ապրելու և գործելու եռանդ և անխախտ հավատ գալիքի նկատմամբ:

Ժողովրդական խառնվածք ունեցող մի ուրիշ կերպար է Հազրոն (Ծիրանի փող), որի բնավորությունն ու հոգեբանությունը տրված են վառ գույներով: Սա նույնպես ջրվոր է՝ բարձրահասակ ու կորովի մի աշխատավոր, որը, չնայած առաջացած տարիքին, ջրում է քարքարոտ հողերը և վերհիշում հեռվում թողած հայրենի ափերը: Ծնվել է Սասունում, նրա քարափների վրա է խաղացել Հազրոյի մանկությունը: Պատանության տարիներին նա «փող է նվագել քարանձավների ստվերում, և պարզ երգերին արձագանքել են ձորերը»: Ապրել է գեղջկական կյանքով և կռվել գազանների հետ ու նրանց դեմ, ովքեր «հրացանների կրակոցների աղմուկով քշում էին նախիրը... առևանգում կին ու երեխա»:

Բայց ահա պայթում է առաջին համաշխարհային պատերազմը. «ամպերի փոխարեն քարափների վրա նստում է այրվող գյուղերի մոխիրը»: Հազրոն, առած կնոջն ու աղջկան՝ անցնում է «քարայծի արահետներով», հոգնած ու ահն աչքերին գնում «մերթ իբրև քուրդ հովիվ, մերթ իբրև քաղցած գայլ» և հասնում մի անծանոթ աշխարհ... Դա «մի շոգ հարթավայր էր, պղտոր դեղին գետերով...»: Նա հանում է ծիրանի փողը և խանձված շրթունքներով նվագում լեռների երգը, որ սաստիկ հուզում է թե՛ իրեն և թե կնոջը: Ապա բռնում է մի ճանապարհ, բազմիցս մոլորվելով անծանոթ ուղիներում: Եվ երբ արդեն ճերմակում են մազերը, Հազրոն հասնում է լեռնային Ջյանբերդ գյուղը: Այստեղ էլ բնակություն է հաստատում նա՝ ջերմանում նոր կյանքով, տոգորվում կենսահաստատ տրամադրությամբ. «երեկ ամպ էր, էսօր պարզ արև...»,— ասում է Հազրոն և դրանով իսկ բացահայտում իր անցյալի ու ներկայի հակադրությունը:

Այժմ Հազրոն ապրում է սեփական հարկի տակ՝ խաղաղ ու ապահով: Ամուսնացրել է աղջկան, ունի թոռնիկներ, որոնցից ավագը հաճախ է լինում պապի մոտ: «Լեռան գյուղերի ամենալավ մարդը»՝ Հազրոն, պահպանում է հայրենի ավանդույթները և չի մոռանում հնամյա զրույցները Ձենով Օհանի, Մսրա Մելիքի և Թլոր Մանուկի մասին: Բայց փոխվել են ժամանակները, փոխվել է նաև Հազրոյի երգը: Նա այժմ նվագում է «ոչ լեռնականների կորովի երգը, որից բորբոքվում է արյունը, այլ հովվական պարզ մի երգ», որը հարազատորեն արտահայտում է նրա ողջ էությունը: Այդ երգի մեջ կան և՛ թախիծ, տխուր հեկեկոց, «կարոտի հնչյուններ», «կա և՛ ջինջ ուրախություն, երբ լեռների վրա ծագում է արևը, ելնում է ծուխը, մշակը գնում է աշխատանքի...»:

Ծերունի Հազրոն կարոտում է հայրենի եզերքը՝ Սասունը, անուշ տխրությամբ վերապրում այնտեղ անցկացրած օրերը և երազում «հեղ մը երթալ տեսության» Մարութա բարձր սարին, երգել խաղաղության երգեր. «...Մարդիկ հալալ-զուլալ ախպրտոց պես գրկեն զիրար, չեղնի ո՛չ տեր, ո՛չ մշակ, ո՛չ թուր, ո՛չ բռնություն...»:

Այսպիսի վսեմ երազանքով է ապրում Հազրոն, որը ցանկանում է իր ծիրանի փողը ավանդ թողնել «քաջարծիվ թոռնիկին»: Պատմվածքն ավարտվում է լեռնային գյուղի խաղաղ երեկոյի նկարագրությամբ, որ հնչում է որպես վերածնված ժողովրդի հաղթության արդար հիմն. «Ջյանբերդ, Ջյանբերդ... դու դառնում ես անպարտելի ամրոց, քո բարձր լեռները զարթնել են, և քո լանջերին հնչում են հաղթության երգերը: Մի վիթխարի ծիրանի փող, առանց հին ահի և նոր խնդությամբ հնչեցնում է մեր արդար երգերը»:

Հիրավի, սոցիալական և ազգային ճնշումից ազատագրված ժողովրդի շուրթերից հնչում են միայն հաղթության արդար երգեր, որոնց հյուսվածքը ջերմացած է Լենինի աշխարհաշեն գաղափարներով: Այդ գիտակցում են Բակունցի կերտած ժողովրդական կերպարները, որոնց խորին համոզմամբ «Լենինի լույսը մեզ ազատություն տվեց»: Եվ այդ ճշմարտության գեղարվեստական հուժկու արձագանքն է Արագածի լանջերում ապրող, անգրագետ հովիվ Մուրոյի զրույցը, որ հնչում է որպես սրտաբուխ ասք հեղափոխության հանճարի և նրա վերափոխիչ գործունեության մասին:

Գ.Ր. Ա. ՍԱՐԳՍՅԱՆ



# ՇԻԿԱՀԵՐ ՊԱՏՎԻՐԱԿԸ

Հայաստանի Մայիսյան ապստամբության հերոսական պատմության մեջ առանձնահատուկ տեղ է գրավում Սևքարը: Դիլիջանի գավառում առաջինն այստեղ է ծածանվել ապստամբության դրոշը: Ապստամբության ղեկավարը՝ անվանի հեղափոխական Շավարշ Ամիրխանյանը, դրա ակտիվ մասնակիցներից մեկի՝ Եղիշե Հովսեփյանի մասին գրել է.

Մայիսի 19-ի առավոտյան Սևքարում հնչեց հեռախոսի զանգը. գեներալ Բաղդասարովը հարցրեց.

— Շարժվո՞ւմ է, արդյոք, դեպի Իջևան Սևքարի միլիցիական վաշտը:

Սևքարեցի հեռագրիչ Եղիշե Հովսեփյանը վաշտի հրամանատարի անունից պատասխանեց. «Մի՛ք անհանգստանա, գեներա՛լ, հենց հիմա վաշտը դուրս կգա»: Իրականում վաշտն արդեն դուրս էր եկել, բայց ոչ թե գեներալի տրամադրության տակ դրվելու, այլ նրան ու մյուս դաշնակներին ձերբակալելու և շրջանում սովետական իշխանություն հռչակելու համար: Շարքային հեռագրիչ Եղիշե Հովսեփյանը հիմարացրեց դաշնակ գեներալին: Ապստամբության սկզբից մինչև վերջ Հովսեփյանը զենքը ձեռքին գտնվում էր Ղազախ—Շամշադինի ապստամբների շարքում:

Մայիսյան ապստամբությանն ակտիվ մասնակցելու համար Դիլիջան—Ղազախ—Շամշադին գավառային հեղափոխական կոմիտեի նախագահ Շավարշ Ամիրխանյանը մարտական հրացան է նվիրել Եղիշեին, որն այժմ պահվում է Իջևանի հեղափոխական թանգարանում: Ապստամբությունից հետո Եղիշե Հովսեփյանը շարունակում է հեղափոխական բուռն գործունեությունը՝ հանդիսանալով Սևքարի—Աչաջուրի սարերում գործող պարտիզանական ջոկատի հրամանատարը:

Շատ բան կարելի է գրել Ե. Հովսեփյանի հեղափոխական, հետագա պետական-հասարակական գործունեության մասին: Ներկա ակնարկը նվիրված է նրա մի հերոսագործությանը՝ կատարված մեծ Հայրենականի տարիներին, երբ նա ՀԿ(բ)Կ Կենտկոմի պատվիրակության կազմում այցելել է ռազմաճակատ:

1942 թվականի նոյեմբերյան խոնավ ու ցուրտ գիշեր էր: Մեկն այն տագնապալից գիշերներից, երբ Թերեքյան լեռնաշղթայի հյուսիսային կողմում դիրքավորված, ամեն րոպե սպասում ես, թե ահա՝ ուր որ է դարանակալած թշնամին կհարձակվի, կամ մենք հրաման կստանանք հարձակման անցնելու:

Խորհրդավոր լռություն և խավար է նաև թշնամու կողմերում: Այնքան են մոտ թշնամու դիրքերը, որ այնտեղից լսվում են ոտնաձայներ, նույնիսկ՝ հազ: Երբեմն մեր գլխավերևում սուրում են թշնամու խրամատներից արձակվող գնդակները:

Մի խումբ հետախույզներ պատրաստվում էին անցնել թշնամու թիկունքը և տեղեկություններ բերել նրա ուժերի դասավորման մասին: Ե. Հովսեփյանն էլ ցանկություն հայտնեց գնալ նրանց հետ. օգտագործել էր ուզում քաղաքացիական պատերազմի ժամանակ ձեռք բերած իր փորձը: Բայց հրամանատարը համամիտ չեղավ նրա հետ, այլ խնդրեց, որ նա հակիրճ զրուցի մարտիկների հետ: Նրա ջերմ խոսքերից ոգևորված, հետախույզները գործի անցան և հաջողությամբ կատարելով մարտական առաջադրանքը՝ վերադարձան թշնամու թիկունքից:

Հրամանատարական գետնահյուղակում, լապտերի աղոտ լույսի տակ, անջրանցիկ վերարկուների մեջ փաթաթված մի խումբ մարդիկ ինչ-որ վիճում էին: Վիճաբանողների կենտրոնում էր միջահասակ, ամրակազմ, շիկահեր, ցորենագույն դեմքով մի մարդ՝ կաշվե կիսավերարկուով: Զրուցակիցները կես-զարմացած, կես-ակնածանքով նայում էին նրան, ուսերը թոթվում: Զինվորական ծառայության տարիքն անց այդ մարդը նայում էր խոսողներին, խորամանկ ժպտում: Հանկարծ, մոռանալով իրավիճակը, բարձրաձայն, լիաթոք ծիծաղեց, ապա անմիջապես ափով փակելով բերանը, դարձավ զրուցակիցներին.

— Աղա՛, էդ գյադեքը տեղներս կիմանան...

Գյադա նա անվանում էր ֆաշիստներին:

Շիկահերը կուզեկուզ անցնում էր խրամատից խրամատ, շշուկով զրուցում էր զինվորների

հետ, կատակում, ոգևորում: Խրամատներից մեկում նա հանդիպեց վաղեմի ծանոթ հրամանատարներից մեկին և ուրախ փաթաթվեց նրան.

— Մովսե՛ս ջան, այդ դո՞ւ ես: Ա՛յ տղա, այդ ի՞նչ ես գրում այս մթության մեջ: Չլինի՞ շարունակում ես հին սովորությունդ...

Ծիկաներին քաջ հայտնի էին Բաբախանյանի սերը գիր ու գրականության նկատմամբ, բայց չէր կարծում, թե ճակատային այսպիսի պայմաններում նա կշարունակի այդ զբաղմունքը: Մովսեսը մինչև ականջները կարմրած, ասես արդարանալով՝ պատասխանեց.

— Ոչի՛նչ, օրագիրս էի լրացնում,— հետո՝ խոսքը փոխելու համար հարցրեց,— դու այն ասա, թե ի՞նչ տպավորություն ստացար հետախույզների ջոկից: Լսեցի, որ ցանկացել եք նրանց հետ գնալ հետախուզության: Մտադիր եմ մեր դիվիզիայի «Կարմիր զինվոր» թերթում հետախույզների սխրագործությունների մասին մի ակնարկ գրել: Խմբագիրն է հանձնարարել:

— Գրի՛ր, անպայման գրի՛ր,— ասաց Եղիշեն,— մի-մի արծիվներ են նրանք, հոգի տղաներ...— հետո խորամանկորեն ժպտալով շարունակեց,— մեկը պիտի լինի՝ քո մասին գրի: Մի տե՛ս, թշնամին աչքիդ առաջ է, դու խրամատում նստած, տետրակը դրել ես ծնկներիդ ու լապտերիկի լույսով օրագիր ես լրացնում:

Մինչ նրանք զրուցում էին, խրամատում շշուկներ լսվեցին.

— Այդ մարդն ինձ ծանոթ է: Սնքարեցի է:

— Այո՛, սնքարեցի Եղիշե Հովսեփյանն է:

— Հայաստանի պատվիրակների հետ է եկել:

— Ասում են թե նա...

Ահավոր դղրդյունն ընդհատեց նրան: Թշնամին վերսկսեց հարձակումը:

Դիտակետը գտնվում էր մի բարձունքում: Գիշեր-ցերեկ այնտեղից հսկում էին շրջապատը: Նենգ թշնամին կարող էր ամեն րոպե հարձակում գործել կամ հետախույզներ ուղարկել: Ստորաբաժանման հրամանատար կապիտանը շուտ-շուտ հեռախոսով կապվում էր դիտակետի հերթապահի հետ և հետաքրքրվում, թե ինչ նորություն կա: Ամեն անգամ, երբ մեր հետախույզները ուշանում էին, ներքին մի տագնապ էր ապրում հրամանատարը: Վերջապես դիտակետի հերթապահ զինվորը նկատեց մոտեցող քառյակին և իսկույն հաղորդեց հրամանատարին: Բայց նրա համար անհասկանալի էր մի բան. հետախուզության գնացել էին երեքը, վերադառնում են չորսը: Ո՞վ է չորրորդը: Վերջապես ճանաչեց Հայաստանի պատվիրակին և ժպտաց. «Հետախույզների հետ էլ է բարեկամացել...»:

Շուտով Եղիշեին շրջապատեցին զինվորները և սկսեցին աշխույժ զրուցել: Նույն երեկոյան հետախուզության պետի հետ նա ոգևորված խոսում էր.

— Ընկե՛ր Հովսեփյան,— մտախոհ ասաց կապիտանը,— դուք ուզում եք հանդուգն արշավ կազմակերպել, շրջանցել թշնամու դիրքերը և...

— Այո՛, ընդհատեց Եղիշեն,— մնացածն իմ գործն է:

— Բայց այն, ինչ մտածել եք, կարող է կյանք արժենալ,— նկատեց կապիտանը:— Գիտե՞ք, թե ինչ է նշանակում անցնել թշնամու թիկունքով, հասնել քաղաք...

Երևանից ժամանած Հայաստանի կուսկենտկոմի պատվիրակության մասին լսել էին այդ ստորաբաժանումում, բայց նրանցից ոչ մեկին տակավին չէին հանդիպել: Երբ Եղիշեն երևաց խրամատում, զինվորները մոտեցան, շրջապատեցին նրան:

— Ո՞նց եք, տղե՛րք,— դիմեց Եղիշեն՝ գրկելով իր մոտ կանգնած երկու զինվորի:

Սկսվեց մտերմիկ զրույցը:

— Ե՞րբ ենք հարձակման հրաման ստանալու,— հարցրեց կարճահասակ, թիկնեղ զինվորը:

Եղիշեն փորձում էր խավարի մեջ նշմարել մարտի պատրաստ զինվորներին:

Երկար, սրածայր բեղերով մի մարտիկ, որ կարծես ձգտում էր իր տարիքից մեծ երևալ, մախորկան լրագրի խունացած թղթով փաթաթեց, թրջեց լեզվով, ապա գոտուց կախված փոքրիկ քսակից հանեց չախմախը, չրխկացնելով կայծեր առաջացրեց ու վառեց երկար պատրույգը: Հետո դանդաղ, խոսքերը հատ-հատ արտասանելով՝ դիմեց հյուրին.

— Լսել եմ ձեր մասին: Մեծ գործի տեր կոմունիստ եք: Եկել եք մեզ տեսության: Լավ եք արել, խոսք չկա: Բայց դուք այն ասեք, թե ե՞րբ է բացվելու երկրորդ ճակատը: Ի՞նչ բանի են մեր դաշնակիցները:

Հովսեփյանը հակիրճ պատասխանեց, ապա ասաց.

— Տղերք ջան, եթե իմ կարծիքն եք ուզում իմանալ, մեր հույսը պիտի մեզ վրա լինի: Տեսնո՞ւմ եք, ֆաշիստները հասել են Կովկասի նախալեռները:

Հակառակորդի նետած հրթիռները լուսավորեցին մեր խրամատները: Զինվորներն ավելի քողարկվեցին, լռեցին: Տագնապով սպասում էին, թե ինչով կավարտվի մեր զորքերի դիրքավորումն ստուգող թշնամու այդ նոր փորձը:

— Գուցե հարձակման է պատրաստվում սրիկան,— բռունցքները սեղմելով շշնջաց ստո-





րաբաժանման հրամանատարը և նայեց չորս կողմը:

— Օձի գլուխը որ ցավում է, գնում, յոթը ճամփի խաչմերուկում է փռվում,— ավելացրեց Եղիշեն:

— Դո՛ւք եք ժողովրդի հույսը, քաջե՛ր, աշխատեք գետնով չտալ մեր պատիվը:— Ու պատմեց, թե ինչպես մեր երկրի առաջավոր շատ ձեռնարկությունների, ֆաբրիկաների, կոլտնտեսությունների օրինակով Հայաստանի աշխատավորները զօր ու գիշեր աշխատում են «Ամեն ինչ ռազմաճակատի, ամեն ինչ հաղթանակի համար» նշանաբանով:

Կես-գիշերին հրաման ստացվեց առաջ շարժվելու: Այդ հարձակման հրաման չէր, պետք էր գրավել նոր դիրքեր: Աշնան տեղատարափ անձրևից լճակներ էին գոյացել: Զինվորների ոտքերը թաղվում էին ցեխի ու ջրի մեջ: Թերեքի այն ափից մեր զորամասերի վրա տարտղնվում էր թշնամու լուսարձակների լույսը: Շարքերը մի պահ գամվում էին գետնին, ապա շարժվում առաջ: Հրամանատարները ստեպ-ստեպ մոտենում էին շարքերին, ստուգում, կարգադրություններ անում:

Հովսեփյանն էլ զինվորների կողքին էր, քայլում էր նրանց հետ:

— Հը՛, մեր տղա, մինչև բանակ գալդ ի՞նչ էիր անում:

— Տասներորդ դասարանը նոր էի ավարտել... Հորս հետ միասին կամավոր եկանք...

— Ապրե՛ք, ճի՛շտ եք արել:

Նա մոտենում էր զինվորներին, դեմքը մոտեցնում, ուշադիր դիտում, ապա սիրտ տալիս, քաջալերում:

Լսվեց զինվորներից մեկի ծանր տնքոցը: Եղիշեն մոտեցավ.

— Ի՞նչդ է ցավում, տղա՛ս:

— Ոչի՛նչ, ցավում է, կանցնի, մի՛ք անհանգստանա,— մի կերպ պատասխանեց զինվորը:

— Առավոտից մեջքը բռնված է,— նկատեց կողքի ընկերը.— չի թողնում, որ հրամանատարությանը հայտնենք: Ասում է. ուրիշներն իրենց կյանքն են տալիս, իսկ ե՛ս...

— Սպասի՛ր, սպասի՛ր,— ընդհատեց Եղիշեն,— սանբատի՞ն էլ չեք տեղեկացրել: Չեղա՛վ... Այդ բանի նման չէ...

Հովսեփյանի պնդմամբ ու օգնությամբ հիվանդին տեղափոխեցին սանիտարական մաս:

Երկնքում ոռնոցով անցան թշնամու օդանավերը: Սևակնած, վրեժխնդրությամբ լցված զինվորները սեղմեցին բռունցքները: Աշնանային սառն անձրևը շարունակվում էր: Զինվորները առաջ էին գնում ծանր քայլերով: Հեռվից երևացին կրակի բոցեղեն լեզուները...

Մի քանի օր շիկահեր պատվիրակը չերևաց ստորաբաժանումներում: Շատերը ենթադրեցին, թե նա երևի արդեն մեկնել է Երևան: Մինչ նա կատարում էր հատուկ հանձնարարություն:

Զինվորները վերհիշում էին Եղիշեի հետ ունեցած հանդիպումները, նրա խորհուրդները...

— Հիմա մե՞ծ գործի է,— հարցրեց մեկը:

— Դա ի՞նչ կարևոր է,— կարծես փոքր-ինչ վիրավորված, պատասխանեց նրան վաղուց ճանաչողը:— Կարևորը պաշտոնը չէ: Կարևորն այն է, որ մա՛րդ լինի, սի՛րտ ունենա, հասկանա իր ենթականերին:

Զրուցակիցներին մոտեցավ հայաստանցիներից մեկը՝ հանրապետության շրջաններից մեկի մեքենատրակտորային կայանի դիրեկտորի քաղաքական գծով տեղակալը: Իմանալով, որ խոսում են Եղիշե Հովսեփյանի մասին, սկսեց ոգևորված պատմել.

— Անդրկովկասյան ռազմաճակատի շտաբում մտախոհ սպասում էինք, բոլորս մտածում էինք՝ կհանդիպե՞նք, արդյոք, ծանոթների: Մի քանիսը նստած թերթ էին կարդում, ոմանք ննջում էին, ավելի երիտասարդներն անհամբեր ներս ու դուրս էին անում:

Նկատեցի, որ Եղիշեն չկա: Ո՞ւր կլիներ գնացած: Առհասարակ նա ինչպես անակնկալ անհետանում, այնպես էլ անակնկալ հայտնվում էր: Նա շատ կենսասեր է, մի տեսակ հումորով է վերաբերվում կյանքի առանձին երևույթների, իր սրամիտ կատակներով ուրախացնում շրջապատին:

— Տղե՛րք ջան, ձեր հոգուն մատաղ,— ներս մտնելով՝ գոչեց նա,— գնացել էի իմ հին ծանոթ վրացի ընկերոջ տուն: Մտնենք այս հարևան սենյակը և ձեր աչքով տեսեք...

Ոմանք ուրախ, ոմանք թերահավատորեն ոտքի կանգնեցին, մեկը ծույլ-ծույլ նկատեց, թե սա Եղիշեի հերթական կատակն է: Բայց մեծ եղավ բոլորի զարմանքը, երբ տեսան համեղ ուտելիքներով լի սեղանը: Պատերազմի՛ օրերին այդպիսի սեղան:

Պետք էր տեսնել, թե ինչպիսի ախորժակով էին ուտում տղաները, իսկ օրվա հերոսն ուրախ պտտվում էր սեղանի շուրջը, հորդորում, որ ընկերներն ազատ զգան իրենց, ինչպես տանը, սեփականի պես ուտեն հավը, ոչխարի միսը, քաղցրավենիքը...

— Ա՜յ, թե էդ բոլորը այստեղ լիներ,— ասաց երազկոտ աչքերով, նիհար մի զինվոր:

— Դուք դեռ լսեք պատմության վերջը,— շարունակեց ՄՏԿ-ի դիրեկտորի քաղաքական գծով տեղակալը,— առավոտյան ուղեգիր ստացանք զորամաս մեկնելու: Սկսեցինք կարգի բերել մեր հանդերձն ու պայուսակները և... նոր նկատեցինք՝ ինչ-որ մեկը խառնել էր

դրանք, որոշ ուտելիքներ հանել... Ահա թե ինչպե՛ս էր Եղիշեն պատրաստել ընթրիքի այդ ճոխ սեղանը:

Այստեղ կրկին զրույցն ընդհատվեց: Ներս ընկավ մեզ արդեն ծանոթ Արտաշեսը, աջ ձեռքը զինվորական պատվի բռնեց և զեկուցեց, որ հացահատիկով բեռնված ավտոմեքենան ժամանել է:

— Ո՞վ է ուղարկել, ինչպե՞ս,— հարցրին այս ու այն կողմից:

— Ընկերնե՛ր, հանգստացեք, խնդրում եմ,— ասաց կապիտանը,— հացը նա՛ է ուղարկել:

— Ցիկահեր պատվիրա՞կը:

— Այո՛, մեր Հովսեփյանը:

Առաջավոր մարտակարգերում լուրը տարածվեց կայծակի արագությամբ...

Աշնան խոնավ ու ցուրտ գիշեր էր: Մեկն այն տագնապալից գիշերներից, երբ Թերեքի ափին դիրք բռնած, ամեն րոպե սպասում ես, թե ահա, ուր որ է թշնամին կհարձակվի, կամ մենք հրաման կստանանք հարձակման անցնելու: Սպասողական դրությունը տագնապալից է ռազմաճակատում: Խրամատներում խոր լռություն է:

Վերջապես որոտացին «կատյուշաները»: Երկնակամարում երևացին մեր հզոր կործանիչները:

Գունդը խոր պաշտպանությունից անցավ հարձակման:

Ռազմաճակատից վերադառնալուց հետո Եղիշե Հովսեփյանը դադար չուներ: Նա զբաղված էր ռազմաճակատի ու թիկունքի համար խիստ կարևոր գործով՝ հացամթերմամբ: Լինում էր հանրապետության շրջաններում, կոլտնտեսություններում, սովխոզներում: Ամեն տեղ պատմում էր ճակատայինների հերոսությունների, ռազմաճակատային դժվարությունների մասին և ավելացնում. «Մենք պետք է ամեն ինչ անենք, որպեսզի ռազմիկներն անհրաժեշտ հաց ու առհասարակ սննդամթերք ստանան: Առանց դրա հաղթանակն անհնար է»: 1943 թվականի սկզբներին, Պետական պաշտպանության կոմիտեի որոշմամբ, Եղիշե Հովսեփյանը հինգ հոգուց բաղկացած մի բրիգադով գործուղվեց Ստավրոպոլի և Կրասնոդարի երկրամասերը՝ կազմակերպելու հացամթերումը: Առաջադրանքը հաջողությամբ կատարելուց հետո Հովսեփյանը վերադարձավ Երևան և մինչև իր կյանքի վերջը շարունակեց գլխավորել հանրապետության հացամթերման գործը:

**Վ. Մ. ԱՄԻՐԲԵԿՅԱՆ**

---

**ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ**

**ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Մ. Բ., ԽՈՋԱԲԵԿՅԱՆ Վ. Ե., ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ռ. Բ. (պատասխանատու քարտուղար), ԿԱՐԱՊԵՏՅԱՆ Ս. Կ., ԿՃՈՋՅԱՆ Թ. Գ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԵԼԻՔՅԱՆ Մ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՍԱՔԱՆՅԱՆ Ա. Մ., ՍԻՄՈՆՅԱՆ Հ. Ռ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս. (գլխավոր խմբագրի տեղակալ):**

Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 03117 Պատվեր 1520 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ՝ 16.300 Գինը՝ 20 կոպ.:*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 6/VII— 1979 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խասհակյան փող. № 28:*

# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: Հ. 20: *«Հայաստան» հրատ., 1979:*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: Հ. 21: *«Հայաստան» հրատ., 1979:*

Գաղափարական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին: *ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը՝ ընդունված 1979 թ. մայիսի 6-ին: «Հայաստան» հրատ., 1979:*

Գ. ԱԼԵՔՅԱՆ— Հայաստանի երիտասարդությունը Մեծ հայրենականին: *«Հայաստան» հրատ., 1979:*

Ն. ՍԱՐՈՒԽԱՆՅԱՆ— Ստեփան Շահումյանի պատմագիտական հայացքները: *«Հայաստան» հրատ., 1979:*

Մ. ՇԱԽՆՈՎԻՉ— Փիլիսոփայության ծագումը և աթեիզմը: *«Հայաստան» հրատ., 1979:*

Պ. ՊՈՒՐԵՎ, Գ. ԴԱՎԻԴՈՎ, Է. ՄԵԼՆԻԿՈՎԱ, Վ. ՖԵՈՖԱՆՈՎ— Սովետական պետության և իրավունքի հիմունքներ: *Ե., «Լույս» հրատ., 1979:*

Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ— Հասարակական-փիլիսոփայական միտքը հայկական Կիլիկիայում *(XII դարի երկրորդ կես): Ե., ԳԱ հրատ., 1979:*

Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Արևելահայ դպրոցն ու մանկավարժական միտքը XIX դարի 50—60-ական թթ.: *ԵՊՀ հրատ., 1979:*

Թ. ԳԱԼՍՏՅԱՆ— Գարեգին Լևոնյանը և «Գեղարվեստ» հանդեսը: *ԵՊՀ հրատ., 1979:*

**К. МАРКС и Ф. ЭНГЕЛЬС—Избранные произведения.** В 3-х томах. Т. 1, М., Политиздат, 1979.

**В. И. ЛЕНИН.—КПСС о Советской Конституции.** М., Политиздат, 1979.

**Л. И. БРЕЖНЕВ — На страже мира и социализма.** М., Политиздат, 1979.

**М. СУСЛОВ — Марксизм-ленинизм и современная эпоха.** Сборник выступлений. М., Политиздат, 1979.

**Д. УСТИНОВ—Избранные речи и статьи.** М., Политиздат, 1979.

**И. КАПИТОНОВ—КПСС высоко несет ленинское знамя.** Доклад на торжественном заседании в Москве, посвященном 109-й годовщине со дня рождения В. И. Ленина. М., Политиздат, 1979.

**XXV СЪЕЗД КПСС: единство теории и практики.** Выпуск 4. М., Политиздат, 1979.

**Р. КОСОЛАПОВ — Социализм. К вопросам теории.** Изд. 2-е, испр. и доп. М., «Мысль», 1979.

**Социалистический образ жизни.** Сборник статей ученых социалистических стран. М., «Прогресс», 1979.

**И. ИВАНОВ — Трудовой коллектив—первичная ячейка экономической, политической и духовной жизни нашего общества.** М., «Знание», 1979.

**На фронтах идеологических битв.** Проблемы идеологической борьбы на современном этапе. М., Политиздат, 1979.

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆԸ ՆՊԱՍՏՈՒՄ Է ԱՌՈՂՋՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՄԱՆԸ

*Երկարատև աղմուկը մարդու օրգանիզմում առաջացնում է պաթոլոգիական փոփոխություններ: Գաղտնիք չէ, որ արդյունաբերական շատ ձեռնարկություններում, հատկապես մեխանիկական արտադրամասերում, աղմուկը բավական շատ է: Չնայած բամբակե խցկաններն ու հակաաղմուկային ականջակալները պաշտպանում են աղմուկից, սակայն դրանք օգտագործող մարդն արտաքին աշխարհից կտրվածության անսովոր զգացում է ապրում, և ոչ բոլորն են կարողանում վարժվել այդ վիճակին: Աշխատանքի պաշտպանության ոլորտի մասնագետների երկարատև փորձարկումներն անսպասելի արդյունք տվեցին. եթե ռադիոֆիկացվեն հակաաղմուկային ականջակալները և հաղորդվի կոնկրետ ռիթմիկ երաժշտություն, ապա նման ականջակալներով աշխատողների ընդհանուր հոգնածությունը, կըբարձրանա աշխատունակությունը: Պերմի հեռախոսների գործարանում մշակվել, փորձարկվել և հավանության է արժանացել ֆունկցիոնալ երաժշտության օգտագործմամբ հակաաղմուկային պաշտպանության սիստեմը: Այն կարելի է ներդնել նաև այլ ձեռնարկություններում:*

## ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ՉԱՓԱՐԱՆ

*Սարքաշինական գործարաններում պատրաստի ապարատների ստուգման ու կարգավորման համար կան տարբեր սարքեր, բայց և այնպես այդ աշխատանքը կատարվում է ձեռքով և շատ ժամանակ է պահանջում: Օմսկի ավտոմատացված սիստեմների նախագծակոնստրուկտորական բյուրոյի մասնագետները մշակել են և տեղի «էլեկտրատոչպրիբոր» գործարանում ներդրել են կոմպլեկտավորող մասերի և դրանց մոնտաժման որակի ստուգման էլեկտրոնային մեթոդը: Այս նորույթը գրավեց լվովցիների ուշադրությունը, և նրանք սիբիրցիների հետ համատեղ որոշեցին մշակել տեխնոլոգիական ողջ շղթան վերահսկելու մեթոդ: Ստեղծվեց ու արտադրության մեջ ներդրվեց չափարանական վերահսկման պրոցեսների կառավարման և թվային ապարատների ու ինֆորմացիոն չափիչ սիստեմների դիագնոստիկայի ավտոմատացված սիստեմ: Այն պայմանականորեն անվանել են «էլեկտրոնային չափարան». սեղմում են հեռատիպի ստեղները, և թղթե ժապավենի վրա հայտնվում է պատրաստի սարքի տեխնիկական բոլոր բնութագրերի ստուգման արձանագրությունը: Այդ փաստաթուղթը տալիս է էլեկտրոնային հաշվիչ մեքենան: Վերջինս նշում է թերությունները, իսկ եթե այդպիսիք չկան, հաղորդում է, որ սարքը կարելի է հանձնել սպառողին:*

*Այս նորույթը հնարավորություն է ընձեռում բարձրացնելու ստուգման-կարգավորման աշխատանքի արտադրողականությունը և արտադրանքի որակը: Դրա ներդրումից ստացված տնտեսական ընդհանուր օգուտը միայն «Միկրոպրիբոր» գործարանում տարեկան կազմում է 800 հազար ռուբլի:*

## ԷՔՍԿԱՎԱՏՈՐ՝ ԱՌԱՆՑ ՎԱՐՈՐԴԻ

*«Պոկլայն» ֆրանսիական ֆիրման, որ մասնագիտացել է հիդրավլիկական ամբարձիչ մեքենաների, էքսկավատորների և շինարարական ու բեռնման-բեռնաթափման աշխատանքների համար օգտագործվող այլ մեքենաների արտադրության ասպարեզում, մշակել է մեքենաների դիստանցիոն կառավարման սիստեմ: Այն անհրաժեշտ է, երբ աշխատանքները կատարվում են մարդու համար վտանգավոր պայմաններում, թունավոր նյութերի միջավայրում, բարձր ջերմաստիճանում, այնտեղ, ուր կա հանքաշերտերի փլուզման վտանգ: Դիստանցիոն կառավարման խցիկը իր պուլտով տեղադրվում է վտանգավոր գոտուց դուրս և կարող է մեկուսացվել մարդու համար վնասակար բոլոր ազդեցություններից:*